ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 3
ՄԱՐՏ
1964 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
43-ՐԴ
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ



### ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



### ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



### ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՀԱՐՑԵՐ



### ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ



### ԱԹԵԻՍՏԻ ԱՄԲԻՈՆ



### ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ

## СОДЕРЖАНИЕ



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԳԼԽԱՎՈՐ ՈՒՂԻՆ


Մ. ՄԵԼՔՈՆՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի քարտուղար, գյուղատնտեսության ղեկավարման բյուրոյի նախագահ


*Անցած ամսին տեղի ունեցած ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը իր ամբողջ խորությամբ քննարկեց գյուղատնտեսության ինտենսիվացման հարցը և կոնկրետ միջոցառումներ մշակեց պարարտանյութերի լայն կիրառման, ոռոգման զարգացման, կոմպլեքսային մեքենայացման և գիտության նվաճումների ու առաջավոր փորձի արմատավորման հիման վրա գյուղատնտեսական մթերքների արտադրությունը խոշոր չափերով ավելացնելու համար։*

*Կենտկոմի պլենումում ընդարձակ և փայլուն ճառով հանդես եկավ ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար, ՍՍՌՄ Մինիստրների սովետի նախագահ Ն. Ս. Խրուշչովը։ Պլենումի հրապարակված որոշման և ընկեր Խրուշչովի ճառի մեջ առաջադրվել են նոր հրատապ խնդիրներ, որոնք կոմունիստական պարտիան այժմ մղում է առաջին պլանի վրա։ Այդ խնդիրների կենսագործումը կապահովի կոմունիստական շինարարության հարվածային ճակատի՝ գյուղատնտեսության ինտենսիվացումը, որը դաշտերի բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացման հիմնական պայմանն է։*

*ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումը ցուցադրեց մեր պարտիայի ու ժողովրդի կամքի լիակատար միաձուլությունն ու անսասանությունը, պարտիայի ծրագրի իրագործման միահամուռ պատրաստակամությունը։*

*Մեր պարտիան միշտ էլ ընդգծել է, որ կոմունիստական հասարակարգի կառուցման համար, ժամանակակից հզոր արդյունաբերության հետ մեկտեղ, անհրաժեշտ է ունենալ բարձր զարգացած գյուղատնտեսական արտադրություն։ Վերջին տասը տարում կոմունիստական պարտիան ու սովետական կառավարությունը մեծ ջանքեր են գործադրել գյուղատնտեսության վերելքն ապահովելու համար։ Եթե 1953 թվականին գյուղատնտեսության մեջ ընդամենը 985 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ են կատարվել, ապա 1963 թվականին այն հասել է 5 միլիարդ 100 միլիոն ռուբլու։ Այդ նույն ժամանակամիջոցում զգալիորեն ավելացել է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Հանրային անասնապահության զարգացման, նրա ապրանքայնության բարձրացման հիման վրա մսի պետական գնումներն այդ ժամանակամիջոցում 3,6 միլիոն տոննայից հասան 9,3 միլիոն տոննայի, կաթինը՝ 10,6 միլիոն*

տոննայից 28,5 միլիոն տոննայի։ Այդ տարիներին խոպանի յուրացման շրջաններում երկիրը լրացուցիչ ստացավ 8 միլիարդ 600 միլիոն փութ ապրանքային հաց։ Չնայած, որ անցյալ տարին մեր գյուղատնտեսության համար ծայրահեղորեն անբարենպաստ էր, ձմեռը խիստ ցուրտ, ամառը երաշտ, բայց այդ դժվարին պայմաններում էլ միլիոնավոր կոլտնտեսականների, սովխոզների բանվորների և գյուղատնտեսության մասնագետների անձնվեր աշխատանքի շնորհիվ երկրում մթերվեց 2,735 միլիոն փութ հացահատիկ, կամ 836 հազար փթով ավելի, քան 1953 թվականին։ Անցյալ տարի հավաքվեց ու մթերվեց նաև 5 միլիոն 205 հազար տոննա բամբակ, որը ամենառեկորդային բերքն էր։ Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացումը նպաստեց կոլտնտեսությունների հանրային եկամտի աճմանը։ 1953 թվականին կոլտնտեսությունները դրամական եկամուտ են ստացել 3 միլիարդ 830 միլիոն ռուբլի, 1963 թվականին՝ 16 միլիարդ ռուբլի։ Նույն ժամանակամիջոցում կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը 5 միլիարդ 444 միլիոն ռուբլուց հասել են 29 միլիարդ 900 միլիոն ռուբլու։

Հայաստանի գյուղատնտեսության աշխատողները, համաքայլ ընթանալով եղբայրական ռեսպուբլիկաների բոլոր աշխատավորների հետ, նույնպես որոշակի հաջողությունների հասան կոլտնտեսությունների և սովխոզների արտադրական բազան ընդլայնելու, գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ու վաճառքը ավելացնելու գործում։ 1953 թվականի համեմատությամբ, 1962 թվականին ռեսպուբլիկայում շաքարի ճակնդեղի արտադրությունն ավելացել է 1,6 անգամ, բանջարեղենինն ու բոստանային կուլտուրաներինը՝ 2, խաղողինը՝ 3,4, պտուղներինը՝ 1,6 անգամ, իսկ անասնապահական մթերքների արտադրությունը 1963 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, ավելացել է՝ մսինը 1,5, կաթինը՝ 1,8, բրդինը՝ 1,8, ձվինը՝ 2,2 անգամ։ Խաղողի և պտղատու այգիների տարածությունն ընդարձակվել է մոտ 2 անգամ։ 1962 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, պետությանը շաքարի ճակնդեղի վաճառքն ու հանձնումն ավելացել է 63,4, կարտոֆիլինը՝ 64,5 տոկոսով, բանջարեղենինը համարյա 6 անգամ, պտուղներինը՝ 47 տոկոսով, խաղողինը՝ մոտ 4 անգամ, իսկ ծխախոտինը՝ 30 տոկոսով։

1962 թվականի համեմատությամբ 1963 թվականի բացառիկ անբարենպաստ կլիմայական պայմաններում ռեսպուբլիկայում հացահատիկի պետական մթերումների ծավալն ավելացավ՝ մսինը 3, կաթինը՝ 19, բրդինը՝ 19 և ձվինը՝ 12 տոկոսով։

Սակայն ձեռք բերված հաջողությունները չեն կարող հանգստացնել մեզ և չեն կարող բավարար համարվել, որովհետև ռեսպուբլիկայի գրեթե բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում ամենևին էլ լրիվ չեն օգտագործվում բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացման վիթխարի հնարավորությունները։ Բավական է ասել, որ վերջին տարիներս հացահատիկային կուլտուրաների հեկտարի միջին բերքատվությունը չի անցնում 8—10, կարտոֆիլինը՝ 50—80, բանջարեղենինը՝ 140—150 ցենտներից։ Ցածր է նաև գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը։

Հայտնի է, որ Հայաստանը Սովետական Միության առավել խիտ բնակեցված շրջաններից մեկն է։ Բավական է ասել, որ ռեսպուբլիկայում մեկ քառակուսի կիլոմետրի վրա ապրում է 67 մարդ, իսկ վարելահողի մեկ հեկտարին ընկնում է չորս մարդ։ Նման դրությունը մեզ պարտավորեցնում է ռացիոնալ օգտագործել հողի ամեն մի պատառիկը և ստանալ գյուղատնտեսական կուլտուրաների առավել բարձր բերք։ Ահա թե ինչու գյուղատնտեսական արտադրությունը ինտենսիվացնելու ուղղությամբ պարտիայի քաղաքականությունը կենսական նշանակություն ունի մեր ռեսպուբլիկայի համար։




Ինտենսիվացումը գյուղատնտեսության վերելքի գլխավոր ուղղությունն է, նրա արտադրական ուժերի զարգացման հիմնական միջոցը։ ՍՄԿՊ XXII համագումարում ընդունված պարտիայի ծրագրում նշված է. «Գյուղատնտեսության վերելքի և գյուղատնտեսական արտադրանքի նկատմամբ երկրի աճող պահանջների բավարարման գլխավոր ուղին բազմակողմանի մեքենայացումն ու հետևողական ինտենսիվացումն է՝ հասնել գիտության և առաջավոր փորձի հիման վրա բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում հողագործության և անասնաբուծության բարձր կուլտուրայի, շեշտակիորեն բարձրացնել բոլոր կուլտուրաների բերքատվությունը և ավելացնել արտադրանքի ստացումը յուրաքանչյուր հեկտարից՝ աշխատանքի ու միջոցների նվազագույն ծախսումներով։ Այդ հիման վրա անհրաժեշտ է անընդհատ ավելացնել գյուղատնտեսական արտադրանքը հասարակական պահանջներին համապատասխան։ Գյուղատնտեսությունը տեխնիկական զինվածության և արտադրության կազմակերպման տեսակետից կմոտենա արդյունաբերության մակարդակին, գյուղատնտեսական աշխատանքը կդառնա արդյունաբերական աշխատանքի տարատեսակը՝ բնության տարերքից գյուղատնտեսության կախումը զգալիորեն կթուլանա, իսկ ապա կհասցվի նվազագույնի»։

ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումն ընդգծեց, որ գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման նախատեսվող միջոցառումների իրագործումը պետք է ընթանա գլխավորապես երեք ուղղությամբ, այսինքն՝ լայնորեն քիմիացնել հողագործությունը և անասնապահությունը, ընդլայնել ոռոգելի հողագործությունը, արմատավորել կոմպլեքսային մեքենայացումը։

ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի դեկտեմբերյան պլենումից հետո Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմը և ռեսպուբլիկայի Մինիստրների սովետը նշեցին քիմիական արդյունաբերության հետագա զարգացման, գյուղատնտեսության լայն քիմիացման, ոռոգելի հողագործությունը զարգացնելու և տեխնիկայի օգտագործումը բարելավելու կոնկրետ միջոցառումներ։ Դրանց հետևողական իրագործումը զգալի չափով կբարձրացնի գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման մակարդակը և կապահովի գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելի արագ ավելացումը։

Գյուղատնտեսության քիմիացման գծով պարտիայի դիրեկտիվը կենսագործելու կարևոր պայմաններից են հանքային պարարտանյութերի, բույսերի պաշտպանության քիմիական միջոցների ռացիոնալ օգտագործումը և անասնապահության մեջ քիմիայի լայն կիրառումը։

Ինչպես հայտնի է, ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը վիթխարի ծրագիր մշակեց հանքային պարարտանյութերի արտադրությունը երկրում մեծ չափերով ավելացնելու համար։ Մեր ռեսպուբլիկայում 1970 թվականին, 1963 թվականի համեմատությամբ, հանքային պարարտանյութերի արտադրությունը կավելանա 4 անգամ։

Տարեցտարի ավելանալու են ռեսպուբլիկայի կոլտնտեսություններին ու սովխոզներին հատկացվող հանքային պարարտանյութերի ֆոնդերը։ Ժողո-

վորդական տնտեսության զարգացման պլանով նախատեսվում է 1964 թվականին առանձնացնելու 120 հազար և 1965 թվականին՝ 170 հազար տոննա հանքային պարարտանյութեր, 1963 թվականին առանձնացված 108 հազար տոննայի դիմաց։ Հետագա տարիների ընթացքում այն կավելանա ավելի մեծ չափերով։ Եթե անցյալ տարիներին առանձնացվող հանքային պարարտանյութերը բավարարում էին միայն տեխնիկական կուլտուրաների և մասամբ էլ խաղողի ու պտղատու այգիների պարարտացմանը, իսկ հացահատիկի ցանքերի միայն 13 տոկոսն էր պարարտացվում, ապա այժմ և հետագա տարիների ընթացքում մենք հնարավորություն կունենանք պարարտացնելու հացահատիկային կուլտուրաների բոլոր ջրովի և բնական խոնավություն ունեցող տարածությունները։ Այդ հնարավորություն կտա խոշոր չափերով ավելացնելու հացահատիկի արտադրությունը։

Պարարտանյութերը ռացիոնալ օգտագործելու համար պետք է իմանալ, թե ամեն մի կուլտուրայի համար հողային-կլիմայական տվյալ պայմաններում որքան պարարտանյութ է անհրաժեշտ։ Այդ բանի համար հարկավոր է, որ բոլոր տնտեսություններն ունենան խոշոր մասշտաբի ագրոքիմիական քարտեզներ։

Ներկայումս մեր ռեսպուբլիկայի 763 կոլտնտեսություններից ու սովխոզներից 301-ն արդեն ունեն այդպիսի քարտեզներ. մնացածների համար քարտեզներ կազմվում են և պատրաստ կլինեն 1965 թվականին։ Ագրոքիմիական քարտեզների վրա տրված են պարարտանյութերի հանձնարարելի դոզաների աղյուսակներն ըստ յուրաքանչյուր կուլտուրայի, հաշվի առնելով դրանց նախորդները։

Անհրաժեշտ է, որպեսզի յուրաքանչյուր կոլտնտեսությունում և սովխոզում ճիշտ կիրառվեն այդ քարտեզները։ Դրա համար տնտեսությունների ղեկավարները, մասնագետները և դաշտավարական բրիգադների բրիգադավարները պետք է լավ տիրապետեն ագրոքիմիական քարտեզներին, կարողանան նրանցից օգտվել առանց դժվարությունների և կազմակերպեն դաշտերի պարարտացումը ժամանակին և անհրաժեշտ դոզաներով։

Պարարտանյութերի շաբլոն օգտագործումը և ագրոքիմիական քարտեզների բացակայությունը գյուղատնտեսական կուլտուրաների ցածր բերքի և պարարտանյութերի զգալի կորստի հիմնական պատճառներն են։

Քիմիայի օգնությամբ մեր գիտնականները հաջողությամբ լուծել են աղուտների յուրացման պրոբլեմը, որը ռեսպուբլիկայի սակավահողության պայմաններում հողային ռեսուրսների ավելացման կարևոր ռեզերվ է։ Աղուտները գտնվում են Արաքսի մերձափնյա արգավանդ հովտում, որտեղ շատ տրնտեսություններ տարեկան երկու բերք են ստանում։ Քիմիական արդյունաբերության մնացուկների՝ օգտագործված ծծմբաթթվի կիրառումը հնարավորություն կտա արագ և արդյունավետ ձևով յուրացնել այդ աղուտները։ Յուրացված աղուտների յուրաքանչյուր հեկտար աշնանացանից ստացվում է 35—40 ցենտներ ցորեն, բոստանա-բանջարանոցային և կերային կուլտուրաների բարձր բերք։

Ուշագրավ է, որ հողի մեջ օգտագործված ծծմբաթթու մտցնելու դեպքում վերանում է այդ հողերին 3—4 տարվա ընթացքում ֆոսֆորային և կալիական պարարտանյութեր տալու անհրաժեշտությունը։ Ծծմբաթթուն ակտիվացնում և բույսերի համար մատչելի է դարձնում ֆոսֆորի ու կալիումի չյուրացվող միացությունները։



Ռեսպուբլիկայի անասնապահության համար կերային հիմնական բազան բնական արոտավայրերը, խոտհարքները, ինչպես նաև բազմամյա խոտաբույսերի (առվույտի, կորնգանի) ցանքերն են։ Վերջին ժամանակներս վարելահողերի առանց այն էլ սահմանափակ տարածության զգալի մասը հատկացվում է խաղողին և պտղատու այգիներին, ծխախոտին, շաքարի ճակնդեղին և բանջարանոցային կուլտուրաներին։ Առաջիկա տարիներին կընդլայնվեն նաև հացահատիկային կուլտուրաների ցանքերը։ Այդ հանգամանքը սահմանափակում է դաշտավարության հաշվին կերային բազայի հետագա ընդլայնման հնարավորությունը։ Դրա համար էլ բնական խոտհարքների և արոտավայրերի ինտենսիվ օգտագործումը հնարավորություն կտա լուծելու անասնապահությունը խոտով, սիլոսային մասսայով և արոտավայրային կերով ապահովելու պրոբլեմը։ Այս հարցը հաջողությամբ կարող է լուծվել բնական խոտհարքների և արոտավայրերի բերրիությունը բարձրացնելու պայմանով։ Ներկայումս բնական խոտհարքների բերքատվությունը կազմում է հեկտարից սոսկ 10—12 ցենտներ։ Անասնաբուծական և անասնաբուժական ինստիտուտի, ինչպես նաև ռեսպուբլիկայի առաջավոր տնտեսությունների փորձով հաստատվում է, որ դրանց պարարտացման դեպքում, խոտհարքների բերքը հեկտարից կարելի է հասցնել մինչև 30, իսկ արմատական բարելավման դեպքում նույնիսկ 50 ցենտների։

Մեր ռեսպուբլիկայում կա մոտ 200 հազար հեկտար բնական խոտհարք։ Այդ տարածությունից լիարժեք պարարտացման դեպքում կարելի է ստանալ 600 հազար տոննա խոտ, մինչդեռ առանց պարարտացման ստացվում է միայն 200 հազար տոննա։

Հաշվարկումները ցույց են տալիս, որ ռեսպուբլիկայի խոնավ շրջանների բնական խոտհարքներում հանքային պարարտանյութերի կիրառումը պակաս արդյունավետ չէ, քան վարելահողերում։ Այսպես, օրինակ, կալիումականֆոսֆատային պարարտանյութերի մեկ տոննան բերքն ավելացնում է 3000 կերային միավորով։ Այդ նշանակում է, որ պարարտանյութերի կիրառումից լրացուցիչ կերպով ստացվող կերային մեկ միավորի ինքնարժեքը մեկ կոպեկից էլ պակաս կլինի։ Ներկայումս մենք հնարավորություն չունենք հանքային պարարտանյութեր առանձնացնելու այդ նպատակների համար, սակայն հետագա տարիների ընթացքում այդպիսի հնարավորություններ կստեղծվեն։

Այժմ անհրաժեշտ է բնական արոտների մոտակայքում գտնվող բազմաթիվ տարիների ընթացքում կուտակված գոմաղբը լրիվ օգտագործել բնական խոտհարքների պարարտացման համար։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի փետրվարյան պլենումը ընդգծելով, որ գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու գործում վճռական է քիմիայի դերը, միաժամանակ նշեց, որ «...այն մեկ հեկտար վարելահողից կարող է առավել արդյունք տալ միայն հողագործության բարձր կուլտուրայի հիման վրա»։ Դրա համար էլ Կենտկոմի պլենումն իր ընդունած որոշմամբ պահանջեց տեղական պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգաններից՝ քիմիացումը հմտորեն զուգակցել հողը ճիշտ և ժամանակին մշակելու, օրգանական պարարտանյութեր օգտագործելու, ցանքը սորտային բարձրորակ սերմացուով կատարելու, գյուղատնտեսական բոլոր աշխատանքները լավագույն ժամկետներում անցկացնելու համար։

Խաղողագործության հետագա զարգացումը մեր ռեսպուբլիկայում պահանջում է կիրառել ավելի ռացիոնալ և կատարյալ ագրոմիջոցառումներ։

Այդ կապակցությամբ հրատապ խնդիր է ձմռանը խաղողի որթատունկերը հողով ծածկելը։ Ամեն տարի խաղողի որթատունկերը հողի տակ թաղելու և գարնանը այգիները բաց անելու համար մեկ հեկտարի հաշվով ծախսվում է մոտավորապես 160 ռուբլի, կամ 72 մարդ-օր, որը կազմում է խաղողի այգիների մշակության բոլոր ծախսերի 20 տոկոսը, որով խիստ բարձրանում է խաղողի ինքնարժեքը։ Բացի դրանից, անհրաժեշտ քանակությամբ աշխատող ձեռքի պակասության պատճառով, խաղողի այգիների զգալի տարածություններ հաճախ լավ չեն ծածկվում, որի հետևանքով էլ ցրտահարվում են։

Հոկտեմբերյանի արտադրական վարչության Լուկաշինի անվան սովխոզում աշխատանքներ են կատարվում խաղողի որթատունկերը էթիլենի թաղանթով ծածկելու ուղղությամբ։ Նախնական փորձերը դրական արդյունք են տվել։ Անհրաժեշտ է, որ մասնագետները կատարելագործեն այդ նպատակի համար թողարկվող թաղանթների որակը։

Մեր երկրի գյուղատնտեսության քիմիացման վիթխարի ծրագիրը իրականացնելու գործում մեծ դեր պետք է խաղան մեր գյուղատնտեսները և ագրոքիմիկոսները։ Այնինչ պետք է խոստովանել, որ մեր բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատություններում պատշաճ ուշադրություն չի նվիրվում գյուղատնտեսության ագրոքիմիական կադրերի պատրաստմանը։ Մոտավորապես 25 տարի առաջ, երբ Հայաստանում հանքային պարարտանյութերի սպառումը կազմում էր տարեկան միայն մի քանի հազար տոննա, Երևանի գյուղատնտեսական ինստիտուտում գոյություն ուներ ագրոքիմիայի ցիկլ, բայց անհասկանալի պատճառներով այն վերացվել է։ Ավելին, ագրոնոմիական ֆակուլտետում ագրոքիմիայի ուսումնական ժամերը կրճատվել են 103 ժամով, որի հետևանքով ներկայումս շրջանավարտ գյուղատնտեսները խոր գիտելիքներ չեն ստանում գյուղատնտեսության մեջ քիմիան գիտականորեն կիրառելու համար։

ՀՍՍՌ գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրությունը և Երևանի գյուղատնտեսական ինստիտուտը պետք է վերանայեն ուսումնական ծրագրերը և պլաններն այնպես, որպեսզի ուժեղացվի միջնակարգ և բարձրագույն ուսումնական հաստատությունների ուսանողների ագրոքիմիական ուսուցումը։

Քիմիացման հետ միաժամանակ մեզ մոտ խիստ կարևոր նշանակություն ունեն հողերի ոռոգումը և արոտավայրերը լրացուցիչ ջրելը, որոնք խիստ կարևոր են գյուղատնտեսությունն ինտենսիվացնելու և բարձր ու կայուն բերք ստանալու համար։

Ռեսպուբլիկայում հատուկ ուշադրություն է նվիրվում ոռոգման աշխատանքներին։ Բավական է ասել, որ 1920 թվականի համեմատությամբ ոռոգելի տարածությունն ավելացել է 4,5 անգամ։ Ջրատնտեսական աշխատանքները առանձնապես մեծ տեմպով են կատարվել վերջին տասնամյակում։ 1953—1963 թվականների ընթացքում ամառային շրջանում ջրարբի տարածություններն ավելացել են 51 հազար հեկտարով։ Վերջին յոթ տարվա ընթացքում լրացուցիչ ջուր է տրվել 108 հազար հեկտար արոտավայրերի։ Հայաստանի պայմաններում ոռոգելի հողերի յուրաքանչյուր հեկտարը տնտեսական շատ մեծ օգուտ է տալիս։ Օրինակ, եթե հարթավայրային հողերում



առանց ոռոգման, աննպաստ եղանակի պայմաններում երբեմն հեկտարից ստացվում է մինչև 7—8 ցենտներ ցորեն, ապա այդ հողերը ոռոգելու և պարարտացնելու դեպքում առաջավոր տնտեսությունները յուրաքանչյուր հեկտարից դաշտավայրային շրջաններում ստանում են 30—35 ցենտներ և ավելի, իսկ լեռնային շրջանների տնտեսություններում՝ 25 ցենտներ ցորեն. հեկտարից կստացվի 100—150 ցենտներ բարձրորակ խաղող, մինչև 150 ցենտներ պտուղ, 400—450 ցենտներ բոստանա-բանջարանոցային կուլտուրաներ, 40 ցենտներ եգիպտացորեն կամ 600 ցենտներ կանաչ մասսա։ Արժեքային արտահայտությամբ օգուտը կազմում է 400—500 տոկոս։

Ուստի մեր պայմաններում ամենաթանկ իռիգացիոն օբյեկտի շինարարության ծախսերը ծածկվում են ամենաշատը երեք տարում։ Ոռոգման տնտեսական արդյունքն ավելի բացահայտ է ռեսպուբլիկայի նախալեռնային շրջաններում, որտեղ հողը խիստ քարքարոտ է։ Այդ հողերն առանց ոռոգման մեծ մասամբ օգտագործվում են որպես ձմեռային արոտավայրեր՝ իրենց խիստ աղքատիկ բուսածածկով։ Իսկ ոռոգման դեպքում այդ հողերը կօգտագործվեն որպես խաղողի և պտղատու այգիներ, որոնցից սովխոզները և կոլտնտեսությունները կստանան բարձր բերք։

Այժմ նոր ոռոգելի քարքարոտ հողերի յուրացումը դժվարանում է հզոր բուլդոզերների և քար հավաքող մեքենաների բացակայության պատճառով։ Մինչդեռ դրանց առկայությամբ և մի շարք այլ միջոցառումների իրականացմամբ հնարավոր է ռեսպուբլիկայում ոռոգելի հողատարածությունները հասցնել 500 հազար հեկտարի, այժմ ոռոգվող 260 հազար հեկտարի դիմաց։

Ըստ հաստատված ժողովրդատնտեսական պլանի, 1964 թվականին ջրատնտեսական շինարարական-մոնտաժային աշխատանքների ծավալը, 1963 թվականի համեմատությամբ, կավելանա 60 տոկոսով, զգալի աճ է նախատեսվում նաև 1965 թվականին։ Նախագծված միջոցառումների շնորհիվ ոռոգելի հողերի տարածությունը ռեսպուբլիկայում 1964—1965 թվականներին կավելանա 15 հազար հեկտարով, իսկ լրացուցիչ ջուր կստանան 40 հազար հեկտար արոտավայրեր։

1966—1970 թթ. նախնական պլանով նախատեսվում է նոր ոռոգելի հողերի տարածությունն ավելացնել 93 հազար հեկտարով, բարելավել 26 հազար հեկտար տարածության ջրապահովվածությունը և լրացուցիչ ջուր տալ 130 հազար հեկտար արոտավայրերի։

Անհրաժեշտ է նշել, որ ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններում և սովխոզներում ոռոգման ջուրը հաճախ օգտագործվում է ոչ ռացիոնալ։ Մայր ջրանցքները և ներքին ցանցը ժամանակին չմաքրելու և չնորոգելու պատճառով տեղի են ունենում ջրի մեծ չափերի հասնող կորուստներ։ Բավական է նշել, որ միջտնտեսային ցանցի ջրի օգտագործման գործակիցը 1963 թ. կազմել է 0,77, իսկ ներտնտեսային ցանցինը՝ մոտ 50։ Հաճախ ոռոգման ջրի մեծ կորուստներ է տեղի ունենում նաև գիշերային ջուր չկազմակերպելու պատճառով։

Ոռոգելի հողերն ընդարձակելու հետ զուգընթաց, անհրաժեշտ է հողն ու ջուրը օգտագործել ռացիոնալ և դրանցից ստանալ առավել արդյունքներ։ Այդ նպատակով էլ ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումը ոռոգելի հողագործության շրջանների պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգաններին հանձնարարեց «բամբակի և տեխնիկական այլ կուլտուրաների արտադրության պլանների կատարմանը զուգընթաց ապահովել հացահատիկի՝

բրնձի, ցորենի, եգիպտացորենի արտադրության շեշտակի ավելացումը, ինչպես նաև քաղաքամերձ գոտիներում բանջարեղենի, կաթնատու անասնապահության կերի աճեցումը»:

Ինչպես ամբողջ Սովետական Միությունում, այնպես էլ մեր ռեսպուբլիկայում մեծ աշխատանք է կատարվել գյուղատնտեսությունը ժամանակակից տեխնիկայով զինելու ուղղությամբ: Անցյալ տարի մեր ռեսպուբլիկայի հանրային դաշտերում գործում էին 5544 տրակտոր, 1393 հացահատիկային, 387 սիլոսային կոմբայն, 6026 բեռնատար ավտոմեքենա և հազարավոր այլ մեքենաներ: Կոլտնտեսություններում և սովխոզներում հասկավոր կուլտուրաների վարը, ցանքը, բերքահավաքը գրեթե լրիվին կատարվում են մեքենաներով: Մեքենայացման մակարդակը բարձր է նաև բամբակի ու շաքարի ճակնդեղի վարի, ցանքի ու մշակության բնագավառում: Սակայն գյուղատնտեսական արտադրության մի շարք ճյուղերում դեռևս մեծ է ձեռքի աշխատանքը: Լրջորեն ետ է մնում աշխատանքի մեքենայացումն անասնապահական ֆերմաներում: Մինչև օրս էլ կոլտնտեսություններում ու սովխոզներում վերացված չեն տրակտորների, կոմբայնների և գյուղատնտեսական մյուս մեքենաների օգտագործման խոշոր թերությունները:

ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումը անհետաձգելի և կարևորագույն գործ համարեց առաջիկայում ուժեղացնել «գյուղատնտեսական նոր տեխնիկայի ստեղծման աշխատանքները, հաշվի առնելով գյուղատնտեսության քիմիացումը, իրիգացիայի և մելիորացիայի զարգացումը»:

Առաջիկայում ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը հագեցվելու է նորագույն տեխնիկայով. կարևորն այն է, որ կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարները, պարտիական կազմակերպությունները ապահովեն տեխնիկայի լիակատար և ռացիոնալ օգտագործումը:

Գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու գլխավոր ռեզերվներից մեկը գիտության նվաճումների և առաջավոր փորձի լայն կիրառումն է: Կարելի է բերել բազմաթիվ օրինակներ, երբ առանձին առաջավորներ, բրիգադներ ու ֆերմաներ, կոլտնտեսություններ ու սովխոզներ հասել են գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնապահական մթերքների արտադրության բարձր ցուցանիշների: Այսպես, օրինակ, Բասարգեչարի, Անիի, Մարտունու արտադրական վարչությունների առանձին կոլտնտեսությունների բրիգադներ հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից ստանում են 20—25 ցենտներ բերք, այնինչ հացահատիկային կուլտուրաների միջին բերքը ռեսպուբլիկայում կազմում է 8—10 ցենտներ:

Էջմիածնի, Ստեփանավանի, Հոկտեմբերյանի և մի շարք այլ արտադրական վարչությունների կոլտնտեսությունների ու սովխոզների առաջավոր կթվորուհիները յուրաքանչյուր կովից անցյալ տարի ստացել են 3000—4700 լիտր կաթ, մինչ ռեսպուբլիկայում կովի միջին կաթնատվությունը կազմում է 1500 լիտր: Ինչպես տեսնում ենք, առաջավորները մյուսների համեմատությամբ միջին հաշվով 2—2,5 անգամ ավելի շատ մթերք են ստանում:

Միայն առաջավորների աշխատանքի մեթոդների լայն արմատավորումը հնարավորություն կտա կրկնապատկելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը: Դա դժվարին խնդիր է, բայց մեր ուժից վեր չէ, և մենք պետք է այն լուծենք:

Բանն այն է, որ գիտության նվաճումների և առաջավորների փորձի կի-



րառման վերաբերյալ ընդհանուր ցուցումներից մենք այն կողմ չենք անցնում: Անհանդուրժելի է, երբ այսօր գյուղատնտեսության մասնագետների և գիտական աշխատողների բազմամարդ բանակից շատերն այդ ուղղությամբ հարկ եղած չափով ակտիվ աշխատանք չեն կատարում: Ժամանակակից էտապում մեծ նշանակություն տալով գիտության նվաճումների և առաջավոր փորձի լայն արմատավորմանը՝ գիտահետազոտական ինստիտուտների թեմատիկ պլաններում պետք է նախատեսել գիտության նվաճումների արմատավորման աշխատանքները, ինչպես նաև առաջավորների աշխատանքի մեթոդների ընդհանրացումը, դրանց պրոպագանդումն ու արմատավորումը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը պարտիական կազմակերպություններից պահանջեց անցնել «...նորի, առաջավորի, գիտության տված, պրակտիկայով հաստատված նվաճումների պրոպագանդման և արմատավորման առավել ներգործուն, ակտիվ, հարձակողական ձևի, որպեսզի այն ամենը, ինչ առաջավոր է, գործնականում արմատավորվի արտադրության մեջ»:

Արտադրության մեջ նորի, առաջավորի ակտիվ արմատավորման համար պարտիան ստեղծեց արտադրական վարչություններ, պարտիական կազմակերպությունները վերակառուցեց արտադրական սկզբունքով: Այդ վերակառուցումը կոլտնտեսությունների ու սովխոզների պարտիական ու կոմերիտական կազմակերպություններին ընձեռել է անհրաժեշտ հնարավորություններ՝ արտադրությունը գիտականորեն կազմակերպելու համար: Նրանք ո՛չ միայն խոսքով պետք է պաշտպանեն գյուղատնտեսության մեջ ծնունդ առած առաջավոր երևույթներն ու կոմունիստական աշխատանքի մեթոդները, այլև ակտիվ մարտնչեն դրանք արտադրության բոլոր ճյուղերում ներդնելու համար:

Գյուղատնտեսական արտադրության հետագա ինտենսիվացման միջոցառումների իրագործումը հիմք է տալիս ռեսպուբլիկայում նախատեսելու գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա աճման ավելի բարձր տեմպեր: Հաշվի առնելով մեր հնարավորությունները՝ նախատեսվում է հացահատիկի, ծխախոտի, շաքարի ճակնդեղի, խորդենու, բանջարեղենի, խաղողի, պտուղների և անասնապահական մթերքների արտադրության զգալի ավելացում:

1962 թվականի համեմատությամբ նախատեսվում է մինչև 1970 թվականը հացահատիկի արտադրությունն ավելացնել մոտ 1,5 անգամ: Լուրջ ուշադրություն է նվիրվելու ծխախոտի արտադրության հետագա զգալի ավելացմանը: 1965 թվականին ծխախոտի բերքը հասցվելու է 14 հազար, իսկ գալիք հնգամյակի վերջում՝ 16 հազար տոննայի: 1965 թվականին բանջարեղենի բերքն ավելանալու է 45 տոկոսով, իսկ 1970 թվականին՝ 2,2 անգամ: Էլ ավելի կզարգացվեն խաղողագործությունը և պտղաբուծությունը, հատկապես քարքարոտ և սարալանջային վայրերում, որոնք մեծ մասամբ պիտանի չեն հացահատիկային և այլ գյուղատնտեսական կուլտուրաների մշակման համար: Նախատեսվում է կոլտնտեսություններում և սովխոզներում մսի արտադրությունը մինչև 1970 թ. ավելացնել 1,9, կաթինը՝ 1,6, բրդինը՝ 1,4, ձվինը՝ 3 անգամ:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի փետրվարյան պլենումում ընկեր Խրուշչովը բարձրացրեց մի կարևոր հարց ևս, որը կենսական նշանակություն ունի կոլտնտեսային շինարարության գործում: Այդ կոլտնտեսականներին կենսաթոշակով ապահովելու հարցն է: Ընկեր Խրուշչովը անհրաժեշտ համարեց ստեղ-

ծել սոցիալական ապահովության միութենական կենտրոնացված ֆոնդ և այդ ֆոնդի հաշվին կենսաթոշակներ նշանակել կոլտնտեսականներին։ Իհարկե, այդ ֆոնդի ստեղծմանը մասնակցելու են կոլտնտեսությունները, դրա համար կատարելով որոշ հատկացումներ։

Միաժամանակ անհրաժեշտ է կոնկրետ քայլերի դիմել ետ մնացող տնտեսությունները առաջավորների մակարդակին հասցնելու և դրանով իսկ գյուղատնտեսական մթերքների արտադրությունն առավել մեծ չափերով ավելացնելու համար։ Այդ գործում վճռական դեր կխաղան կադրերի ճիշտ ընտրությունն ու տեղաբաշխումը, արտադրության բոլոր աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացումը։ Անդրադառնալով այս հարցին, օրերս ՍՄԿՊ Կենտկոմում տեղի ունեցած խորհրդակցությունում ընկեր Խրուշչովը նշեց, որ գյուղատնտեսության բոլոր ճյուղերում պետք է արմատավորել աշխատավորներին նյութապես շահագրգռելու պրակտիկան. ովքեր ավելի արտադրողաբար են աշխատում, ավելի շատ մթերքներ արտադրում՝ աշխատանքի և միջոցների նվազագույն ծախսումով, նրանք պետք է անհամեմատ ավելի շատ ստանան։ «Հարկավոր է,— ասաց նա,— համարձակորեն ու վճռականորեն ընթանալ արտադրած մթերքների քանակի ու որակի նյութական խրախուսման ուղիով։ Կոլտնտեսականը կամ սովխոզի բանվորը որքան շատ մթերք արտադրի, այնքան պետք է շատ ստանա իր աշխատանքի դիմաց»։

Գյուղատնտեսության աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացման առթիվ ընկեր Խրուշչովի ծրագրային ելույթում արծարծված վերոհիշյալ ցուցումները պետք է դրված լինեն արտադրական վարչությունների, պարտիական կոմիտեների, սկզբնական պարտիական կազմակերպությունների ու տնտեսությունների ղեկավարների գործունեության հիմքում։

«Գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման նախատեսվող ծրագրի իրագործումը,— ասված է ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի պլենումի որոշման մեջ,— կպահանջի գյուղում քաղաքական ու կազմակերպչական աշխատանքի զգալի ուժեղացում։ Պարտիական կազմակերպությունների առաջնահերթ պարտականությունն է՝ գյուղական բոլոր աշխատողներին խոր կերպով պարզաբանել, որ միայն արտադրության ինտենսիվացման միջոցով կարելի է խիստ բարձրացնել դաշտերի բերքատվությունը, անասնապահության մթերատվությունը, երկրում ստեղծել պարենային առատություն։ Դրան պետք է ծառայեն գաղափարական աշխատանքի բոլոր միջոցները»։

ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումը, անցյալ տարվա դեկտեմբերյան պլենումից հետո, կարևոր էտապ է պարտիայի ծրագրի կատարման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ասպարեզում։ Փետրվարյան պլենումն ընդգծեց, որ գյուղատնտեսության հետագա արագ վերելքը կոմունիստական շինարարության հարվածային ճակատն է, ամբողջ պարտիայի և սովետական ժողովրդի գործը։ Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ գյուղատնտեսական բոլոր աշխատողների եռանդն ու ջանքերն ուղղել գյուղատնտեսության ինտենսիվացման հարցերի պրակտիկ լուծմանը և հենց այս տարի մեծ չափով ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։

---

# ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԲՆԱԳԻՏՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ ԵՎ ՀԱԿԱԿՈՄՈՒՆԻԶՄԸ

Ա. ՄԻՆԱՍՅԱՆ

Մեր օրերում, երբ աշխարհը բաժանված է երկու մեծ լագերի, երբ սոցիալիզմի ու կապիտալիզմի խաղաղ գոյակցության պրոցեսում սոցիալիզմի լագերը դրսևորում է իր տնտեսական և քաղաքական գերակշռությունը կապիտալիզմի նկատմամբ, համաշխարհային արենայում գաղափարական պայքարը բորբոքվում է նոր ուժով։ Այն դասակարգային պայքարի ձևերից մեկն է, որ ընդգրկում է հասարակության հոգևոր կյանքի բոլոր կողմերը։ Դրա համար էլ այս կամ այն դասակարգի գաղափարախոսության առաջադիմական կամ հետադիմական բնույթը պայմանավորված է նախ և առաջ այն դերով, որ խաղում է այդ դասակարգը մարդկային հասարակության պատմական զարգացման մեջ՝ այս կամ այն էտապում։

Ռեակցիոն դասակարգերը ձգտում են իրենց գաղափարախոսության օգնությամբ պաշտպանել իր դարն ապրած շահագործողական կարգը։ Այս բանն ապացուցվում է ժամանակակից կապիտալիստական տերությունների պրակտիկայով, որոնց գաղափարախոսները առաջավոր իդեաների դեմ մղվող պայքարում ճգնում են վերակենդանացնել վաղուց ջախջախված իդեալիստական փիլիսոփայական սիստեմները։ Բուրժուական ռեակցիոն գաղափարախոսության դեմ հակակայում են գիտական կոմունիզմի ամենազոր իդեաները, որոնք իրենց արդարացումն են գտնում ժամանակակից հասարակության զարգացման պատմական բնույթով և, առաջին հերթին՝ սոցիալիզմի լագերի վերընթաց զարգացմամբ։

Ինչպես առանձին կապիտալիստական երկրներում, այնպես էլ կապիտալիզմի և սոցիալիզմի լագերի միջև տեղի է ունենում անհաշտելի գաղափարական պայքար։

Բուրժուական գաղափարախոսներն զգալով, որ հասարակության զարգացման օբյեկտիվ ընթացքն անխուսափելիորեն տանում է դեպի կապիտալիզմի կործանում և կոմունիզմի հաստատում, իրենց բոլոր ուժերը կենտրոնացնում են կոմունիզմի գաղափարների դեմ, փորձում պսակազերծել դրանք մասսաների աչքում, սարսափ տարածել մարդկության ապագայի նկատմամբ և նման ճանապարհներով, թեկուզ ժամանակավորապես, երկարաձգել կապիտալիզմի գոյությունը։

Աշխատավոր մասսաների շարքերի միասնության խախտման, առաջադի-

մական ռեոլյուցիոն ուժերի դեմ պայքարելու համար, հակակոմունիզմն օգտագործում է ռեակցիոն իդեալիստական ուղղությունները։ Ռեակցիոն հոսանքների ներկայացուցիչներն այնպես են ձևացնում, թե իբր իրենք կապված են ժամանակակից բնագիտության հետ (նեոպոզիտիվիզմ, «ֆիզիկական» իդեալիզմ, նեոթոմիզմ և այլն), իսկ իրականում կեղծում են գիտության նվաճումները՝ մատերիալիզմը «հերքելու», իդեալիզմը և տերտերականությունը «հիմնավորելու համար»։



Այժմ համառոտակի կանգ առնենք բուն գիտության վերջին մի քանի նվաճումների վրա։ Գիտությունը մեր օրերում զարգանում է չտեսնված տեմպերով և լայն կերպով թափանցում է մարդկային պրակտիկայի ամենատարբեր ասպարեզները, վերաճելով անմիջական արտադրողական ուժի։ Առանց չափազանցության կարելի է ասել, որ XX դարի առաջին վեց տասնամյակում գիտության խոշոր հայտնագործությունները մի քանի գլխով բարձրացրին մարդկությանը՝ բնության ուժերն իրեն ենթարկելու ասպարեզում։ Բավական է նշել, որ միայն մեկ սերնդի կյանքի ընթացքում, որը կարող է լոկ ակնթարթ թվալ տիեզերքի անվախճանության համեմատությամբ, ստեղծվել են մարդկային հանճարի այնպիսի հրաշալիքներ, ինչպիսիք են՝ ինքնաթիռը, ռադիոն, կինոն, հեռուստատեսությունը, միջմայրցամաքային բալիստիկ հրթիռները, երկրագնդի արհեստական արբանյակները, տիեզերանավերը, բացահայտվել են միջուկային և ջերմամիջուկային էներգիաները և այլն։

Ավելի քան կես դարի ընթացքում մարդկությունը թափանցեց ատոմի խորքերը, բացահայտեց և մանրամասն ուսումնասիրում է նրա էլեկտրոնային թաղանթը, հետազոտում է ատոմի միջուկը, բացահայտում է միջուկային և ջերմամիջուկային էներգիաների գաղտնիքը, ուսումնասիրել է ավելի քան 32 «տարրական» մասնիկներ, որոնք բնութագրվում են մինչ այդ մարդուն անծանոթ և զարմանալի հատկություններով։ Այդ հայտնագործությունները ճանապարհ են բացում դեպի էներգիայի անսպառ պաշարները, նախապատրաստում են արտադրողական ուժերի նոր, մինչ այժմ չտեսնված ռեոլյուցիա։ Բավական է նշել, որ մեկ կգ. ուրան 235-ը կամ պլուտոնիումը կարող են տալ այնքան էներգիա, որքան 2,500,000 կգ. ընտիր քարածուխը։ Ատոմի այդ հզոր էներգիան արդեն օգտագործվում է ատոմային էլեկտրակայաններում և մեծ Լենինի անունը կրող սառցահատում։ Գիտնականներն այժմ աշխատում են միջուկային էներգիան առանց միջանկյալ բարդ մեքենայական սարքավորումների անմիջապես վերածել էլեկտրական էներգիայի։ Ծանր ատոմների ճեղքման ճանապարհով ստացվող էներգիան շատ ավելի հզոր է, քան մինչ այդ մարդուն հայտնի էներգիայի բոլոր տեսակները։ Սակայն ատոմային էներգիայի համար օգտագործվող նյութերի արդյունահանումը դժվար և աշխատատար պրոցես է, իսկ դրանց պաշարները սահմանափակ են։ Ատոմային էներգիայի անջատումն ուղեկցվում է վնասակար հետևանքներով, որոնք կապված են ատոմների ճեղքման ժամանակ առաջացած նյութերի ռադիոակտիվության հետ։

Շատ ավելի հսկայական են էներգիայի այն պաշարները, որոնք կստացվեն ղեկավարվող ջերմամիջուկային ռեակցիաներից։ Այս դեպքում որպես



«վառելանյութ» կօգտագործվեն ջրի անսպառ պաշարները։ Հաշվումները ցույց են տալիս, որ սովորական ջրի մեկ լիտրը պարունակում է որոշ քանակի ծանր ջուր, որտեղ սովորական ջրածինը փոխարինված է ծանր ջրածնով։ Մեկ լիտրի մեջ պարունակվող ծանր ջուրը ջերմամիջուկային սինթեզի համար օգտագործելու դեպքում, կարելի է ստանալ այնքան էներգիա, ինչքան 300 լիտր բենզինն այրելիս։ Այստեղից պարզ է, թե ղեկավարվող ջերմամիջուկային ռեակցիաները ինչպիսի ֆանտաստիկ էներգիայի աղբյուր կարող են դառնալ։ Էներգիայի այս աղբյուրը ոչ միայն ավելի հզոր է քան միջուկայինը, այլև անվտանգ է։ Ղեկավարվող ջերմամիջուկային ռեակցիաների ստացման ճանապարհին խոշոր հաջողությունների են հասել սովետական ֆիզիկոսները։ Ատոմային էներգիայի ինստիտուտում նրանց հաջողվել է ստանալ կայուն բարձրաստիճան պլազմա՝ նշանակալից խտությամբ։ Այդ պլազմայի ջերմաստիճանը հասել է մոտավորապես 40 միլիոն աստիճանի, իսկ խտությունը 10 միլիարդ մասնիկի՝ մեկ խորանարդ սանտիմետրում։ Սակայն մեծ ինտենսիվության ջերմամիջուկային ռեակցիաներ ստանալու համար պահանջվում է պլազմայի ջերմաստիճանը հասցնել 200 միլիոնի, իսկ խտությունը մեծացնել 1000 անգամ։ Այստեղից պարզ է դառնում, որ ղեկավարվող ջերմամիջուկային ռեակցիաների իրականացումը հսկայական չափով կմեծացնի մարդու իշխանությունը բնության ուժերի նկատմամբ։

Միջուկային ֆիզիկայի և ատոմային էներգիայի զարգացումը հանգեցրել են ռադիոակտիվ նյութերի լայն օգտագործմանը։ Իզոտոպները լայն կիրառություն են գտնում ժողովրդական տնտեսության, բժշկության և գիտության ամենատարբեր բնագավառներում։ Այսպես, օրինակ, ռադիոակտիվ ածխածնի օգտագործման միջոցով գիտնականները բացահայտեցին արմատների նոր ֆունկցիան։ Պարզվեց, որ արմատների միջոցով բույսերը հողից յուրացնում են ինչպես ածխաթթու գազն, այնպես էլ նրա աղերը, որոնք տեղափոխվելով բույսերի կանաչ տերևների մեջ յուրացվում են։ Իսկ մինչ այդ այն կարծիքն էր իշխում, որ բույսերը յուրացնում են միայն օդում եղած ածխաթթու գազը։ Միաժամանակ ապացուցվեց, որ տերևները կարող են իրենց վրա վերցնել արմատների սովորական ֆունկցիան, իրականացնել բույսերի հանքային սնումը։ Դա հնարավոր է դարձնում գյուղատնտեսական կուլտուրաների լրացուցիչ սնուցումը։ Այդ մեթոդի օգտագործումը բարձրացնում է բամբակի բերքատվությունը 10—20 տոկոսով։

Ռադիոակտիվ իզոտոպների կիրառումը հնարավորություն տվեց գաղափար կազմել բույսերի մեջ կատարվող պրոցեսների արագության մասին։ Պարզվեց, որ ծառերի որոշ տեսակների բնափայտում ջուրը մեկ ժամում անցնում է 14 մետր։ Պլաստիկ նյութերի տեղափոխման արագությունը տերևներից դեպի պտուղները և արմատները հասնում են 0,7—1,5 մետրի մեկ ժամում, իսկ արմատներից դեպի տերևները տեղափոխվող նյութերի արագությունը տատանվում է 2—4 մետրի սահմաններում։ Նշված ատոմների օգտագործումը նոր լույս սփռեց ֆոտոսինթեզի վրա։ Հաստատվեց, որ ածխաթթու գազի յուրացումը և վերականգնումը հնարավոր է իրականացնել բջջից դուրս, ընդ որում ապացուցվեց, որ այդ պրոցեսում կարևոր դեր են կատարում երկաթ պարունակող միացությունները, որ ֆոտոսինթեզի ժամանակ առաջ են գալիս ոչ միայն ածխաջրեր, ինչպես մինչ այդ ենթադրում էին, այլև սպիտակուցներ։

Նշված ատոմների մեթոդը կիրառում է գտնում նաև բարձր ներվային սիստեմի բարդ պրոցեսների էության մեջ թափանցելու գործում: Քնած մարդու ուղեղում կատարվող բիոքիմիական պրոցեսների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ նրանում տեղի ունեցող սինթեզման պրոցեսները գերակշռում են քայքայման պրոցեսներին, որը և հանգեցնում է ուղեղի աշխատունակության վերականգնմանը:

Քվանտային էլեկտրոնիկան հնարավորություն է տվել ստեղծել էլեկտրամագնիսական ալիքների հաճախականության բարձր կայունության գեներատորներ, որոնք հնարավոր են դարձրել պատրաստել այնպիսի «ժամացույց», որը երեք հարյուր տարվա ընթացքում կարող է սխալվել մեկ վայրկյանով: Լույսի քվանտային գեներատորների որոշ տեսակ, որ ստեղծվել է վերջին ժամանակներս, էլեկտրական էներգիան անմիջապես փոխակերպում է լուսային ճառագայթման, բավականին բարձր օգտակար գործողության գործակցով: Որոշ լուսային գեներատորների ճառագայթման հզորությունը հասնում է մի քանի միլիոն վատտի: Եթե այդպիսի հզոր ճառագայթները հավաքենք ոսպնյակի օգնությամբ, ապա կարելի է հասնել էներգիայի այնպիսի մեծ խտության, որը միլիարդ անգամ կգերազանցի նույն հաճախականության էներգիայի խտությանը արևի վրա: Այդ կարգի հզոր ճառագայթային էներգիան կարելի է օգտագործել առավել ամուր նյութերի մշակման համար:

Հզոր լուսային ճառագայթը կարելի է օգտագործել բժշկության և հատկապես վիրաբուժության բնագավառում: Հատուկ հարմարանքների օգնությամբ լույսի ճառագայթները հավաքվում և կենտրոնացվում են օրգանիզմի ներսում եղած հիվանդ մասի վրա, որն իր ներգործությամբ հիշեցնում է վիրաբույժի դանակը, որի օգնությամբ վերջինս կտրում և հեռացնում է վնասված հյուսվածքները: Լուսային ճառագայթը ոչ միայն չի ազդում իր ճանապարհին գտնվող առողջ հյուսվածքների վրա, այլև ապահովվում է բուժման կատարյալ ստերիլությունը, որին վիրաբույժը երբեք հասնել չի կարող: Մեծ ինտենսիվության ճառագայթների նեղ փունջը, որն ստացվում է լուսային գեներատորներում, կարող է օգտագործվել չարորակ ուռուցքների, սրտի և աչքի վիրահատումների և այլ նպատակների համար:

Լուսային դիապազոնի յուրացումը հնարավորություն կտա արմատապես լուծել կապի հարցը ինչպես երկրագնդի, այնպես էլ տիեզերքի մասշտաբով: Հաշվումները ցույց են տալիս, որ լույսի տեսանելի սպեկտրի հաճախականության միայն մեկ տոկոսի օգտագործումը հնարավորություն կտա միաժամանակ իրականացնել մոտ մեկ միլիարդ հեռախոսային խոսակցություն, կամ մի քանի տասնյակ հազար հեռուստատեսային հաղորդումներ: Այն հանգամանքը, որ լուսային գեներատորներից ստացվող ճառագայթներն ունեն մեծ ուղղվածություն, նպատակասլացություն, հնարավորություն է տալիս ձեռնամուխ լինել էներգիան առանց լարերի հաղորդելու պրոբլեմի լուծմանը: Դա հնարավորություն կտա էներգիայով ապահովել լեռնային, բևեռային և տափաստանային դժվարամատչելի վայրերը:

Կիսահաղորդիչների բնագավառը գիտության և տեխնիկայի ամենաերիտասարդ բնագավառներից մեկն է: Սակայն կիսահաղորդիչներն արդեն աստիճանաբար և հաստատուն քայլերով կիրառություն են գտնում կյանքի ամենաբազմազան ասպարեզներում: Մեծ են կիսահաղորդիչների վրա հիմնված էներգետիկայի հեռանկարները: Հանգուցյալ Ժոլիո-Կյուրին այն կարծիքին





էր, որ մոտակա տարիներին կիսահաղորդչային էներգետիկան պետք է կատարի ավելի մեծ դեր, քան միջուկայինը: Կիսահաղորդիչների օգնությամբ հնարավոր է ջերմային, արևային և միջուկային էներգիաները անմիջապես վերածել էլեկտրական էներգիայի:

Կիսահաղորդիչների օգնությամբ, ըստ երևույթին, կարելի կլինի իրականացնել կապի այնպիսի միջոց, երբ ամեն մի մարդ մեր հողագնդի վրա կարող է տեսնել և խոսել ցանկացած տեղում գտնվող ուրիշ մարդկանց հետ և անգամ դուրս գալ երկրագնդի սահմաններից: Քիմիական և ջերմային էներգիայի անմիջական վերածումը էլեկտրական էներգիայի մեծ էֆեկտիվություն ունեցող տերմոէլեմենտներում լուրջ ներգործություն կունենա քաղաքային կյանքի վրա: Այդ էլեմենտները կդառնան տրանսպորտի և մյուս էլեկտրաէներգետիկ սարքավորումների սնման աղբյուր, զերծ լինելով ինչպես ծխից, այնպես էլ աղմուկից: Տերմոէլեմենտների օգնությամբ հնարավոր է տարվա բոլոր եղանակներին սենյակում պահպանել միևնույն ջերմաստիճանը, պատրաստել հարմարավետ և էժան սառցարաններ և այլն:

Մեծ են քիմիայի հաջողությունները և դերը մարդու կյանքում, որովհետև այն լայնորեն թափանցում է մարդկային պրակտիկայի և ամենօրյա կենցաղի ամենատարբեր բնագավառները: Ժամանակակից բարձր մոլեկուլյար միացությունների քիմիան մարդուն հնարավորություն է տալիս լաբորատորիաներում սինթեզել այնպիսի նյութեր, որոնք չեն հանդիպում բնության մեջ: Անցյալ դարի վերջին հաջողվեց սինթեզել առաջին պոլիմեր նյութերը: Անցած ավելի քան կես դարի ընթացքում սինթեզվել են մեծ թվով պոլիմերներ: Արհեստական պոլիմերների թվին են պատկանում սինթետիկ կաուչուկը, պլաստմասսաները, լաքերը և ներկերը, սինթետիկ մանրաթելը և այլն: Արհեստական պոլիմերները ստացվում են ոչ միայն էժան հումքից, այլև ունեն մի շարք օգտակար հատկություններ, որոնցից զուրկ են բնական նյութերը: Պոլիմերների սինթեզման ժամանակակից աստիճանը հնարավորություն է տալիս ստանալ նոր նյութեր նախօրոք ծրագրված հատկություններով: Դա բացատրվում է նրանով, որ քիմիկոսներին հաջողվել է սինթեզել ոչ միայն մեծ մոլեկուլներ, այլև իրար միացնել տարբեր հատկություններով օժտված մոլեկուլները և ստանալ նոր հսկա մոլեկուլներ, որի տարբեր մասերը բնութագրվում են տարբեր կառուցվածքներով և հատկություններով: Այս դեպքում ստացվող նյութը բնութագրվում է նրա կազմի մեջ մտնող բոլոր մոլեկուլների հատկությունների միագումարով: Նման ճանապարհով ստացվող նյութերը կոչվում են պատվաստված պոլիմերներ:

Քանի որ պոլիմերների այս նոր խումբը կարող է իր մեջ ընդգրկել հսկայական թվով ամենատարբեր հատկություններ ունեցող մոլեկուլներ, ապա տրամաբանական է ենթադրել, որ նրանք շատ մեծ կիրառում կստանան կյանքի ամենատարբեր ասպարեզներում: Պոլիմերների դերը գնալով անընդհատ պետք է աճի մարդու կյանքում, որովհետև նրանք իրենց մեջ կարող են միացնել ամենատարբեր հատկություններ և հանդես գալ որպես բնական նյութերի ամենալավագույն փոխարինողներ՝ սկսած մետաղներից և վերջացրած բրդով: Բավական է նշել, որ երեսուն հազար տոննա սինթետիկ թելը համարժեք է տասնութ միլիոն ոչխարից ստացվող բրդին:

Գիտության մի քանի ճյուղերից բերված խիստ համառոտ այս տվյալները բավական են ընդհանուր գաղափար կազմելու համար մարդկային մտքի



այն հսկայական թռիչքի մասին, որը կատարվել է մեր դարի իմացության ամենատարբեր ասպարեզներում։

Բնագիտության բնագավառում կատարվող սկզբունքային հայտնագործությունների հետ առնչվում են իդեոլոգիական բնագավառի հարցերը։ Բուրժուական փիլիսոփաները աշխատում են այդ հայտնագործությունները մեկնաբանել իրենց դասակարգի աշխարհայացքի՝ իդեալիզմի տեսանկյունով, որը խանգարում է գիտական հետազոտությունների ճիշտ կողմնորոշմանը և առաջընթացին։ Դրա համար էլ անհրաժեշտ է այդ նվաճումների դիալեկտիկա-մատերիալիստական մեկնաբանությունը, որը հնարավորություն է տալիս գիտական հետազոտություններին տալ ճիշտ ուղղություն, առաջ շարժել և զարգացնել մարքսիստական փիլիսոփայությունը և միաժամանակ մերկացնել այդ նվաճումներից արվող կեղծ, իդեալիստական եզրակացությունները։



Ժամանակակից կապիտալիզմի ռեակցիոն գաղափարախոսները և, առաջին հերթին՝ իդեալիստ փիլիսոփաները փորձում են ավելի ու ավելի խոր «թափանցել» գիտության մեջ, որպեսզի պահպանեն և ամրապնդեն կրոնը։ Դեռ 1914 թվականին Վ. Ի. Լենինը գրել է. «Մեր ժամանակում... սոլիդ գիտնականի համբավ վաստակել և պաշտոնապես ճանաչել տալ իր աշխատությունները՝ այդ նշանակում է «կանտիականորեն» դուրս բերված մի զույգ բնորոշումների միջոցով ապացուցել սոցիալիզմի անկարելիությունը։ Այդ նշանակում է ոչնչացնել մարքսիզմը՝ ընթերցողներին և ունկնդիրներին պարզաբանելով, որ մարքսիզմը չարժե նույնիսկ հերքել... այդ նշանակում է դուրս գցել ընդհանրապես ամեն մի գիտական օրենք՝ կրոնական օրենքներին տեղ մաքրելու համար...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 20, էջ 251)։ Որքա՜ն այժմեական են հնչում մեծ Լենինի այս տողերը, որոնք գրվել են կես դար առաջ, և որքա՜ն դիպուկ են բնութագրում նրանք բուրժուական գաղափարախոսության զարգացման ուղղությունը, որը այժմ ընդունում է հակակոմունիզմի ձև։

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետագա խորացումը սնում է բուրժուական ռեակցիոն գաղափարները։ Գիտության բուռն զարգացումը, հատկապես նրա այնպիսի ճյուղերի, ինչպիսիք են՝ ֆիզիկան, քիմիան, բիոլոգիան, գեոլոգիան, աստղագիտությունը և այլն, հանգում են կրոնական դոգմաների և պատկերացումների բացահայտ բացասման, դրա համար էլ բուրժուական մտածողները փորձում են իրենց ռեակցիոն, իդեալիստական հայացքներն անցկացնել քողարկված ձևով՝ «գիտական» նոր հագուստով։ Բնագիտության նվաճումների ոչ ճիշտ մեկնաբանությունը կարող է կատարվել երկու ձևով՝ գիտակցաբար և անգիտակցաբար։ Առաջին դեպքում բնագիտության նվաճումների գիտակցված կեղծումն անմիջապես թելադրվում է տիրապետող դասակարգերի շահերով. նման կեղծման հեղինակները հանդիսանում են բուրժուազիայի «դիպլոմավոր» լակեյները, իսկ երկրորդ դեպքում, բնագիտության նվաճումների ոչ ճիշտ մեկնաբանությունը գլխավորապես կապված է նրանց դիալեկտիկա չիմանալու հետ։ Բուրժուազիայի գաղափարախոսներն աշխատում են օգտագործել բնագետների թույլ տված սխալներն իրենց դասակարգային շահերի համար։

Իմացության պրոցեսի դիալեկտիկային անծանոթ լինելը, ժամանակակից



բնագիտության զարգացման որոշ առանձնահատկությունների ոչ ճիշտ ըմբռնումը բնագետների որոշ մասին հանգեցնում է հարաբերականության տեսության, քվանտային մեխանիկայի, «էլեմենտար» մասնիկների վերածման, կիբեռնետիկայի և այլ գիտությունների առանձին նվաճումների ոչ ճիշտ, իդեալիստական մեկնաբանության։

Մեր դարի առաջին քառորդում հանճարեղ ֆիզիկոս Ա. Էյնշտեյնը ստեղծեց հարաբերականության տեսությունը։ Այդ տեսության մեջ նա բացահայտեց մասսայի, ժամանակի, տարածության և շարժման միջև եղած օրգանական կապը։ Մատերիայի այնպիսի ատրիբուտներ (անբաժանելի հատկություններ), ինչպիսիք են՝ մասսան, ժամանակը և տարածությունը, դուրս եկան սերտ կերպով կապված նրա մյուս ատրիբուտի՝ շարժման հետ։ Ժամանակի, տարածության և մասսայի փոփոխականությունը վեր հանեց նրանց հարաբերական կողմը, որի ոչ ճիշտ ըմբռնումը բնագետների որոշ մասին հանգեցրեց ռելյատիվիզմի, իսկ վերջիններիս միջոցով՝ ժամանակի և տարածության օբյեկտիվության բացասմանը։

Այն բանի օրինակը, թե ինչպես են օգտագործում բնագիտության նվաճումների ոչ ճիշտ մեկնաբանությունը բուրժուազիայի «դիպլոմավոր» լակեյները, տալիս է ամերիկացի Բառնետը։ Իր «Տիեզերքը և Էյնշտեյնը» գրքում, որը լույս է տեսել 1949 թվականին, նա գրել է. «Էյնշտեյնը ցույց է տվել, որ մասսան և էներգիան էկվիվալենտ են, հատկությունը, որը կոչվում է մասսա, պարզապես խտացված էներգիա է։ Այլ խոսքով, մատերիան էներգիա է, էներգիան մատերիա»։ Այստեղից որոշակիորեն երևում է, որ մասսայի և էներգիայի օրինաչափ կապի սխալ մեկնաբանությունը Բառնետը օգտագործում է իդեալիզմի տարատեսակներից մեկի՝ էներգետիզմի հիմնավորման համար։ Իր իդեալիստական հայացքներին «գիտական» տեսք տալու նպատակով նա օգտագործում է ոչ միայն Էյնշտեյնի ոչ ճիշտ դրույթը, այլև կեղծ դիրքերից է մեկնաբանում ատոմային ռումբի պայթեցման հետ կապված պրոցեսները։

Ելնելով ատոմային ռումբի առաջին փորձարկումից՝ Բառնետը հայտարարել է, որ մարդն առաջին անգամ մատերիայի նշանակալից քանակությունը վերածեց լույսի, ջերմության, ձայնի և շարժման, որոնց մենք կոչում ենք էներգիա։ Բառնետի կողմից պաշտպանվող էներգետիզմը ըստ էության ոչնչով չի տարբերվում Օստվալդի էներգետիզմից, որովհետև նրանք երկուսն էլ փորձում են մտածել շարժում առանց մատերիայի տեսանկյունով, թեև տարբեր ձևերով են հիմնավորում այդ։ Ինչպես ատոմի լրիվ ճեղքումը, այնպես էլ բարդ միջուկների սինթեզն ավելի պարզերից (ջերմամիջուկային ռեակցիա), բուրժուական մտածողներն օգտագործում են ընդհանրապես իդեալիզմի և, մասնավորապես, էներգետիզմի հիմնավորման համար։ Սակայն Բառնետը չի սահմանափակվում էներգետիզմի «գիտական» փաստարկումներով, նա առաջ է գնում հայտարարելով, որ այն արագությունը, որով միջուկային պրոցեսները մատերիան վեր են ածում ճառագայթման, իբր հնարավորություն է տալիս որոշելու տիեզերքի սկիզբը և վախճանը, իսկ այդ որոշակիորեն տանում է դեպի աշխարհի ստեղծման կրոնական տեսակետը։

Նման եզրակացության էր հանգում նաև ֆիզիկոս Իորդանը, որի կարծիքով, իբր ժամանակակից ֆիզիկան լիկվիդացիայի է ենթարկել մատերիալիզմի բնագիտական հիմքերը և դրա համար էլ «աշխարհի ստեղծողի մասին թեզն ունի շատ կենդանի իմաստ»։

Անգլիական եպիսկոպոս Նոքսը «Աստվածները և ատոմը» իր գրքում փորձում է կամուրջ ստեղծել աստծո գործունեության և ներատոմային պրոցեսների միջև։ Ատոմային էներգիայի բացահայտումը և օգտագործումը նա կապում է Թոմա Ակվինացու սխոլաստիկայի հետ։ Ամերիկյան պերսոնալիստ է. Բերայտմենն ուղղակի գրում է. «Էներգիան, որը նկարագրվում է ֆիզիկոսների կողմից, աստծո կամքն է գործողության մեջ»։ Այստեղ արդեն բացահայտված է բնագիտության նվաճումների կեղծման ուղղակի իմաստը՝ «գիտականորեն» հիմնավորել աստծո գոյությունը, իսկ աստծո գաղափարն այժմ շատ ավելի անհրաժեշտ է իր դարն ապրող բուրժուազիային, քան երբևէ, որովհետև կորցնելով իր գոյության ռեալ հիմքը երկրի վրա, նա փորձում է գտնել այն երկնքում, աստծո գործունեության մեջ։ Այդ կարգի բուրժուական գիտնականների մասին Վ. Ի. Լենինը գրել է՝ «Հիրավի մարդ աչքերին չի հավատում, երբ այդպիսի բաներ է կարդում։ Այն աստիճանի մարազմի, անկման և պոռնկության է հասել արդի պրոֆեսորական գիտությունը» (Երկեր, հատ. 20, էջ 247—248)։

Ժամանակակից էներգետիզմի հիմնավորման համար օգտագործում են նաև էլեմենտար մասնիկների փոխադարձ վերածման ասպարեզում ձեռք բերված որոշ հաջողությունները, մասնավորապես էլեկտրոնների և պոզիտրոնների վերածման պրոցեսը ֆոտոնների և հակառակը։

Գերմանական ֆիզիկոս Հայզենբերգը խոշոր ծառայություններ ունի քվանտային մեխանիկայի բնագավառում, դրա համար էլ նրան համարում են այդ գիտության հիմնադիրներից մեկը։ Սակայն դրա հետ միաժամանակ Հայզենբերգը պաշտպանում է սխալ փիլիսոփայական հայացքներ։ Իր իդեալիստական տեսակետները հիմնավորելու համար նա օգտագործում է քվանտային մեխանիկայի նվաճումները, հաճախակի հանդես գալիս ատոմային ֆիզիկայի փիլիսոփայական հարցերին նվիրված հոդվածներով։ Եթե Հայզենբերգի հաջողությունները կոնկրետ հետազոտությունների (մասնավորապես քվանտային մեխանիկայի) բնագավառում խոշոր են և գիտական մեծ արժեք են ներկայացնում, ապա նրա փիլիսոփայական հայացքները հիմնականում իդեալիստական են և ոչ մի արժեք չեն ներկայացնում գիտության ու փիլիսոփայության զարգացման տեսակետից։ Ընդհակառակն, նրանք խանգարում են բնագիտության առանձին նվաճումների ճիշտ ըմբռնմանն ու մեկնաբանմանը, գիտության մեջ են քաշում մեխանիցիզմը, մետաֆիզիկան, իդեալիզմը և այլն, որոնք արգելակում են նրա զարգացմանը։ Ուստի, Հայզենբերգի փիլիսոփայական հայացքները պետք է ենթարկվեն հիմնավորված, գիտական սկզբունքային քննադատության։ Հայզենբերգն օգտագործում է քվանտային մեխանիկայի հաջողությունները մատերիայի և էներգիայի նույնացման համար, այդ աշխարհայացքային հարցում կանգնելով իդեալիստական տեսակետի վրա։

Բուրժուական փիլիսոփայության ներկայացուցիչների մի մասը դիալեկտիկական մատերիալիզմը հերքելու համար նախ ջնջում է նրա և մեխանիստական մատերիալիզմի միջև եղած որակական տարբերությունը, իսկ այնուհետև, հերքելով մեխանիստական մատերիալիզմը, գործն այնպես է ներկայացնում, թե իբր հերքում է մատերիալիզմն ընդհանրապես, այդ թվում նաև դիալեկտիկական մատերիալիզմը։ Այդպիսի մոտեցման մենք հանդիպում ենք պատճառականության հարցի քննարկման ժամանակ քվանտային մեխանիկայում։ Հայտնի է, որ օբյեկտիվ իրականության բոլոր բնագավառներն էլ ենթարկվում



են պատճառականության ընդհանուր օրենքին։ Սակայն այդ իրավունք չի տալիս պնդելու, թե իբր այդ օրենքն ամենուրեք դրսևորվում է մեկընդմիշտ տրված անփոփոխ սխեմայով, ընդհակառակն, նրա դրսևորման կոնկրետ ձևերը փոխվում են անհրաժեշտորեն իրականության մեկ բնագավառից մյուսին անցնելիս։ Հասկանալի է, որ պատճառականության դրսևորման այս կամ այն կոնկրետ ձևը մի բնագավառից մեխանիկորեն չի կարելի տարածել մյուս բնագավառների վրա։ Մինչդեռ պատճառականության հարցը միկրոաշխարհում ուսումնասիրելիս հենց այդպես են վարվում Հայզենբերգը և ուրիշներ։ Նրանք փորձում են պատճառականության դրսևորման մեխանիկական ձևը մակրոաշխարհից փոխադրել միկրոաշխարհի վրա։ Քանի որ պատճառականության նման ըմբռնումը կորցնում է իր ուժը միկրոաշխարհում, դրանից հանում են սխալ եզրակացություն՝ հայտարարելով, թե իբր պատճառականությունը կորցնում է իր ուժը միկրոաշխարհում։ Միկրոաշխարհում պատճառականության գաղափարը ժխտելու համար Հայզենբերգն օգտագործում է իր կողմից բացահայտված անորոշությունների առնչությունները։ Վերջիններիս ոչ ճիշտ մեկնաբանման ճանապարհով նա աշխատում է հիմնավորել ինդետերմինիզմի գաղափարը միկրոաշխարհում։ Նա ուղղակի հայտարարում է. «Քայքայվում է բնության երևույթների համընդհանուր պատճառական պայմանավորվածության համոզմունքը», որն օգտագործվում է որոշ բուրժուական մտածողների կողմից և նրանք սկսում են դատողություններ անել էլեկտրոնի «կամքի ազատության» մասին և այլն։

Կասկածից դուրս է, որ ամեն մի հեռացում մատերիալիզմից, ինչպես պատճառականության, այնպես էլ մնացած կարևոր աշխարհայացքային հարցերում, օգտագործվում է ժամանակակից կապիտալիզմի գաղափարախոսների կողմից հօգուտ իդեալիզմի և տերտերականության։ Պիեր Ժան Վիժյեն ցույց է տալիս, թե կոպենհագենյան դպրոցի սխալը պատճառականության հարցում ինչպես է օգտագործում աստրոֆիզիկ Արթուր Էդինգտոնը՝ աստծուն «իր իրավունքների մեջ» վերականգնելու համար։ «Դետերմինիզմը,— գրում է Վիժյեն,— կատաղությամբ հերքվում է կոպենհագենյան դպրոցի կողմից... դա թույլ է տվել Էդինգտոնին պնդելու, որ սկսած 1927 թվականից, շնորհիվ քվանտային մեխանիկայի, գիտնականի համար հնարավոր է դառնում հավատալ աստծուն»։ Էդինգտոնն առանց քաշվելու հայտարարում է, որ «կրոնը դարձել է ընդունելի գիտություն զարգացման համար, սկսած 1927 թվից», երբ հիմնավորեցին ինդետերմինիզմի թեզը ֆիզիկայում։ Իհարկե, բուրժուազիայի դիպլոմավոր սպասարկուի համար նշանակություն չունի, թե ինչպես և ինչ ճանապարհով, գիտակցաբար, թե անգիտակցաբար է այս կամ այն բնագետը հանգում պատճառականության բացասմանը։ Նրան հետաքրքրում է միայն օբյեկտիվ պատճառականության բացասումը, որը ճանապարհ է բացում դեպի կրոնը։ Կրոնի ամրապնդման մեջ էլ նա տեսնում է իր սոցիալական պատվերը։

Իդեալիզմի հիմնավորման նպատակով օգտագործվել և շարունակվում են օգտագործվել նաև գիտության զարգացման պրոցեսում առաջացած ժամանակավոր դժվարությունները։ Գիտության զարգացման ընթացքը բարդ է, հակասական, նրա նկատմամբ պահանջվող դիալեկտիկական մոտեցման բացակայության դեպքում անխուսափելի են տատանումներն ու սխալները, որոնք, որոշակի պայմանների առկայությամբ, տանում են դեպի իդեալիզմ։ Մարդկային իմացությունը թափանցում է երևույթից էությունը, սակայն, որպես

կանոն, երևույթը լրիվ չի համընկնում էության հետ։ Երբեմն երևույթի բացահայտումից հետո էությունը բացահայտվում է ոչ անմիջապես, ստեղծվում են ժամանակավոր դժվարություններ նոր երևույթի բացատրման գործում, որոնք էլ հենց օգտագործվում են բնության մատերիալիստական ըմբռնումը հերքելու նպատակով։ Այսպես պատահեց բետա ռադիոակտիվության երևույթի բացատրման հետ։ Այդ կապակցությամբ առաջացած դժվարություններից ելնելով, Բորը կասկածի տակ վերցրեց էներգիայի պահպանման և փոխանակման օրենքը։ Նա առաջ քաշեց այն միտքը, թե իբր էլեմենտար մասնիկների փոխազդեցության դեպքում այն կորցնում է իր ուժը։ Թեև Բորը, որպես ֆիզիկոս, մեծ ծառայություններ ունի գիտության զարգացման գործում, բայց տվյալ դեպքում, նա կանգնում է ոչ ճիշտ ճանապարհի վրա, ելնելով եզակի փաստից, կասկածի տակ է դնում բնության բացարձակ օրենքը, որն իր հաստատումն է գտել մարդկային դարավոր պրակտիկայի կողմից։ Այդպիսի ոչ ճիշտ տեսակետից բխում է հեռու գնացող եզրակացություն։ Ստացվում է, որ էներգիան կարելի է ստեղծել և ոչնչացնել, իսկ այդ էլ հենց իդեալիզմն է, որը հանգեցնում է էներգիայի ստեղծողի՝ աստծո գաղափարին։ Այստեղից որոշակիորեն երևում է, թե գիտության զարգացման պրոցեսում ծագած ժամանակավոր դժվարություններն ինչպես կարող են օգտագործվել իդեալիզմի հիմնավորման համար։ Գիտության զարգացման հետագա ընթացքը հերքեց Բորի տեսակետը և ցույց տվեց, որ նման դժվարություններ հաղթահարելու գլխավոր հենակետերը պետք է հանդիսանան բնության մեզ արդեն հայտնի, հիմնավոր օրենքները և ոչ թե կասկածի տակ վերցնել վերջիններիս գոյությունը։

Մեր օրերում, գիտության բուռն զարգացումն առաջ է քաշում բազմաթիվ նոր պրոբլեմներ, որոնց լուծումը կապված է նոր դժվարությունների հետ։ Այդպիսիք են՝ էլեմենտար մասնիկների կառուցվածքի, բաժանելիության և այլ պրոբլեմները։ Գիտության զարգացման նոր աստիճանի վրա առաջ են քաշվում այնպիսի կարևոր աշխարհայացքային հարցեր, ինչպիսիք են մատերիայի էության ու բաժանելիության հարցերը։ Կապիտալիստական աշխարհում այժմ էլ հանդիպում ենք այնպիսի գիտնականների, որոնք լրջորեն պնդում են, թե իբր մարդկային միտքն արդեն հասել է տիեզերքի վերջին անբաժանելի միավորին։ Այդ կարգի մտածողներից է Հայզենբերգը։ Նրա կարծիքով էլեմենտար մասնիկները հենց այդպիսի անբաժանելի միավորներ են։ Ինչ վերաբերում է այդ մասնիկների մատերիականության հարցին, այստեղ էլ նա անց է կացնում սխալ տեսակետ։ Հայզենբերգը գտնում է, որ էլեմենտար մասնիկներն իրենցից ներկայացնում են էներգիայի տարբեր կուտակումներ, դրանով նա նույնացնում է էներգիան մատերիայի հետ և անցնում էներգետիզմի դիրքերը։

Մեր ժամանակի գիտության զարգացման առանձնահատկություններից մեկն ընդհանրապես, և ֆիզիկայինը, հատկապես, կայանում է նրա շարունակվող մաթեմատիզացման մեջ։ Այդ պրոցեսը մի կողմից ընդգծում է մաթեմատիկայի անընդհատ աճող դերն արտաքին աշխարհի արտացոլման գործում, նյութական օբյեկտների քանակական կողմերի իմացության կարևորությունը նրանց խոր ըմբռնման համար, իսկ մյուս կողմից ցույց է տալիս տվյալ գիտության «հասունության» աստիճանը, որն այնքան խորն է թափանցել իր հետազոտության բնագավառը և կարողացել է վերջինիս փոփոխման օրենքների աճման տեմպերից անպայման պետք է պակասի։ Ուստի պլանավորման ների օգնությամբ։ Հետևապես, ֆիզիկայի մաթեմատիզացման պրոցեսը



մարդկային մտքի հետագա խորացման վկայությունն է, արտաքին աշխարհի ավելի խոր ըմբռնման ապացույցը։ Սակայն մաթեմատիկայի դերի գերագնահատումը հանգեցնում է նրան, որ այն կտրվում է օբյեկտիվ իրականությունից և հայտարարվում գիտնականի մտքի ազատ ստեղծագործության արդյունք։

Մեր դարի սկզբին, նշված ճանապարհով ծագել է կոնվենցիոնալիզմը։ Նրա հիմնադիրը հանդիսանում է ֆրանսիական մաթեմատիկոս Հ. Պուանկարեն։ Կոնվենցիոնալիզմը սուբյեկտիվ իդեալիզմի դրսևորման ձևն է մաթեմատիկայի բնագավառում։ Դրա կողմնակիցները բացասում են գիտական հասկացությունների օբյեկտիվ բնույթը, չափից ավելի մեծացնում մարդկային իմացության հարաբերական կողմը, այնտեղից դուրս նետում բացարձակ ճշմարտության մասնիկը։ Այսպիսով ստացվում է, որ գիտության կատեգորիաներն ու օրենքները զրկված են օբյեկտիվ բովանդակությունից, չեն արտացոլում արտաքին աշխարհը, հանդիսանում են լոկ բանվորական հիպոթեզներ, որոնք ստեղծվում են գիտնականների կողմից փոխադարձ համաձայնության, կոնվենցիայի ճանապարհով։ Կոնվենցիոնալիզմը մի կողմ է շպրտում գիտության բովանդակությունը, թողնելով միայն դատարկ կատեգորիաներն ու հասկացությունները, որոնք ի վիճակի չեն ծառայելու մարդուն, նրա պրակտիկ գործունեությանը։ Այս ուղղության կողմնակիցներն ուղղակի հայտարարում են, որ գիտնականներն իրենց հետազոտություններում ձգտում են ոչ թե բացահայտել «ճշմարտությունը», այլ գտնել միայն հարմար «թեորիա», չափից ավելի մեծացնելով ճանաչող սուբյեկտի՝ գիտնականի դերը։

Իհարկե, գիտության զարգացման համար որոշ նշանակություն ունեն գիտնականի անձնական հատկությունները և ունակությունները, որոնք մյուս գործոնների հետ միասին որոշում են նրա հարաբերական ակտիվությունը։ Սակայն միայն գիտնականի հարաբերական ակտիվությամբ չի կարելի բացատրել գիտության զարգացումը, այստեղ անհրաժեշտ է հաշվի առնել ուրիշ ավելի կարևոր գործոններ, որոնց թվին են պատկանում արտադրության եղանակը, գիտության նախընթաց զարգացման վիճակը և այլն։ Այստեղ հարկ է հիշել, որ խոսք չի կարող լինել գիտության մասին, թե այն կտրված է օբյեկտիվ իրականությունից, չի տալիս վերջինիս ճիշտ արտացոլումը։ Կոնվենցիոնալիզմի կողմնակիցները փաստորեն ընկնում են ծայրահեղ սուբյեկտիվ իդեալիզմի՝ վոլյունտարիզմի մեջ, գիտնականին հայտարարելով օբյեկտիվ օրենքների և կատեգորիաների ստեղծող։ Հենց դա էլ անհրաժեշտ է ժամանակակից խավարամոլներին։ Ահա թե ինչու կոնվենցիոնալիզմը պաշտպանվում և պրոպագանդվում է ժամանակակից նեոպոզիտիվիստների կողմից, որոնք աչքի ընկնող տեղ են զբաղեցնում հակակոմունիզմի ընդհանուր լագերում։



Այսպիսով, բուրժուազիայի գաղափարական սպասարկուները ձգտում են ոչ միայն գիտության նվաճումների նուրբ կեղծման ճանապարհով, իդեալիզմի օգնությամբ հասնել աստծո գաղափարին, ճանապարհ են հարթում կրոնի համար, փորձում են գիտությունը կրոնի հետ «միացնող» կամուրջ ստեղծել, այլև հանդես են գալիս ուղղակիորեն գիտության ու կրոնի «կապի» բացահայտ պրոպագանդայով։

Ժամանակակից կապիտալիստական աշխարհում օբյեկտիվ իդեալիզմն անմիջականորեն սերտաճում է աստվածաբանության հետ։ Դրա տիպիկ օրինակը նեոթոմիզմն է, որի գաղափարները լայնորեն ավանդվում են Արևմտյան Եվրոպայի և Ամերիկայի ինստիտուտներում ու համալսարաններում։ Այդ նպատակին են ծառայում 20-ից ավելի ամսագրեր և ամեն տարի հրատարակվող հարյուրավոր գրքեր։ Նման գաղափարների պրոպագանդան պաշտպանվում է ոչ միայն կաթոլիկական եկեղեցու, այլև կաթոլիկական պարտիաների ու նրանց առաջնորդների կողմից՝ Արևմտյան Գերմանիայում, Ֆրանսիայում, Իտալիայում և այլ երկրներում։ Կապիտալիստական երկրների առանձին գիտնականներ փորձում են ցույց տալ, որ առանց կրոնի մարդկությունը գոյություն ունենալ չի կարող։ Այսպես, օրինակ, ֆիզիկայի պրոֆեսոր Վեյցզեկերը բնության պատմության մասին իր դասախոսություններում ուղղակի հայտարարում է, որ առանց կրոնի մարդկությանը մահ է սպառնում։ Իորդանի կարծիքով, քվանտային ֆիզիկայում «ինդետերմինիզմի» հաստատումից հետո այլևս չի կարելի օգտագործել բնագիտության հաջողությունները կրոնի դեմ, իսկ Ա. Էդինգտոնը ելնելով այդ նույն «փաստից», գալիս է այն եզրակացության, թե իբր կրոնն ընդունելի է դարձել գիտության զարգացման համար։

***

Ներկա պայմաններում, երբ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացման հետևանքով գաղափարական պայքարն ավելի սուր բնույթ է ընդունում, բուրժուական գիտնականների նկատմամբ պետք է ունենալ խիստ դիֆերենցված և կոնկրետ մոտեցում։ Քննադատության կրակն անհրաժեշտ է կենտրոնացնել, առաջին հերթին՝ բուրժուազիայի «դիպլոմավոր» լակեյների դեմ, որոնք մինչև ուղն ու ծուծը ներծծված են հակակոմունիզմի գաղափարներով և աշխատում են ժամանակակից բնագիտության նվաճումների կեղծման ճանապարհով հիմնավորել իմպերիալիստական բուրժուազիայի ռեակցիոն հայացքները։ Նրանցից պետք է տարբերել գիտնականների այն խումբը, որը կանգնած է տարերային մատերիալիզմի և դիալեկտիկայի դիրքերում և ժամանակ-առ ժամանակ երերում է մատերիալիզմի ու իդեալիզմի միջև, իսկ երբեմն էլ անգիտակցորեն գլորվում դեպի իդեալիզմ։ Այդպիսի բնագետների սխալներն ու շեղումները պետք է ենթարկել հիմնավորված, գիտական քննադատության, օգնել նրանց, որպեսզի վերջիններս բարձրանան դիալեկտիկական մատերիալիզմի ըմբռնման աստիճանին, թույլ չտալ, որ հակակոմունիզմի կողմնակիցները նրանց տանեն իրենց լագերը։ Ժամանակակից բուրժուական աշխարհում հանդիպում են նաև այնպիսի բնագետներ, որոնք իրենց սեփական փորձով համոզվում են դիալեկտիկական մատերիալիզմի արդարացիության մեջ և գիտակցաբար անցում են կատարում դեպի այն։

Բուրժուական գաղափարախոսության դեմ մղվող անհաշտ պայքարը, ժամանակակից բնագիտության նվաճումներից արվող կեղծ, իդեալիստական եզրակացությունների մերկացումը, այդ նվաճումների հետևողական գիտական մեկնաբանությունը դիալեկտիկական մատերիալիզմի դիրքերից մարքսիստ գիտնականների պատվի գործն է։



# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՀԱՄԱՄԱՍՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

Սոցիալիստական էկոնոմիկայի կարևոր առավելություններից մեկը կապիտալիստական էկոնոմիկայի նկատմամբ նրա պլանային բնույթն է, որն օբյեկտիվորեն պահանջում է համապատասխանություն արտադրության զարգացման և հասարակության պահանջմունքների միջև։ Դա այն ընդհանուր համամասնությունն է, որով պայմանավորված են ժողովրդական տնտեսության բազմաթիվ այլ համամասնություններ։ Ժողովրդական տնտեսության պլանում համամասնությունների սահմանումը և նրանց պահպանումը կապված են հսկայական հաշվարկումների հետ և պահանջում է հատուկ մեթոդոլոգիա։ Այդպիսի մեթոդոլոգիայի համար հիմք են ծառայում մարքսիստական-լենինյան դրույթները վերարտադրության մասին, որոնք, սակայն, տալիս են համամասնությունները սահմանելու ընդհանուր կողմնորոշում։ Իսկ այն հարցը, թե պլանում սահմանված համամասնությունները որքան օպտիմալ են (լավագույն), մնում է անպատասխան։ Դրա հետ միասին պետք է նշել, որ սոցիալիստական պլանավորման հարուստ փորձը դեռևս չի տալիս մեզ օպտիմալ պլանավորման օրինակ, քանի որ որպես կանոն առայժմ պլանը մշակվում է մեկ վարիանտով միայն, չնայած որ Վ. Ի. Լենինը դեռևս 1921 թվականին Գոսպլանի ուշադրությունը հրավիրել էր պլանը մի քանի վարիանտներով մշակելու անհրաժեշտության վրա։ Վ. Ի. Լենինի այդ պահանջը հաշվի առնվեց և կիրառվեց հետագայում, առաջին հնգամյա պլանը մշակելիս։

Չնայած որ պլանը վարիանտներով մշակելու մեթոդներն այս կամ այն չափով կիրառվել են առաջին հնգամյակի և մասամբ էլ երկրորդ հնգամյակի մշակման շրջանում, սակայն հետագայում, Ստալինի անձի պաշտամունքի շրջանում, հիշյալ մեթոդը դուրս մղվեց պլանավորման պրակտիկայից. օպտիմալ պլանավորումը տեղի տվեց վոլյունտարիզմին։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի 1963 թ. հունիսյան պլենումում Ն. Ս. Խրուշչովն իր զեկուցումում նշեց, թե Ստալինն ինչպիսի քմահաճ վերաբերմունք էր ցույց տալիս երկրի ժողովրդական տնտեսության պլանները կազմելիս։

Կոմունիզմի ծավալուն կառուցման շրջանում, երբ մեր երկիրն ունի բարձր զարգացած արտադրողական ուժեր, երբ պլանային սկզբունքն ամրապնդվել է ժողովրդական տնտեսության մեջ, ստեղծվել են նպաստավոր պայ-

մաններ օպտիմալ պլաններ մշակելու և օպտիմալ համամասնություններ սահմանելու ու պահպանելու համար։

Որո՞նք են, սակայն, համամասնությունների օպտիմալության չափանիշները։ Սոցիալիստական էկոնոմիկայի բուն էությունից բխում են աշխատանքային, նյութական ու դրամական միջոցների արդյունավետ օգտագործումը և դրա հիման վրա ժողովրդական տնտեսության բարձր տեմպերով զարգացումը։ Տնտեսական զարգացման բարձր տեմպերը ձեռք են բերվում ժողովրդատնտեսական համամասնությունների որոշակի սիստեմի օգնությամբ։ Այն համամասնությունները, կամ դրանց սիստեմը, որ թույլ են տալիս հանուն հասարակության շահերի, նվազագույն ծախսումներով հասնելու մեծ արդյունքի, համարվում են օպտիմալ։

ՍՄԿՊ Կենտկոմի 1962 թվականի նոյեմբերյան պլենումում նշվեցին պլանավորման գործում եղած այն խոշոր թերությունները, որոնք խանգարում են օպտիմալ համամասնություններ սահմանելուն։ Պլենումի որոշումներում շեշտվեց, որ մեր զարգացման պլանները ոչ միշտ են հենվում մանրակրկիտ տնտեսական հաշվարկումների և հետազոտությունների վրա, առանձին ճյուղերի և տնտեսական շրջանների զարգացման տեմպերը որոշվում են արդեն ստեղծված համամասնություններով, հաշվի չի առնվում առավել հեռանկարային ճյուղերի արագ զարգացման անհրաժեշտությունը (քիմիայի, էլեկտրաէներգիայի և այլնի)։ Այդպիսի թերությունների վերացումը օպտիմալ համամասնությունների հասնելու կարևոր պայմանն է։ Այդ իսկ տեսակետից բացառիկ նշանակություն ունի ՍՄԿՊ Կենտկոմի 1963 թվականի դեկտեմբերյան պլենումի որոշումը, որով նախատեսվում են զարգացման առավել բարձր տեմպեր քիմիական արդյունաբերության և դրա հիման վրա ժողովրդական տնտեսության քիմիացման բնագավառում։

## 2

Նյութական արտադրության զարգացման առավել ընդհանուր ցուցանիշը հասարակության տարեկան ամբողջական արդյունքն է, որը պլանավորելիս հաշվի է առնվում նրա ծավալը, աճման տեմպը և բացարձակ աճը։ ՍՍՌՄ հասարակական ամբողջական արդյունքը 1928 թվականից մինչև այժմ աճել է ավելի քան 20 անգամ։

Գլխավոր հեռանկարի ժամանակաշրջանում՝ 1961—1980 թվականներին, ՍՍՌՄ հասարակական ամբողջական արդյունքն ավելանալու է մոտ 5 անգամ։ Հաշվի առնելով արտադրական սպառման և անձնական սպառման պահանջները՝ որոշվում են համամասնությունները հասարակական ամբողջական արդյունքի երկու մասերի՝ արտադրության միջոցների արտադրության և սպառման առարկաների արտադրության աճման միջև։ Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ժամանակաշրջանում շատ ավելի մեծ հնարավորություն կա երկու ստորաբաժանումների միջև առավել համաչափ զարգացում ապահովելու և օպտիմալ համամասնությունների հասնելու, քան այդ եղել է սոցիալիստական շինարարության անցած էտապներում։

Սոցիալիստական ինդուստրացման առաջին շրջանում, երբ արտադրության միջոցների արտադրությունը թույլ էր զարգացած, հարկավոր էր ստեղծել ծանր արդյունաբերություն, այդ պայմաններում ո՛չ միայն պահանջվում էր



արդյունաբերության «Ա» խմբի (արտադրության միջոցներ արտադրող) զարգացման գերազանց տեմպեր, այլև այդ խմբի կողմից թողարկվող արտադրանքը պետք է սպառվեր իր իսկ ներսում։ Դրա հետևանքով ծանր արդյունաբերությունը որոշ իմաստով անկախ էր զարգանում ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերից, այդ թվում նաև սպառման առարկաներ արտադրող արդյունաբերությունից։ Զարգացման այդ տենդենցը ցայտուն կերպով դրսևորվեց առաջին հնգամյակում։ Արտադրության միջոցների արտադրության առավել աճը, որպես ընդլայնված վերարտադրության պայման, շարունակվեց հետագայում ևս, ուստի և արմատական փոփոխության ենթարկվեցին արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի միջև եղած համամասնությունները։ Դա երևում է հետևյալ տվյալներից.

ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ «Ա» և «Բ» խմբերի տեսակարար կշիռների փոփոխվելը սոցիալիստական շինարարության տարբեր էտապներում:

| Տարիներ | «Ա» խումբ | «Բ» խումբ |
|---|---|---|
| 1928 թ. | 39,5 | 60,5 |
| 1932 » | 53,4 | 46,6 |
| 1940 » | 61,2 | 38,8 |
| 1950 » | 68,8 | 31,2 |
| 1955 » | 70,5 | 29,5 |
| 1960 » | 72,5 | 27,5 |

Հետևելով համամասնությունների փոփոխման ընթացքին՝ տեսնում ենք, որ հնգամյակ առ հնգամյակ բարձրանում է «Ա» խմբի տեսակարար կշիռը և հակառակը՝ իջնում է «Բ» խմբի տեսակարար կշիռը։ Դրա հետ միասին համամասնությունների նշված փոփոխություններից հետևում է, որ երբ արդեն արտադրության միջոցների արտադրությունը հասնում է բարձր մակարդակի, այդ ստորաբաժանման աճման տեմպերի քանակական գերազանցությունը նվազում է և գնալով ավելի պետք է նվազի, կամ, այլ կերպ ասած՝ երկու խմբերի աճման տեմպերի միջև եղած տարբերությունները պետք է նվազեն։ «Ա» և «Բ» խմբերի զարգացման տեմպերի միջև մեծ տարբերությունը սոցիալիստական ընդլայնված վերարտադրության մշտապես գործող օրինաչափությունը չէ։ Խնդիրն այն է, որ պատմական զարգացման յուրաքանչյուր էտապում արդյունաբերության երկու խմբերի զարգացման տեմպերն այնպես զուգակցվեն, որ դրանց միջև օպտիմալ համամասնություն ապահովվի։ Այդպիսի զուգորդման օրինակ կարող է հանդիսանալ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման գլխավոր հեռանկարը, ըստ որի 1961—1980 թվականներին արդյունաբերության «Ա» խմբի արտադրանքի տարեկան միջին աճը նախատեսվում է 10,2, իսկ «Բ» խմբինը՝ 8,5 տոկոս։ Այդ նշանակում է, որ դրանց աճման տեմպերի միջև տարբերություններն ավելի են նվազում և կազմում են ընդամենը 20 տոկոս։ Տնտեսական զարգացման բարձր աստիճանում «Ա» և «Բ» խմբերի աճման տեմպերի միջև եղած տարբերությունների նվազումը բնավ էլ չի նշանակում արտադրության միջոցների արտադրության առավել աճի օրենքի գործողության դադարում, այլ՝ երկու խմբերի միջև օպտիմալ համամասնությունների ապահովում։

Արտադրության միջոցների արտադրության բարձր տեսակարար կշիռ ունենալու ներկա պայմաններում, եթե շարունակվեր սպառման առարկաների տեսակարար կշռի նշանակալից իջեցումը նաև հետագայում, ապա (հասարակական ամբողջական արդյունքի տվյալ մեծության դեպքում) հնարավոր չէր լինի առաջին ստորաբաժանման և ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ

գրաղվածներին ապահովել կենսամիջոցներով։ Հետևապես արտադրության միջոցների արտադրության աճման տեմպերի գերազանցումը սպառման առարկաների աճման տեմպերից անպայման պետք է պակասի։ Ուստի պլանավորման գլխավոր խնդիրն է երկու ստորաբաժանումների զարգացման միջև այնպիսի համամասնություններ սահմանել, որոնք լինեն օպտիմալ։ Այդ օպտիմալության չափանիշը և բովանդակությունը պետք է հանգի նրան, որ արտադրության միջոցների արտադրությունն առավել աճի այն չափով, որ չափով այդ անհրաժեշտ է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական վերազինումը, այդ թվում՝ գյուղատնտեսությունը, սպառման առարկաներ թողարկող արդյունաբերությունը, շինարարությունը, տրանսպորտը, առևտուրը, հասարակական սնունդը, առողջապահությունը, բնակարանային կոմունալ տնտեսությունը և այլն ապահովելու համար։ Ծանր արդյունաբերության առջև կանգնած վերոհիշյալ խնդիրների կենսագործումը չի պահանջում նրա աճման տեմպերի տարբերության հետագա խորացում սպառման առարկաների արդյունաբերության աճման տեմպերի նկատմամբ, այլ առաջին հերթին, պահանջում է՝ հենց ծանր արդյունաբերության միջճյուղային համամասնությունների փոփոխություն հօգուտ առավել հեռանկարային ճյուղերի։

Ծանր արդյունաբերության մեջ այդպիսի ճյուղերի շարքին է դասվում նախ և առաջ քիմիական արդյունաբերությունը, որն իր հերթին խարսխվում է գազի և նավթի արդյունաբերության արագ զարգացման վրա։ Դրան համապատասխան առաջիկա տարիներին քիմիական արդյունաբերության մեջ նավթը և գազը որպես ելակետային հումք օգտագործելու հիման վրա կզարգանա հանքային պարարտանյութերի, պլաստմասսաների, արհեստական և սինթետիկ մանրաթելերի, սննդային հումքի փոխարինիչների արտադրությունը։

Պլաստմասսաների արտադրության արագ զարգացումը հնարավորություն կտա լուծելու տեխնիկական բարդ պրոբլեմներ և արդյունաբերության մի շարք առաջավոր ճյուղերում և, առաջին հերթին, մեքենաշինության մեջ ստեղծելու տեխնոլոգիական նոր սխեմաներ։ Արհեստական, սինթետիկ մանրաթելերի արտադրության զարգացումը մեծ չափով կընդարձակի թեթև արդյունաբերության հումքային բազան և գյուղատնտեսական հումքի ավելացման հետ մեկտեղ կապահովի լայն սպառման առարկաների արտադրության մեծ աճ. դրանց հետ միասին քիմիական արդյունաբերության արագ զարգացումը հնարավորություն կտա սննդանյութերի փոխարեն (ճարպեր և գյուղատնտեսական հումք) տեխնիկական նպատակների համար օգտագործել սինթետիկ, էթիլային նյութեր։

Այսպիսով, կոմունիզմի ծավալուն կառուցման ներկա էտապում ստեղծվում են բոլոր անհրաժեշտ պայմանները՝ առանց ծանր արդյունաբերությանը վնասելու, համեմատական բարձր տեմպերով զարգացնելու նաև ժողովրդական սպառման առարկաների արդյունաբերությունը։ Ավելին, ծանր արդյունաբերության ճյուղային այն կառուցվածքը, որ նախատեսվում է առաջիկա տարիների համար, ամենալայն չափերով կօժանդակի սպառման առարկաների արտադրության զարգացմանը։ Դրանում է արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի միջև օպտիմալ համամասնություններ ստեղծելու իմաստն ու բովանդակությունը։



## 3

Ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական համամասնություններից մեկը արդյունաբերության և գյուղատնտեսության միջև եղած համամասնությունն է։ Սոցիալիստական արդյունաբերությունը գյուղատնտեսությանը պետք է մատակարարի արտադրության միջոցների այնպիսի տեսակներ ու այնպիսի քանակությամբ, որն անհրաժեշտ է գյուղատնտեսության հետագա ինտենսիվացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, որով հնարավոր կլինի բնակչությանը լրիվին ապահովել պարենով, իսկ թեթև և սննդի արդյունաբերությանը՝ հումքով։

Անհրաժեշտ է նախապես նշել, որ արդյունաբերության և գյուղատնտեսության միջև համամասնությունների ապահովման հարցը սոցիալիստական շինարարության ամբողջ տևողության ընթացքում հանդիսացել է պլանավորման բարդ և դժվարլուծելի հարցերից մեկը։

Ելնելով երկրի առջև կանգնած հրատապ խնդիրների կենսագործման անհրաժեշտությունից, տարիներ շարունակ նյութական ու ֆինանսական ռեսուրսների մեծագույն մասն ուղղվել է ծանր արդյունաբերությանը՝ նպատակ ունենալով ապահովել ժողովրդական տնտեսության սոցիալիստական ու տեխնիկական վերակառուցումը։ Ավելին, ծանր արդյունաբերությանն ուղղված միջոցների ոչ քիչ մասը գների մեխանիզմի, մթերումների քաղաքականության և տնտեսական այլ լծակների միջոցով դուրս է բերվել գյուղատնտեսությունից։ Եթե նկատի ունենանք նաև այն կոպիտ սխալները, որ թույլ էին տրվում Ստալինի անձի պաշտամունքի տիրապետության շրջանում, ապա պարզ կլինի, թե ինչու երկար տարիներ հնարավոր չէր լինում օպտիմալ համամասնություններ ապահովել արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման միջև։ Բավական է նշել, որ 1952 թվականին գյուղատնտեսության համախառն արտադրանքը, 1940 թվականի համեմատությամբ, ավելացել է ընդամենը 10 տոկոսով, իսկ գյուղատնտեսական մի շարք մթերքների արտադրության մակարդակից։ Գյուղատնտեսության ամենահիմնական ճյուղը՝ հացահատիկային արտադրությունը, համարյա թե գտնվում էր նախառևոլյուցիոն Ռուսաստանի մակարդակին։ Գյուղատնտեսական մթերքների և հումքի արտադրության մակարդակը չէր համապատասխանում գյուղատնտեսության տեխնիկական հագեցվածությանը և այն հնարավորություններին, որ ունի սոցիալիստական տնտեսությունը։ Դրա հետևանքով, ինչպես նշեց Ն. Ս. Խրուշչևը ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի 1958 թվականի դեկտեմբերյան պլենումում, ստեղծվել էր որոշակի անհամապատասխանություն արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման միջև։ Հացի արտադրության բալանսի և հացի նկատմամբ ժողովրդատնտեսական պահանջի միջև առաջացել էին անհամամասնություններ։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությունը 1953 թվականից հետո գործադրեցին մի շարք միջոցառումներ՝ բարձրացնելու գյուղատնտեսության զարգացման տեմպերը։ Այսպես՝ 1953—1960 թվականներին ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ ներդրումներն ավելացել են 2,4, իսկ գյուղատնտեսության մեջ՝ 2,7 անգամ։ Այդ և մի շարք միջոցառումներ հնարավորություն տվեցին գյուղատնտեսության զարգացման տեմպերը

մոտեցնելու արդյունաբերության զարգացման տեմպերին, որը երևում է ստորև բերված տվյալներից։

Չնայած, որ հետպատերազմյան շրջանում, մասնավորապես 1954 թվականից սկսած, գյուղատնտեսության զարգացման տեմպերն զգալիորեն մոտենում էին արդյունաբերության զարգացման տեմպերին, այնուհանդերձ դեռևս ժողովրդական տնտեսության այդ երկու, կենսականորեն անհրաժեշտ ճյուղերի միջև համամասնություններն օպտիմալ չէին։ Որպեսզի արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման միջև ստեղծվեն օպտիմալ համամասնություններ, նախ և առաջ անհրաժեշտ է հաղթահարել գյուղատնտեսության ետ մնալը, գյուղատնտեսության հետագա ինտենսիվացման և, առաջին հերթին՝ նրա քիմիացման միջոցով։ Հաշվարկումները ցույց են տվել, որ օպտիմալ համամասնության կարելի է հասնել այն դեպքում, երբ գյուղատնտեսության զարգացման տեմպերը 1964—1970 թվականների համար պլանավորվեն արդյունաբերության զարգացման տեմպերին հավասար։

Արդյունաբերության արտադրանքի աճի տեմպերի գերազանցումը գյուղատնտեսականից.

| | | | |
|---|---|---|---|
| 1929—1932 թթ. | . . . . | 2,3 | անգամ |
| 1933—1937 | » . . . . | 1,8 | » |
| 1941—1950 | » . . . . | 1,7 | » |
| 1950—1960 | » . . . . | 1,3 | » |

ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի 1963 թվականի դեկտեմբերյան պլենումի որոշումներին համապատասխան գյուղատնտեսության քիմիացման, իռիգացիայի, մեքենայացման և էլեկտրիֆիկացման աստիճանի հետագա բարձրացման հիման վրա ՍՍՌՄ գյուղատնտեսությունը 1970 թվականին պետք է հասնի զարգացման այնպիսի աստիճանի, որ կարողանա թողարկել՝ 14—16 միլիարդ փութ հացահատիկ, 20—25 միլիոն տոննա միս (սպանդանոցային քաշով), 115—135 միլիոն տոննա կաթ, 68 միլիարդ հատ ձու. դա հնարավորություն կտա բնակչության պահանջմունքները ռացիոնալ նորմաներով բավարարելու։ Հասնելով դրան, գլխավոր հեռանկարի երկրորդ տասնամյակի համար թերևս հարկ չլինի գյուղատնտեսության զարգացման այդպիսի տեմպեր պահպանել. հարկ կլինի փոխել արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման տեմպերի հարաբերակցությունը։

Գլխավոր հեռանկարի երկրորդ տասնամյակում գյուղատնտեսության մեջ փոխհատուցման և կուտակման պրոցեսներն ուղղված կլինեն աշխատանքի արտադրողականության, ֆոնդազինվածության բարձրացմանը։ Ի տարբերություն 1961—1970 թվականների, երբ գյուղատնտեսական արտադրանքի աճը նախատեսվում է 2,5 անգամ և դրան համապատասխան տարեկան միջին աճ 9,5 տոկոսով, գլխավոր հեռանկարի երկրորդ տասնամյակում նախատեսվում է գյուղատնտեսական արտադրանքի աճն ավելացնել 1,4 անգամ։

Իրականացնելով ՍՄԿՊ Կենտկոմի 1963 թվականի դեկտեմբերյան պլենումի որոշումները գյուղատնտեսության վերաբերյալ՝ ՍՍՌՄ-ը կապահովի արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման մեջ օպտիմալ համամասնություններ, որոնք այնքան անհրաժեշտ են ամբողջ ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացման համար։

### 4

Ժողովրդական տնտեսության զարգացման մեջ օպտիմալ համամասնությունն ապահովելու հարցն ընդգրկում է ինչպես արտադրության, այնպես էլ



սպառման բնագավառները։ ՍՄԿՊ ծրագրի կարևոր դրույթներից մեկն է՝ Սովետական Միությունում ապահովել ամենաբարձր կենսամակարդակ կապիտալիզմի ամեն մի երկրի համեմատությամբ։ Քանի որ արտադրության և սպառման ընդլայնման աղբյուրը ազգային եկամուտն է, ուստի անհրաժեշտ է սահմանել թե ազգային եկամուտը ինչ չափով պետք է աճի՝ կոմունիստական շինարարության հարցերը լուծելու համար։

Սոցիալիստական ընդլայնված վերարտադրության ընթացքում աշխատանքի արտադրողականության բարձրացման և նյութական ծախսումների տնտեսման շնորհիվ փոխվում է հասարակական ամբողջական արդյունքի նյութա-իրային և արժեքային կառուցվածքը և, ամենից առաջ՝ հասարակական ամբողջական արդյունքի մեջ ազգային եկամտի և փոխհատուցման ֆոնդի միջև եղած համամասնությունը։ 1950—1959 թվականը ՍՍՌՄ հասարակական ամբողջական արդյունքն (ընթացիկ գներով հաշված) ավելացել է մոտ 2 անգամ, իսկ ազգային եկամուտը՝ 1,8 անգամ։ Դրան համապատասխան հասարակական ամբողջական արդյունքի մեջ նյութական ծախսումների կամ փոխհատուցման ֆոնդի տեսակարար կշիռը 46,3 տոկոսից բարձրացել է մինչև 50,8 տոկոս և հակառակը՝ ազգային եկամտի տեսակարար կշիռը 53,7-ից իջել է 49,2 տոկոսի։

Որպեսզի ազգային եկամտի արտադրության հաշվարկումները կապենք նրա սպառման հաշվարկումների հետ, անհրաժեշտ է որոշել օպտիմալ համամասնությունները ազգային եկամտի սպառման և կուտակման միջև։

Նախապես նշենք, որ սպառման և կուտակման միջև գոյություն ունի հարաբերական հակասություն, քանի որ ազգային եկամտի միևնույն ծավալի դեպքում որքան մեծանա մեկը, նույնքան պետք է փոքրանա մյուսը։ Այդ հակասությունը լուծելու բանալին հենց ազգային եկամտի այդ երկու մասերի միջև օպտիմալ համամասնություններ սահմանելն է։ Հաշվի առնելով այդ՝ դեռևս պարտիայի XV համագումարի դիրեկտիվներում առաջին հնգամյա պլանի մասին նշվում էր սպառման և կուտակման միջև օպտիմալ համամասնություններ սահմանելու անհրաժեշտությունը։ Սպառման և կուտակման օպտիմալ զուգակցումը կնշանակի դրանց յուրաքանչյուրի այնպիսի աճ, որ դրանք համապատասխանեն ազգային եկամտի աճի ընդհանուր ծավալին և դուրս չգան այդ սահմաններից։ Կուտակման նորման այնպիսին պետք է լինի, որ համապատասխանություն ապահովվի ազգային եկամտի նյութաիրային կազմի և արժեքային կազմի միջև. հակառակ պարագայում կարող են առաջանալ դժվարություններ։

Այդպիսի դժվարություններ առաջանում են, երբ էկոնոմիկայում կտրուկ շրջադարձեր են կատարվում պատմական մեծ նշանակություն ունեցող խնդիրներ լուծելու համար, որի դեպքում, իհարկե, դժվար է կուտակման և սպառման միջև օպտիմալ համամասնություններ ապահովել։ Այդպիսի դժվարություններ առաջացան մեր երկրում, երբ ժողովրդական տնտեսության վերականգնումից կտրուկ շրջադարձ կատարվեց դեպի նրա վերակառուցումը, կամ՝ խաղաղ էկոնոմիկայից անցում ռազմականին (հայրենական պատերազմի շրջանում)։

Ժողովրդական տնտեսության վերակառուցմանն անցնելու կապակցությամբ 1928 թվականին ՍՍՌՄ ազգային եկամտի սպառման և կուտակման միջև նախկինում եղած համամասնությունները մեր երկրում փոխվեցին և 1913 թվականի 9 տոկոսի փոխարեն կուտակման նորման հասցվեց 21,3

տոկոսի, կամ ավելացավ 2,4 անգամ։ Այդ նույն ժամանակ, ազգային եկամուտը 1913 թվականի ծավալի համեմատությամբ ավելացավ ընդամենը 19 տոկոսով։ Դրա հետևանքով խախտվեցին համամասնություններն արտադրության և սպառման միջև, երկրում առաջացավ սպառման առարկաների խիստ պակաս։

Նախապատերազմյան հնգամյակներում և հետպատերազմյան անցած տարիներին, երբ ազգային եկամուտն ավելացավ տասնյակ անգամ, հնարավոր դարձավ սպառման և կուտակման միջև օպտիմալ համամասնություններ ստեղծել։ 1960 թվականին ՍՍՌՄ ազգային եկամուտը, նույն տարվա գներով հաշված, կազմում էր 144 միլիարդ ռուբլի, որից կուտակման ֆոնդը կազմում էր 28 տոկոս, կամ 40 միլիարդ ռուբլի։

Հաշվարկումները ցույց են տալիս, որ ազգային եկամտի կուտակման և սպառման մասերի միջև գոյություն ունեցող համամասնություններն ընդհանուր առմամբ կարելի է համարել օպտիմալ։ Գոյություն ունեցող այդ համամասնությունները կարելի՞ է օպտիմալ համարել նաև գլխավոր հեռանկարի ժամանակամիջոցի համար, երբ հասարակական ամբողջական արդյունքի միջին տարեկան աճը կազմել է ոչ պակաս, քան 8,5 տոկոս և արդյունաբերության արտադրանքինը՝ 9—10 տոկոս։ Այդ նշանակում է՝ պահանջվում է արտադրական կուտակման բարձր նորմա, նկատի ունենալով, որ այդ նորման կախում ունի տնտեսական զարգացման տեմպերից։ Դրա հետ միասին արտադրական կուտակման նորման կախում ունի նաև կուտակման արդյունավետ օգտագործումից։

Նախապատերազմյան հնգամյակներում այդ արդյունավետության ատտիճանը թե՛ արդյունաբերության և թե գյուղատնտեսության մեջ բավականին ցածր էր, ուստի այդ էր պատճառը, որ եթե արդյունաբերության և շինարարության հիմնական ֆոնդերը 1928—1940 թթ. ավելացան 8,5 անգամ, համախառն արտադրանքն ավելացավ 6,5 անգամ։ Առավել ցածր էր այն գյուղատնտեսության մեջ։ Եթե գյուղատնտեսության հիմնական ֆոնդերը 1928—1940 թվականներին ավելացան 2,3 անգամ, ապա համախառն արտադրանքն աճեց ընդամենը 14 տոկոսով։

1940—1960 թվականներին կուտակման արդյունավետությունը փոքր-ինչ բարձրացավ։ 1940 թվականից 1960 թվականը ազգային եկամուտն աճեց 4,35 անգամ, հիմնական արտադրական ֆոնդերի 3,1 անգամ աճի պայմաններում։ Արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացավ 1,6 անգամ, հիմնական ֆոնդերի 2,9 անգամ աճի պայմաններում։

Գլխավոր հեռանկարի ժամանակամիջոցում նախատեսվում է հասարակական ամբողջական արդյունքն ավելացնել մոտ 5 անգամ, նույնքան էլ աճելու է ազգային եկամուտը և բացարձակ թվերով այն կկազմի ավելի քան 700 միլիարդ ռուբլի։ Հաշվի առնելով, որ այդ նույն ժամանակամիջոցում բնակչությունը կհասնի մինչև 280 միլիոնի, տվյալ դեպքում, եթե նույնիսկ կուտակման ֆոնդը հասցնենք 30 տոկոսի, սպառման ֆոնդը մեկ շնչի հաշվով 550 ռուբլուց կբարձրանա մինչև 1900 ռուբլի կամ կավելանա 3,5 անգամ, որը լիովին կապահովի անձնական սպառման պահանջները՝ գիտականորեն հիմնավորված նորմաներով։ Սպառման և կուտակման միջև մատնանշված համամասնությունը իրոք որ կլինի օպտիմալ։





Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման կարևոր համամասնություններից են աշխատանքային ռեսուրսների բաշխման և օգտագործման համամասնությունները։

Աշխատանքային ռեսուրսների բաշխման համամասնությունների օպտիմալության առաջին և գլխավոր չափանիշը սոցիալիստական էկոնոմիկայում այդ ռեսուրսների լրիվ զբաղվածությունն է։ Հատկանշական է, որ դեռևս անցման շրջանում ՍՍՌՄ-ում ամբողջապես ու մեկընդմիշտ լիկվիդացվեց գործազրկությունը քաղաքում և ագրարային գերբնակչությունը գյուղում։ Ի տարբերություն կապիտալիզմի, նշված է պարտիայի ծրագրում, տնտեսության պլանային սոցիալիստական սիստեմը տեխնիկական առաջադիմության արագացումը զուգակցում է ամբողջ աշխատունակ բնակչության լրիվ զբաղվածության հետ։ 1960 թվականին ՍՍՌՄ բնակչությունը կազմում էր 214 միլիոն մարդ, որից աշխատունակ՝ 120 միլիոն մարդ։ Մատնանշված քանակությունից ժողովրդական տնտեսության մեջ աշխատում էին 99 միլիոն մարդ, կամ ամբողջ աշխատունակ բնակչության 82,5 տոկոսը։ Ինչ վերաբերում է մնացած 21 միլիոնին, ապա դրանք աշխատանքային հասակ ունեցող սովորողներն էին, տնային տնտեսուհիները և օժանդակ տնտեսությամբ զբաղվողները։ Կապիտալիստական և ոչ մի երկրում զբաղվածության այդպիսի բարձր տոկոս գոյություն չունի և չի էլ կարող ունենալ։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման ընթացքում, ժողովրդական տնտեսության մեջ ավելի կբարձրանա աշխատանքային ռեսուրսների ներգրավման աստիճանը՝ ի հաշիվ տնային և օժանդակ տնտեսությամբ զբաղվածների, որը կնշանակի աշխատանքային ռեսուրսների բաշխման համամասնությունների հետագա օպտիմալացում։

Աշխատանքային ռեսուրսների բաշխման համամասնություններից մեկը այդ ռեսուրսները նյութական արտադրության և ոչ արտադրական ոլորտների միջև բաշխելու համամասնությունն է։ Հասարակական աշխատանքի այդ համամասնության օպտիմալությունը մեծ չափով կարող է կանխորոշել ազգային եկամտի մեծությունը, նրա կառուցվածքը, հետևապես և ընդլայնված վերարտադրության տեմպերը և մասշտաբները։ Նկատի առնելով ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման ժամանակ այդ համամասնության հետ կապված փոփոխությունների ընթացքը և ուղղությունը, որպես օրինաչափություն կարելի է նշել, որ զբաղվածների ընդհանուր քանակի մեջ գնալով բարձրանում է ոչ արտադրական ոլորտում զբաղվածների տեսակարար կշիռը և, ընդհակառակը՝ պակասում է նյութական արտադրության ոլորտում զբաղվածների տեսակարար կշիռը։ Այսպես. եթե 1940 թվականին նյութական արտադրության ոլորտում զբաղվածների տեսակարար կշիռը կազմում էր զբաղված բնակչության 87,9 տոկոսը, ապա 1961 թվականին այն իջել էր 82,1 տոկոսի։ Համապատասխանաբար բարձրացել էր ոչ արտադրական ոլորտում զբաղվածների տեսակարար կշիռը։ Մատնանշված փոփոխությունները հետևանք էին հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերի և մակարդակի, երկրի տնտեսական զարգացման, բնակչության քանակի ու որակավորման հետ կատարված փոփոխությունների, վերջապես բնակչության նյութա-կենցաղային սպասարկման բարելավման։

Նյութական արտադրության և ոչ արտադրական ոլորտում զբաղվածների միջև համամասնությունների օպտիմալությունը որոշող կարևոր գործոններից մեկը բնակչության սպասարկման հետագա բարելավումն է՝ կապված նրա կենսամակարդակի բարձրացման հետ։ Ոչ արտադրական ոլորտի կողմից բնակչությանն սպասարկելու գոյություն ունեցող մակարդակն այսօր դեռևս ետ է մնում գիտականորեն հիմնավորված նորմաներից։ Այսպես, օրինակ, եթե յուրաքանչյուր 10 հազար բնակչին անհրաժեշտ է 124 հիվանդանոցային մահճակալ, ապա 1961 թվականին մենք ունեինք 84 մահճակալ, դա նշանակում է, որ ապահովվածության աստիճանը կազմել է 67,7 տոկոս։ Մանկական մսուրներում 10 հազար մարդու հաշվով տեղերի քանակը պետք է լինի 300, սակայն 1961 թվականին այն կազմել է ընդամենը 60 տեղ, կամ 20 տոկոսը։ Մանկապարտեզներում տեղերի քանակը չի անցնում պահանջի 41 տոկոսից և այլն։ Բնակչության սպասարկման ճյուղերում գլխավոր հեռանկարի ժամանակամիջոցում աշխատողների թվաքանակը կավելանա երեք անգամ, որը կնշանակի նյութական արտադրության և սպասարկման ոլորտներում զբաղվածների քանակության միջև եղած համամասնությունների օպտիմալացում։

Աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման կարևոր պայմանն է այդ ռեսուրսները նյութական արտադրության ճյուղերի միջև օպտիմալ համամասնություններով բաշխելը։ Անհրաժեշտ է նշել, որ նյութական արտադրության մեջ զբաղվածների բարձր տեսակարար կշիռը բացատրվում է գերազանցապես նրանով, որ գյուղատնտեսության մեջ չափից ավելի մեծ թվով աշխատողներ են զբաղված։ Բավական է նշել, որ 1961 թ. գյուղատնտեսության մեջ զբաղվածների բաժինը նյութական արտադրության մեջ աշխատողների ընդհանուր թվի 38,8 տոկոսն էր կազմում այն ժամանակ, երբ արդյունաբերության, շինարարության բնագավառում և տրանսպորտում զբաղվածների բաժինը կազմում էր 36,9 տոկոսը։ Հետաքրքիր է նկատել, որ վերջիններիս տեսակարար կշիռը կազմում էր՝ հասարակական ամբողջական արդյունքի մեջ՝ 77,5, ազգային եկամտի մեջ 67,2 տոկոս, մինչդեռ գյուղատնտեսության բաժինը կազմում էր՝ հասարակական ամբողջական արդյունքի մեջ՝ 16,1, ազգային եկամտի մեջ՝ 21,2 տոկոս։[1]

Գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության շատ ցածր լինելը արդյունաբերության համեմատությամբ ակնհայտ է։ Թերևս դրանով պետք է բացատրել այն իրողությունը, որ 1960 թվականին սննդամթերքների արտադրությամբ զբաղված էին 34 միլիոն մարդ, որոնցից 18 միլիոնը՝ մսի, կաթի, յուղի և ձվի արտադրության, 9 միլիոնը հագուստի և ոտնամանի արտադրության, 6,2 միլիոնը՝ կուլտուր-կենցաղային և այլ սպառման առարկաների արտադրության բնագավառում։ Այսպիսով, ընդամենը 50 միլիոն մարդ, կամ աշխատողների ավելի քան կեսը զբաղված են եղել սպառման առարկաների արտադրությամբ։ Այդ նույն ժամանակ ընդամենը 30 միլիոն մարդ են զբաղվել արտադրության միջոցների արտադրությամբ, որը կազմում է աշխատողների ընդհանուր թվի 30 տոկոսը։

Աշխատանքային ռեսուրսները նյութական արտադրության ճյուղերի միջև օպտիմալ համամասնություններով բաշխելու համար գլխավոր հեռանկարի ժամանակամիջոցում տեղի կունենա այդ ռեսուրսների վերաբաշխում՝ գյուղատնտեսությունից դեպի ոչ գյուղատնտեսական ճյուղերը։ Գլխավոր հեռանկարի ժամանակամիջոցում գյուղատնտեսության համախառն արտադրանքն ավելանալու է 3,5, իսկ աշխատանքի արտադրողականությունը 5—6 անգամ։ Այդ նշանակում է, որ գյուղատնտեսության արտադրանքն աճելու է աշխատանքի արտադրողականության հաշվին, ուստի և դրա հիման վրա աշխատանքային ռեսուրսների մեծ մասը կազատվի գյուղատնտեսությունից և կանցնի ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերը։

Այսպիսով, գյուղատնտեսությունը երկար տարիներ լինելու է բանվոր-ծառայողների թվի ավելացման աղբյուր։ Հետևապես, աշխատանքի արտադրողականության մակարդակի բարձրացումը գյուղատնտեսական արտադրության մեջ այն գլխավոր գործոնն է, որը պետք է ապահովի աշխատանքային ռեսուրսները նյութական արտադրության ճյուղերի միջև օպտիմալ համամասնություններով բաշխելու համար։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ աշխատուժի վերաբաշխումը գյուղատնտեսությունից դեպի ոչ գյուղատնտեսական ճյուղերը կունենա իր վերջը և այդ աղբյուրի նվազելու հետ միասին բանվոր ծառայողների թվի աճը կլիմիտավորվի բնակչության բնական աճով։ Այդ պայմաններում արդեն արդյունաբերության ու շինարարության մեջ հասարակական արտադրության աճման տեմպերը չիջեցնելու և նախկին տեմպերը պահպանելու համար վճռական նշանակություն ձեռք կբերի նշված ճյուղերում աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի հետագա բարձրացումը։

Ժողովրդական տնտեսության զարգացման բոլոր գլխավոր համամասնությունների օպտիմալացումը, որին պետք է հասնել առաջիկա 10—15 տարիներին, կապահովի ՍՍՌՄ-ում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցումը և դրա հիման վրա աշխարհում կստեղծվի ամենաբարձր կենսամակարդակը։



[1] Народное хозяйство СССР в 1961 г., 1962, стр. 76 и 598:

# ԱՇԽԱՏԱՆՔԸ ԵՎ ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Բ. ԱՆԱՆԻԿՅԱՆ

Նոր մարդու դաստիարակության հարցը պարտիայի ծրագրում դրված է որպես կոնկրետ, ժամանակակից սերնդի պրակտիկ խնդիր։ Մարքսիստական-լենինյան թեորիան ելնում է այն բանից, որ անհատի դաստիարակության հիմքում ընկած է աշխատանքը, բնության և հասարակության վերափոխման համար մարդու ակտիվ գործունեությունը։ Ահա թե ինչու ՍՄԿՊ-ն իր նոր ծրագրում դաստիարակչական աշխատանքի կենտրոնում դրեց հասարակության բոլոր անդամների մոտ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք զարգացնելը։

Դարերի խորքից են սկիզբ առնում դաստիարակության պրոբլեմի, նրա բովանդակության, ձևերի ու մեթոդների շուրջը ծագած վեճերը։ Անցյալի շատ ու շատ մտածողներ, իրենց թեորիաները կառուցելով պատմության իդեալիստական ըմբռնման հիմքի վրա, չկարողացան տեսնել մարդկանց դաստիարակության գլխավոր միջոցը՝ նրանց սեփական, պատմական ստեղծագործությունը, նրանց հասարակական պրակտիկան։

Աշխատանքի դաստիարակիչ նշանակության մասին հետաքրքրական թեորիաներ ու մտքեր են զարգացրել ուտոպիստ-սոցիալիստները, մինչմարքսյան փիլիսոփաներն ու մանկավարժները՝ Թ. Մորը, Կամպանելլան, Ռուսսոն, Պեստալոցին, Ֆուրիեն, Օուենը, Չերնիշևսկին, Դոբրոլյուբովը, Պիսարևը, Ուշինսկին և շատ ուրիշ առաջավոր մտածողներ։ Վաղ շրջանի ուտոպիական սոցիալիզմի ներկայացուցիչներն, օրինակ, կռահում էին, որ կոմունիստական հասարակությունում, որտեղ բացակայում է մարդու շահագործումը մարդու կողմից, անհատը կդաստիարակվի, կզարգանա համաչափ. նա կզբաղվի և՛ ֆիզիկական, և՛ մտավոր աշխատանքով, որը կդառնա ազատ քաղաքացիների կյանքի առաջին պայմանը, կվերածվի մարդու բնական կենսական պահանջմունքի։

Աշխատանքի դաստիարակիչ դերի գաղափարն իր հետագա զարգացումն ստացավ XVIII դարի ֆրանսիական լուսավորիչների և, առաջին հերթին, Ժ. Ժ. Ռուսսոյի մոտ։ Պատմության հարցերի ըմբռնման բնագավառում մնալով իդեալիստ, նա դաստիարակությունը համարում էր ուղի դեպի հավասարությունը, նշելով, որ պետք է դաստիարակել ոչ թե պարոնին կամ ստրուկին, այլ մարդուն, նրան համակել աշխատանքի և աշխատավորի նկատմամբ սիրով։ Մյուս կողմից՝ նա գտնում էր, որ աշխատանքը պետք է լիովին համապատասխանի մարդու արժանիքներին և նրանում պետք է միավորվեն ձեռքի ու գլխի



գործունեությունը, որպեսզի դաստիարակվողն, ինչպես պատկերավոր ձևով ասում էր նա՝ աշխատի իբրև գյուղացի և մտածի իբրև փիլիսոփա։

XIX դարի սոցիալիստ-ուտոպիստներն արդեն աշխատանքի դաստիարակիչ դերը քննության են առնում հասարակության սոցիալիստական վերափոխման գաղափարների հետ սերտորեն առնչված։ Շ. Ֆուրիեն և Ռ. Օուենն աշխատանքը համարում էին սոցիալիստական դաստիարակության զենք, աշխատավորներին կոլեկտիվիզմի ոգով դաստիարակելու միջոց։ Նրանք դեռևս այն ժամանակ նկատեցին աշխատանքի կապիտալիստական բաժանման կործանարար ազդեցությունը մարդու վրա։ Նրանք քննադատում էին կոնկուրենցիայի սկզբունքը, որը մարդկանց դնում է միմյանց նկատմամբ թշնամական վիճակի մեջ և առաջ էին քաշում աշխատանքի պրոցեսում բարեկամական մրցակցության սկզբունքը։ Նրանք խնդիր էին դնում վերացնել գյուղի ու քաղաքի միջև եղած հակադրությունը, որպես աշխատանքի բաժանման հին սխեմի հիմք։

Մարդու դաստիարակության գործում աշխատանքի դերին հատուկ նշանակություն էին տալիս ռուս ռևոլյուցիոն դեմոկրատները, որոնք գտնում էին, թե մարդը ստեղծված է աշխատանքի համար և հենց աշխատանքն է առանձին անհատին ու հասարակությանը միավորող առանցքը։ Նրանք հանգեցին այն եզրակացության, որ դեռևս վաղ հասակից պետք է մարդու մոտ սեր հարուցել աշխատանքի նկատմամբ, ձևավորել նրա աշխատասիրությունը։

Վերը բերված, ինչպես նաև շատ ու շատ այլ մտքեր, սակայն, լավագույն դեպքում մնացին իբրև հանճարեղ գուշակություններ։ Ֆ. Էնգելսի դիպուկ արտահայտությամբ՝ կապիտալիստական արտադրության թույլ զարգացած վիճակին, դասակարգային չհասունացած հարաբերություններին համապատասխանում էին և թերհաս թեորիաները։

Միայն Մարքսի ու Էնգելսի հանճարով ստեղծված պատմական մատերիալիզմի շնորհիվ մշակվեց դաստիարակության միակ ճիշտ, գիտական թեորիան։ Մարքսյան ուսմունքը գտնում է, որ հասարակության հոգևոր կյանքի, հասարակական իդեաների, թեորիաների, քաղաքական հայացքների ձևավորման աղբյուրը պետք է փնտրել ո՛չ բուն իդեաների, թեորիաների, հայացքների մեջ, այլ հասարակության նյութական կյանքի պայմանների մեջ, որտեղ աշխատանքային գործունեությունը խաղում է գլխավոր, վճռական դերը։ «Մատերիալիստական ուսմունքն այն մասին,— գրում էր Կ. Մարքսը,— թե մարդիկ արգասիք են հանգամանքների և դաստիարակության, որ հետևաբար, փոփոխված մարդիկ՝ դրանք այլ հանգամանքների և փոփոխված դաստիարակության արգասիք են,— այս ուսմունքը մոռանում է, որ հանգամանքները հենց մարդիկ են փոփոխում և որ դաստիարակողին հենց իրեն պետք է դաստիարակել... հանգամանքների և մարդկային գործունեության փոփոխության զուգադիպությունը կարող է ըմբռնվել և ռացիոնալորեն հասկացվել միայն որպես ռևոլյուցիոն պրակտիկա» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 2, էջ 518)։

Անհրաժեշտ է հատկապես ընդգծել, որ միայն հասարակության կյանքում աշխատանքի դերի ճիշտ ըմբռնումը Մարքսին ու Էնգելսին հնարավորություն ընձեռեց մշակելու գիտականորեն հիմնավորված հայացք հասարակական կյանքի նկատմամբ, ստեղծելու պրոլետարիատի ռևոլյուցիոն աշխարհայացքը։ Այդ կապակցությամբ Էնգելսը գրում է. «Աշխատանքի զարգացման պատմու-

թյան մեջ գտնելով հասարակության ողջ պատմության ըմբռնման բանալին, նոր ուղղությունը (մարքսիզմը— Բ. Ա.)... շրջվեց... դեպի բանվոր դասակարգը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 2, էջ 382)։ Պետք է ասել, որ այս հարցը շոշափող մի շարք տեսաբաններ մարքսիզմի հատկապես տվյալ կողմի վրա դեռևս քիչ ուշադրություն են դարձնում։

Աշխատանքը մարդկային հասարակության գոյության, զարգացման և կատարելագործման հզոր ուժն է, նրա նյութական և հոգևոր կյանքի հիմքը։ Աշխատանքով են ստեղծվում հասարակությանն անհրաժեշտ նյութական ու կուլտուրական բոլոր արժեքները, նրա շնորհիվ են բնության ուժերը ենթարկվում մարդուն։

Աշխատանքը, սակայն, միայն նյութական բարիքների ստեղծման միջոց չէ։ Կ. Մարքսը դեռևս իր վաղ շրջանի աշխատություններում հանգեց այն եզրակացության, որ աշխատանքը և արտադրությունը գլխավորն են հասարակության զարգացման գործում, որ աշխատանքով ստեղծվում են ո՛չ միայն նյութական հոյակապ արժեքներ, այլև այն է հանդիսանում մարդու ձևավորման որոշիչ գործոնը, որ, հետևաբար, աշխատանքի բնույթի փոփոխման հետևանքով փոփոխվում է հասարակության զարգացման բնույթը։

Մարդու, նրա ընդունակությունների զարգացման գործում աշխատանքի վճռական դերը խորապես բացահայտել է Ֆ. Էնգելսն իր «Աշխատանքի դերը կապկի մարդու փոխարկվելու պրոցեսում» աշխատության մեջ, որտեղ նա գրում է, որ աշխատանքը «մարդկային ամբողջ կյանքի առաջին հիմնական պայմանն է և այն էլ այն աստիճան, որ մենք որոշ իմաստով պիտի ասենք՝ հենց աշխատանքն է ստեղծել մարդուն»։

Անհատի զարգացման, նրա բարոյական դաստիարակության գործում աշխատանքի դերը պարզ չի լինի, եթե չբացահայտվի նրա սոցիալական բնույթը։ Անհատի, որպես հասարակական էակի վրա աշխատանքի էական ներգործությունն ամենից առաջ պայմանավորված է արտադրական հարաբերություններով։ Մարքսիզմ-լենինիզմի կլասիկներն աշխատանքը միշտ էլ դիտել են ամենից առաջ որպես հասարակական երևույթ։ Մարդու դերը հասարակության մեջ որոշվում է ոչ թե նրա բիոլոգիական էությամբ, այլ նրանով, որ նա արտադրող է։ Մարդու դարավոր էվոլյուցիայի մեծագույն փոփոխությունները նախ և առաջ սոցիալական կյանքի արգասիք են, որոնց հիմքերի հիմքում մարդկանց արտադրական գործունեությունն է դրված։

Հայտնի է, թե մարքսիզմի կլասիկները որքան մեծ նշանակություն էին տալիս աշխատանքի էության բացահայտմանը։ Ահա թե ինչու աշխատանքի օտարման պրոբլեմը Կ. Մարքսի վաղ շրջանի աշխատություններում այնքան հանգամանալի է մշակված։ Ուստի պատահական չէ, որ այդ հասկացության վերաբերյալ զանազան մտածողներ տարբեր ըմբռնում են ունեցել։ Հեգելի մոտ, օրինակ, այն նշանակում է, ամենից առաջ, ոգու օտարում բնությանը, Ֆոյերբախի մոտ՝ դա մարդկային էության օտարումն է աստծու կարծեցյալ էությանը, իսկ Մարքսի և Էնգելսի մոտ այդ հիմնականում մարդկային աշխատանքի օտարումն է։

Կապիտալիզմը, կապիտալիստական արտադրաեղանակը, նշում է Մարքսը, բանվորին անջատում է իր արդյունքներից, այն իրերից, որոնցում նա օտարում է իր սեփական մարդկային էությունը։ Այս մոմենտը դրսևորվում է նաև այն բանում, որ բանվորն օտարվում է ո՛չ միայն իր աշխատանքի ար-



դյունքներում, այլև աշխատանքի բուն պրոցեսում։ Այսպիսի պայմաններում, նշում էր Մարքսը, աշխատանքը բանվորի նկատմամբ դառնում է ինչ-որ արտաքին բան, որ միայն աշխատանքից դուրս է բանվորն ինքնին, իսկ աշխատանքի պրոցեսում գտնվում է ինչ-որ իրենից դուրս։ Այդ ամենի հետևանքով բանվորի աշխատանքն այստեղ կրում է հարկադրական բնույթ։

Մինչսոցիալիստական հասարակական-տնտեսական ֆորմացիաներում արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը երկատում էր մարդկանց շահերն ու մտքերը։ Բնութագրելով կապիտալիզմի ժամանակ աշխատանքի պայմանների անտագոնիստական էությունը, Մարքսը նշում էր, որ աշխատանքով ստեղծված առարկայական աշխարհն այստեղ երկատված է այնպես, ինչպես երկատված է հասարակությունը։ «Աշխատանքն արտադրում է հրաշալի իրեր՝ հարուստների համար, բայց նա ծնում է նաև բանվորի թշվառություն։ Նա ստեղծում է պալատներ, բայց և հետնախորշեր՝ բանվորների համար։ Նա ստեղծում է գեղեցկություններ, բայց և այլանդակում է բանվորին։ Նա ձեռքի աշխատանքը փոխարինում է մեքենայով, բայց դրա հետ միասին բանվորների մի մասին շպրտում է ետ՝ դեպի բարբարոսական աշխատանք, իսկ մյուս մասին վերածում է մեքենայի։ Նա ծնում է միտք, բայց և տկարամտություն, բթամտություն՝ որպես բանվորների բաժին» (К. Маркс, Ф. Энгельс, Из ранних произведений, госполитиздат 1956, стр. 562)։

Կ. Մարքսը նկատում էր, որ կապիտալիզմի պայմաններում աշխատավորը դրված է մեքենայի կցորդի վիճակում և ցմահ կատարելով հասարակ, մեխանիկական շարժումներ, իրեն զգում է ոչ թե որպես իսկական մարդ, այլ մի խղճուկ կակղամորթ։ Աշխատանքի կապիտալիստական բաժանումը խորացնում է մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած հակադրությունը։ Կապիտալիստական արտադրահարաբերությունների ուժով աշխատանքն այստեղ մնում է որպես անազատ և ծանր պարտականություն, աշխատավորների շահագործման ու հարստահարման, նրանց ընդունակությունների ու տաղանդների խեղման միջոց։ Մարքսի պատկերավոր արտահայտությամբ, այստեղ որքան հոգեպես հարուստ է դառնում աշխատանքը, այնքան հոգեպես աղքատանում է բանվորը։

Որպեսզի աշխատանքը լիովին զարգացնի մարդու ձիրքերն ու ընդունակությունները, աշխատավորին տա ցանկացած արդյունք ու բավարարվածություն, անհրաժեշտ են համապատասխան սոցիալական պայմաններ։ Սոցիալիզմը լուծեց պատմական այդ մեծ պրոբլեմը. լիկվիդացնելով շահագործող դասակարգերը և մարդու կողմից մարդու շահագործում ծնող պատճառները, մեկընդմիշտ վերջ տվեց արտադրության միջոցների մասնավոր սեփականության տիրապետությանը՝ հասարակությունը թշնամական դասակարգերի բաժանող այդ հիմքին։ «Ուրիշի համար,— գրում է Վ. Ի. Լենինը,— հարյուրամյակներ աշխատելուց, շահագործողների համար հարկադրական աշխատանք կատարելուց հետո, առաջին անգամն է հնարավորություն ստեղծվում իր համար աշխատելու, այն էլ այնպիսի հնարավորություն, որը հենվում է նորագույն տեխնիկայի ու կուլտուրայի բոլոր նվաճումների վրա» (Երկեր, հ. 26, էջ 435)։

Շահագործումից և ճնշումից ազատ, իր համար, ողջ հասարակության համար կատարվող աշխատանքն է վեհացնում մարդուն, ստեղծում անհատի բազմակողմանի զարգացման համար անսահման հնարավորություններ։ Աշխատանքային այդպիսի դարբնոցում է կոփվում սովետական նոր մարդը,

որի մոտ ձևավորվում և արմատավորվում են բարոյական նոր, վեհ հատկանիշներ։

Ժամանակակից ռեակցիոն բուրժուական բարոյագետները պնդում են, թե իբր մարդն իր էությամբ արատավոր էակ է, դրա համար էլ անուղղելի է, որ արատը նրա մեջ թափանցում է հենց ծնված օրվանից։ Նայեցեք մարդկությանը, ասում են նրանք, տեսեք, թե որքան ստոր և ճղճիմ է մարդը, ինչպիսի հանցանքների և վայրագությունների է ընդունակ նա։ Մարդը գիշատիչ գազան է, ցինիկորեն հայտարարում է հիտլերյան գաղափարախոս Օսվալդ Շպենգլերը։ Որպես թե անասնական մղումը մարդու մոտ անհաղթահարելի է, և քանի որ նա միշտ մնում է գայլ-գազան, ապա ժամանակն է դեն նետել մարդու բարոյական կերպարի վերափոխման մասին ուտոպիական երազանքները։

Կարճ և խտացված ձևով այս է ժամանակակից բուրժուական ռեակցիոն գաղափարախոսների բարոյական հավատամքը։

Մարդկային բնավորության անփոփոխելիության վերաբերյալ բուրժուական թեորետիկների տեսակետների դասակարգային էությունը լիովին ակներև է։ Եթե չի կարելի փոխել մեկընդմիշտ հաստատված տիրապետման ու ենթարկման հարաբերությունները, որոնք «սահմանված են ի վերուստ» և ճակատագրական անխուսափելիություն են, ապա մնում է միայն հաշտվել գոյություն ունեցող իրականության հետ, բավարարվել նրանով, ինչ արդեն կա և չփորձել փոխել աշխարհն ու մարդուն։

Սակայն գիտական կոմունիզմն արմատապես հերքում է մարդու բարոյական բնության անփոփոխելիության մասին բուրժուական մտայնությունը։ Ոչ թե մարդու բնավորությունը, այլ զարգացման ու դաստիարակության սոցիալական պայմաններն են որոշում նրա բարոյականությունը։

Ապագա կոմունիստական արտադրությունը, նշում էր Էնգելսը, կարիք կունենա բոլորովին նոր մարդկանց և կստեղծի նրանց։ Գիտական կոմունիզմի հիմնադիրները, սակայն, իրենց առջև խնդիր չէին դրել կոնկրետացնել ապագայի մարդու բարոյական կերպարի գծերը։ Նրանք նշում էին, որ այն ժամանակ, երբ այդ մարդիկ հանդես կգան, իրենք դեն կնետեն արդեն հնացած պատկերացումները, կմշակեն իրենց հասարակական կարծիքը յուրաքանչյուրի՝ առանձին վերցրած, վարքագծի նկատմամբ։

Բոլորի համար միասնական բարոյական կոդեքսի մշակումը հնարավոր է միայն ճնշումից և շահագործումից ազատ, արտադրության միջոցների հանրային սեփականության վրա հիմնված հասարակարգում։ Այդպիսի կոդեքս մշակեց մեր պարտիան իր նոր ծրագրում, որն իր թեորիական բովանդակությամբ և պրակտիկ նշանակությամբ նմանը չունի։ Կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի բոլոր սկզբունքները բխում են բարոյականության լենինյան միակ չափանիշից՝ կոմունիզմն ամրապնդելու և ավարտելու համար մղվող պայքարի անհրաժեշտությունից։

Երբեք չնսեմացնելով նոր մարդու զարգացման ու ձևավորման գործում ընտանիքի, դպրոցի, գիտության և արվեստի դերն ու նշանակությունը, անհրաժեշտ է նշել, սակայն, որ դաստիարակության ողջ սիստեմում առաջնայինը, գլխավորը՝ աշխատանքն է, մարդու ստեղծարար գործունեությունը։ Աշխատանքի ընթացքում է, որ անհատը սեփական փորձով համոզվում է կոմունիզմի սկզբունքների և նորմերի պահպանման անհրաժեշտության մեջ։ Աշխատանքի այդ որոշիչ դերը բացատրվում է նաև նրանով, որ հենց դրա



պրակտիկան է մարդուն օգնում գիտակցելու սեփական գործունեության իրական շարժառիթները, գնահատելու դրանք, գիտակցաբար իր գործողությունները համադրելու մյուսների ջանքերին։

Գլխավորը, որ բնութագրում է կոմունիստական հասարակարգի նոր մարդու բարոյական կերպարը, դա գիտակից, ստեղծագործական, իսկական կոմունիստական վերաբերմունքն է հասարակության բարօրության համար կատարվող աշխատանքի նկատմամբ, նրա հոգատարությունը հասարակական ունեցվածքը պահպանելու և բազմապատկելու հանդեպ: Աշխատանքի նկատմամբ գիտակցված սերը կյանքի վերափոխմանն ուղղված մարդու ակտիվ գործունեությունն է, նրա համոզմունքների, իղձերի ու ձգտումների իրականացման արգասաբեր ձևը։

Աշխատանքի նկատմամբ նոր, կոմունիստական վերաբերմունք ասելով պետք է հասկանալ ոչ թե սովորական աշխատասիրությունը, որը երբեմն դրսևորվում է նաև սոցիալ-տնտեսական մյուս ֆորմացիաներում, այլ այնպիսի գործունեություն, որը լինելով գերազանցապես հանրօգուտ և կամավոր, նաև սրտորեն բխում է մարդու կոմունիստական համոզմունքներից։ Ուստի և աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքը միաժամանակ սեր և նվիրվածություն է իր հայրենիքին, իր դասակարգին, իր հասարակությանը, նրա խոհերին ու նպատակներին։

Մեր ժամանակներում կոմունիզմի բացահայտ թշնամիներն աշխատանքը դիտում են որպես մարդկային էներգիայի, մտքի ու ներվերի հասարակ ծախսում, պնդելով, որ մարդն իբր աշխատանքում չի ստանում բարոյական և ոչ մի բավարարվածություն։ Արդի բուրժուազիայի իդեոլոգներից մեկը՝ Լ. Միզեսը առարկելով Մարքսին, գրում է. քանի որ սոցիալիստական հասարակարգում վերանում է կապը աշխատանքի արդյունքների և եկամտի միջև, ապա անհատը միշտ ստիպված կլինի աշխատել այն տպավորությամբ, թե իր ուսերին չափից ավելի մեծ բեռ է դրված և այդ զգացումը նրա մեջ կխեղդի աշխատանքի հաճույքը, ստեղծագործության ձգտումը։

Սոցիալիստական աշխատանքի այդպիսի քամահրումն իրականության իսկական խեղաթյուրում է։ Բուրժուական կարգերի ջատագովները չեն կարող, կամ չեն ուզում հասկանալ այն իրողությունը, որ սոցիալիզմի պայմաններում սերն աշխատանքի նկատմամբ բխում է հենց այդ հասարակության էությունից, նրա ներքին բնույթից, որ աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքը ոչ այլ ինչ է, եթե ոչ մարդկանց գիտակցության մեջ սոցիալ-տնտեսական այն վիթխարի վերափոխումների արտացոլում, որոնք տեղի են ունեցել և տեղի են ունենում կոմունիստական շինարարության ողջ ընթացքում։

Սովետական հասարակարգի մարդը չի կարող չսիրել աշխատանքը, որովհետև հենց աշխատանքն է հնարավորություն տալիս մարդուն հաստատելու իրեն որպես անհատ, չխոսելով արդեն այն մասին, որ աշխատանքն է նրա բարօրության կենսաղբյուրը։ Ահա թե ինչու Մ. Գորկին անսահման ոգևորությամբ է գրել աշխատանքի մասին. «Բուն աշխատանքում և միայն աշխատանքում է մարդը մեծ, և որքան ջերմ է նրա սերն առ աշխատանքը, այնքան ավելի վեհ է նա, այնքան ավելի արդյունավետ, գեղեցիկ է նրա գործունեությունը»։

Արդեն կոմունիզմի առաջին փուլում սովետական շատ մարդիկ ճաշակեցին և ապրեցին աշխատանքի երջանկությունն ու հաճույքը։ Դրա ամենավառ

վկայությունը մասսաների սեփական ստեղծագործության՝ սոցիալիստական մրցության հզոր վերելքն է մեր երկրում, որը փառահեղ ուղի է անցել՝ առաջին կոմունիստական շաբաթօրյակներից մինչև ժամանակակից կոմունիստական աշխատանքի շարժումը։ Սոցիալիստական մրցությունն աշխատավորների դաստիարակության, աշխատանքի և հանրային սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ձևավորման հիանալի դպրոց է։ Մասսաների սեփական ստեղծագործությունը և այդ ստեղծագործության պրոցեսում նոր մարդու դաստիարակությունը մեկ միասնական պրոցեսի տարբեր կողմերն են, որոնք գտնվում են դիալեկտիկական փոխներգործության մեջ և անբաժանելի են։

Հայտնի է, թե Վ. Ի. Լենինը ինչպիսի հսկայական նշանակություն էր տալիս 1919 թվականին բանվորների անմիջական նախաձեռնությամբ ծնունդ առած առաջին կոմունիստական շաբաթօրյակներին։ Նա հանճարեղ կերպով դրանց մեջ տեսավ աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքի ծիլերը, բանվորների գիտակից և կամավոր ձգտումը՝ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, աշխատանքային նոր կարգապահության անցնելու համար։ Կոմունիստական շաբաթօրյակները, նշում էր Լենինը, առանձնապես գնահատելի են որպես կապիտալիզմից կոմունիզմին անցնելու առաջին քայլեր, որպես կոմունիզմի փաստական սկիզբ։ Դրանք միաժամանակ անողոք մարտեր էին մարդկանց գիտակցության մեջ անցյալի անիծյալ մնացուկների դեմ։ «Դա,— գրում է Լենինը,— սկիզբն է մի հեղաշրջման, որն ավելի դժվար, ավելի էական, ավելի արմատական, ավելի վճռական է, քան բուրժուազիայի տապալումը, որովհետև այդ նշանակում է հաղթահարել սեփական անշարժությունը, սանձարձակությունը, մանր բուրժուական էգոիզմը,— այդ սովորությունները, որոնք անիծյալ կապիտալիզմը ժառանգություն է թողել բանվորին և գյուղացուն» (Երկեր, հ. 29, էջ 503—504)։

Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակումը անհնարին է առանց ուսուցման և արտադրության սերտ կապի։ Բնութագրելով կոմունիստական հասարակարգը, նա գրում էր, որ ապագա հասարակության իդեալը չի կարելի պատկերացնել «առանց ուսուցումը միացնելու երիտասարդ սերնդի արտադրողական աշխատանքի հետ. ո՛չ ուսուցումն ու կրթությունն առանց արտադրողական աշխատանքի, ո՛չ արտադրողական աշխատանքն առանց զուգահեռ ուսուցման ու կրթության չեն կարող դրվել այն բարձրության վրա, որ պահանջում են տեխնիկայի արդի մակարդակը և գիտական իմացության վիճակը» (Երկեր, հ. 2, էջ 602—603)։

Լենինյան այդ ցուցումն առավել ակտուալ է մեր օրերում, երբ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման հետ սերտորեն առնչված տեխնիկայի բուռն պրոգրեսը ավելի մեծ պահանջներ է առաջադրում արտադրության կուլտուրայի, աշխատողների մասնագիտական պատրաստվածության և ընդհանուր կրթության նկատմամբ։ Ժամանակակից տեխնիկան ժողովրդական տնտեսության տառացիորեն բոլոր բնագավառներում բանվորից պահանջում է խոր և բազմակողմանի գիտելիքներ, լայն մտահորիզոն։ Այստեղից էլ մեր պարտիայի ծրագրային պահանջը՝ կրթության սիստեմը կառուցել այնպես, որպեսզի աճող սերնդի ուսուցումն ու դաստիարակությունը սերտորեն շաղկապված լինեն կյանքի, արտադրողական աշխատանքի հետ, իսկ չափահաս բնակչությունը



կարողանա արտադրության ոլորտում կատարած աշխատանքը զուգորդել ուսումն ու կրթությունը շարունակելու հետ։

Նման սկզբունքների վրա հենված կրթությունը նպաստում է ո՛չ միայն սոցիալական ամենակարևոր պրոբլեմներից մեկի՝ մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերության վերացմանը, այլև հասարակության համակողմանիորեն զարգացած և բազմակողմանի պատրաստված անդամների ուսուցմանը և դաստիարակությանը, մարդիկ, որոնք, Լենինի խոսքերով ասած՝ կարողանում են ամեն ինչ անել։

Անհատի բազմակողմանի զարգացման պրոբլեմում սկզբունքային նորն այն է, որ կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում խոսքը վերաբերում է ոչ թե առանձին անձերի, կամ արտոնյալ մարդկանց, այլ ամբողջ բնակչության, աշխատանքի մարդկանց, նյութական և հոգևոր արժեքներ ստեղծողների բազմակողմանի զարգացման մասին։ Իհարկե, այստեղ լենինյան խոսքերը, թե «կարողանում են ամեն ինչ անել», չպետք է հասկանալ տառացիորեն։ Այդ ամենից առաջ նշանակում է, որ կոմունիզմի մարդը հավերժորեն գամված չէ մեկ մասնագիտության, նա ազատ է մասնագիտության ընտրության հարցում, ելնելով, իհարկե, իր ընդունակություններից և հասարակության շահերից։

Հարցի հենց այս կողմն էլ շեշտված է ՍՄԿՊ Ծրագրում։ Հասարակության ամեն մի անդամի, ասված է այնտեղ, երաշխավորվում է զբաղմունքի տեսակի և մասնագիտության հավասար ու ազատ ընտրություն։ Նյութական արտադրության համար հատկացված ժամանակի կրճատման հետ մեկտեղ արտադրության, գիտության, տեխնիկայի, գրականության և արվեստի բնագավառներում ընդլայնվում են ընդունակությունները, ձիրքը, տաղանդը զարգացնելու հնարավորությունները։

Կոմունիստական շինարարության ներկա էտապում առաջնակարգ նշանակություն է ստանում ըդհանուր նպատակին ուղղված ամեն կարգի աշխատանքի նկատմամբ սեր մշակելը։ Կոմունիստական աշխատանքի շարժման արժանիքներից մեկն էլ այն է, որ նրանում նոր ուժով է արտահայտվում սերը հասարակությանն անհրաժեշտ և օգտակար ամեն կարգի աշխատանքի նկատմամբ։ Այս հանգամանքը թելադրված է սոցիալիստական հասարակության, կոմունիզմի կառուցման ընդհանուր շահերով, շահեր, որոնք պահանջում են անձնականը ենթարկել հասարակականին։ Այդ նշանակում է, որ մարդկային պատմության մեջ առաջին անգամ երևան է գալիս աշխատանքի որակապես նոր մոտիվը, գիտակցականությունն աշխատանքում, և դրա հիման վրա սկսում են բազմակողմանիորեն զարգանալ նրա բարոյական ազդակները՝ ամբողջ հասարակության համար կամավոր աշխատելու անհրաժեշտության գիտակցումը։

Աշխատանքում կոմունիստական գաղափարայնությունը հենվում է ամենից առաջ մարդու հասարակական պարտքի, ժողովրդի առջև ունեցած պարտականության, իր աշխատանքի հասարակական նշանակության խոր գիտակցման վրա։

Հակառակ առ ու ծախի աշխարհի, որտեղ մարդը գնահատվում է միայն ունեցած կապիտալի չափով, որտեղ ամեն բան՝ սեր, առողջություն, տաղանդ, ազատություն, կին, պատիվ առնում ու ծախում են փողով, սոցիալիզմը փառաբանում է աշխատանքը, աշխատանքի մարդուն։ Մարդը գեղեցիկ ու փառա-

վոր է աշխատանքով, իր գործերով։ Աշխատանքում և միայն աշխատանքում են դրսևորվում մարդու ունակությունները, նրա գեղեցկությունը, նրա տաղանդն ու հանճարը, աշխատանքի միջոցով է նա դառնում հասարակության մեջ որոշակի դիրք ունեցող անհատ։ Աշխատանքն անհատի արժանիքների և ծառայությունների գնահատման միակ չափանիշն է։ Աշխատանքի մեջ է մարդկության անմահությունը։

Կոմունիզմ կառուցողի աշխատանքային դաստիարակության կարևոր կողմերից, նրա բարոյական հիմնական սկզբունքներից մեկն էլ կոլեկտիվիզմը և ընկերական փոխօգնությունն է,— մեկը՝ բոլորի, բոլորը՝ մեկի համար։ Բարոյական այս շատ կարևոր սկզբունքն արմատավորվում է ընդհանուր նպատակին ուղղված կոլեկտիվ աշխատանքում յուրաքանչյուրի ակտիվ մասնակցության պայմաններում։ Մարդու վրա աշխատանքի բարոյական ներգործության տեսանկյունից վճռական նշանակություն ունի այն, թե ինչպիսի հարաբերություններ գոյություն ունեն կոլեկտիվի անդամների միջև։

Կոլեկտիվիզմի արմատները գնում են դարերի խորքը։ Հասարակ ժողովուրդը նույնիսկ հեքիաթներ է հյուսել, որոնք բացահայտում են կոլեկտիվիզմի ուժը։ Հասկանալի է, իհարկե, որ մարդն ապրում է մարդկանց մեջ, հասարակության մեջ։ Այլ կերպ նա չի էլ կարող ապրել, որովհետև մեն մենակ ի վիճակի չէ պայքարել բնության ուժերի դեմ։ Պատմությանը, սակայն, հայտնի են հասարակական կազմակերպության երկու տիպ՝ մեկը հիմնված արտադրության միջոցների մասնավոր, իսկ մյուսը՝ հանրային սեփականության վրա։ Արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը, նշում էր Լենինը, բաժանում է մարդկանց, խեղաթյուրում ինչպես կոլեկտիվիզմի, այնպես էլ համամարդկային բարոյական մյուս նորմերը։ Այնպիսի պայմաններում, երբ մղվում է «բոլորի կռիվը բոլորի դեմ», մարդը չի կարող իրեն չզգալ միայնակ ու անօգնական։ Այստեղ թագավորում են ոչ թե բարեկամության ու փոխադարձ օգնության սկզբունքը, այլ էգոիզմն ու անհատապաշտությունը։ Աշխատանքը կորցնելու վախ, սարսափ վաղվա օրվա նկատմամբ, միջուկային կատաստրոֆի «անխուսափելիության» մասին միլիտարիստական պրոպագանդայի թույնով վարակված զգացում, հիվանդագին մենակության և տեխնիկական պրոգրեսի առջև իր ոչնչության զգացում՝ ահա ժամանակակից «ազատ աշխարհի» անհատի աշխարհազգացողությունը։

Անհատի բարոյական դաստիարակության իսկական դպրոցը հանրային սեփականության վրա հիմնված կոլեկտիվ աշխատանքն է։ Եթե տվյալ դեպքում աշխատանքը հանդես է գալիս որպես դաստիարակության հասարակա:տնտեսական հիմք, ապա աշխատանքային կոլեկտիվը՝ որպես իսկական դաստիարակ։ Սոցիալիզմը պրակտիկայում ապացուցեց, որ մասսաները բաղկացած են խորապես ինդիվիդուալ, ինքնատիպ անհատներից։ Նա միաժամանակ ակնհայտ դարձրեց այն փաստը, որ ժամանակակից պայմաններում կոլեկտիվիզմը ո՛չ միայն նշված մեծ նպատակին հասնելու համար մարդկանց միավորման լավագույն միջոց է, այլև յուրաքանչյուր անհատի բազմակողմանի զարգացման իրական բազա։

Արդյունաբերական ձեռնարկություններում, հանքահորերում և շինարարական հրապարակներում, սոցիալիստական դաշտերում և գիտական լաբորատորիաներում, ամենուրեք կատարվող կոլեկտիվ աշխատանքում կոփվում է նոր մարդը, կազմավորվում են որոշակի հարաբերություններ ընկերների և



հասարակության նկատմամբ, ձևավորվում է կոլեկտիվի անդամների առջև իր պարտավորությունների ճիշտ գիտակցումը, համատեղ աշխատանքի կարևորության ըմբռնումը։

Կոլեկտիվիզմը նախատեսում է ամենից առաջ աշխատանքի պրոցեսում մարդկանց միջև համագործակցության և փոխադարձ օգնության բազմակողմանի զարգացած հարաբերություններ։ Արդեն այսօր մենք ականատես ենք շատ ու շատ փաստերի, երբ գործարանների, ֆաբրիկաների, կառույցների, կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատավորներն ընկերների հետ սիրով բաժանում են իրենց գիտելիքներն ու փորձը, բացահայտում են իրենց, այսպես ասած, «գաղտնիքները», այդ համարելով իրենց բարոյական պարտքն ու պարտականությունը։ Կոլեկտիվ աշխատանքում, ընկերական, բարեկամական օգնությունը հարստացնում է անհատին, նրա հոգում ծնում կոլեկտիվ աշխատանքի արդյունքների նկատմամբ օրինական հպարտության զգացում։ Տիեզերքի նվաճումը, հորդահոս գետերի սանձումը, վիթխարի էլեկտրակայանների կառուցումը և բազմաթիվ այլ սխրագործություններ կմնան որպես սոցիալիզմի առաջին երկրի ժողովուրդների կոլեկտիվ իմաստության, կոլեկտիվ աշխատանքի հիասքանչ հուշարձաններ։

Այս ամենից հետո պարզ է, թե որքան սնանկ են մարդկային բնավորության անփոփոխելիության վերաբերյալ բուրժուական ռեակցիոն գաղափարախոսների դատողությունները։ Կույր պետք է լինել միայն, չտեսնելու համար այն վիթխարի տեղաշարժերը, որ կատարվել և կատարվում են մեր երկրում նոր մարդու բարոյական դաստիարակության ուղղությամբ։ Այս հարցում նրանց հակահարված են տալիս նաև հենց իրենց աշխարհի պրոգրեսիվ մտածողները։

Ահա թե ինչ է գրում ամերիկյան հրապարակախոս Ալբերտ Կանը, որը բազմիցս այցելել է Սովետական Միություն. «Այսօր այն հարցը, թե կարելի՞ է արդյոք փոխել մարդու բնավորությունը, արդեն դիսկուսիա առաջ չի բերում։ Կյանքն ինքն է տվել դրա անվիճելի պատասխանը։ Որովհետև նա, ով աչքեր ունի նայելու համար, պարզ ու որոշակի տեսնում է, որ այն, ինչ երկար ժամանակ անվանվում էր «մարդու բնավորություն», Սովետական Միությունում փոփոխվել է։ Սովետական մարդկանց ճնշող մեծամասնությունը, որոնց հետ ես հանդիպել եմ, նոր հասարակության ներկայացուցիչներ են։ Ինչպիսի՞ գծերով են օժտված այդ մարդիկ։ Սովետական մարդիկ բարի են, բայց և ուժեղ։ Նրանք վստահ են, բայց և համեստ։ Նրանց հատուկ է խոր հայրենասիրությունը, բայց և միաժամանակ նրանք եղբայրական վերաբերմունքի ոգով են տոգորված մարդկանց նկատմամբ։ Նրանք ագահաբար ձգտում են գիտելիքներ ձեռք բերել, խորապես հարգում են գիտությունը և աշխատանքը համարում են շնորհակալ գործ»։



# ԲՈՒՅՍԵՐԻ ԱՆՀԱՏԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՅԻ ԱՌԹԻՎ

Վ. ՂԱԶԱՐՅԱՆ

Բիոլոգիական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր

Զարգացումը հակադրությունների
պայքար է

**Վ. Ի. ԼԵՆԻՆ**

*Չնայած բազմաթիվ հետազոտությունների, մինչև օրս էլ չունենք ընդհանուր ճանաչում գտած և ամբողջական պատկերացում բույսերի օնտոգենեզի (անհատական զարգացման), ներքին գլխավոր օրինաչափությունների մասին, որոնք վեր հանեին հիմնական կենսաձևերի անհատական զարգացման պրոցեսների էությունը։ Դրա պատճառը, թերևս, այն է, որ բույսերի անհատական զարգացումը համեմատաբար դժվարությամբ է ենթարկվում վերլուծման, մանավանդ, որ նրա բաղադրիչ պրոցեսներից շատերի էությունը մինչև այժմ էլ դուրս է մնում մեր իմացության տեսադաշտից։*

*Օնտոգենետիկ զարգացման առանձնահատկությունները մեզ թելադրում են նրա բնույթի պարզաբանման հանդեպ ցուցաբերել բոլորովին ուրույն մոտեցում, ի տարբերություն այն մեթոդների, որոնք մեծ հաջողությամբ օգտագործվում են նրա մասնակի պրոցեսների ուսումնասիրության ժամանակ։ Եթե առաջին դեպքում մենք գործ ունենք բույսերի մեջ ընթացող իրար հետ շաղկապված, փոխադարձաբար պայմանավորված, իրենց բնույթով հակասական ու միասնական ֆիզիոլոգիական և բիոքիմիական փոփոխությունների մի ամբողջական շղթայի հետ, ապա վերջին դեպքում՝ նրա օղակներից միայն մեկի հետ։*

*Բույսերի օնտոգենետիկ զարգացման կենսական պրոցեսների ներքին կապի, փոխադարձ պայմանավորվածության ու հակասականության, քանակական փոփոխությունները որակականի անցնելու էությունն ըմբռնելու համար ելակետ է հանդիսանում լենինյան հանճարեղ դրույթը զարգացման, որպես «հակադրությունների պայքարի» մասին։ Այս դրույթի կիրառումը հնարավորություն է տալիս պարզաբանելու օնտոգենեզի հիմնական պրոցեսների՝ զարգացման, ծերացման, երիտասարդացման, ինչպես և անհատական զարգացման ցիկլում տեղի ունեցող քանակական ու որակական փոփոխությունների էությունը։*



## 1. ԲՈՒՅՍԵՐԻ ԱՆՀԱՏԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՈՐՊԵՍ ԿԵՆՍԱԿԱՆ ՀԱԿԱԴԻՐ ՊՐՈՑԵՍՆԵՐԻ ՔԱՆԱԿԱԿԱՆ ԱՃ ԵՎ ՈՒԺԵՂԱՑՈՒՄ

*Ամեն մի օրգանիզմ, լինի դա բուսական, թե կենդանական, իր շրջապատի իրերից ու առարկաներից տարբերվում է ասիմիլյացիայի և դիսիմիլյացիայի ունակությամբ։ Ասիմիլյացիան՝ օրգանիզմի կողմից նյութերի կամ արտաքին պայմանների օգտագործումը և իր նմանի վերածելու պրոցեսն է։ Դիսիմիլյացիան, հակառակ ասիմիլյացիայի, օրգանական նյութերի, այդ թվում և սպիտակուցների քայքայումն է, որի ժամանակ անջատված էներգիան օգտագործվում է օրգանիզմի կենսական պրոցեսներում։ Մյուս կողմից, այդ էներգիայի շնորհիվ սպիտակուցները պահպանում են իրենց ֆունկցիային համապատասխանող բարդ կառուցվածքը։ Այս երկու պրոցեսներն իրարով պայմանավորված և հակասական են։ Ասիմիլյացիայի և դիսիմիլյացիայի՝ օրգանիզմի համար ընդհանուր հակասության բազայի վրա հաջորդաբար առաջանում և սրվում են մի շարք այլ հակասություններ, որոնք միմյանցից տարբերվում են իրենց նշանակությամբ և դրսևորման ժամանակաշրջանով։*

*Սերմի ծլումը, ինչպես հայտնի է, սկսվում է նրա մեջ եղած պաշարանյութերի քայքայումով՝ հիդրոլիզով, որի հետևանքով չլուծվող, մեծ մոլեկուլներ ունեցող օրգանական միացությունները վեր են ածվում ջրում տարրալուծվող նյութերի, որոնք տեղափոխվելով աճման կոնի բջիջները, ասիմիլյացվում են և վերածվում նոր տիպի նյութերի, հիմնականում՝ սպիտակուցների։ Դրա շնորհիվ այդ բջիջներն աճում և բազմանում են, կազմավորելով ցողուն, արմատներ և տերևներ։ Ինչպես տեսնում ենք, սերմի ծլումից սկսած սկիզբ է դրվում երկու հակադիր պրոցեսների՝ հիդրոլիզի և սինթեզի, որոնք հետագայում դառնում են ամեն մի օրգանի, հյուսվածքի ու բջջի ուղեկիցները։ Բույսի անհատական զարգացման ընթացքում նրանք հանդես են գալիս որպես առաջին հակասություն։*

*Նման պրոցեսը, մյուս կողմից, տեղի է տալիս սերմի շաքիլների կամ էնդոսպերմի (պաշարող հյուսվածքների) բջիջների մահացմանը և նրանց փոխարեն նոր օրգանների առաջացմանը։ Հետևաբար ծլող սերմի մեջ դրսևորվում է մի այլ կարգի՝ մահացման և աճման պրոցեսների հակասություն, որը հետագայում նույնպես դառնում է բոլոր օրգանների և հյուսվածքների կենսագործունեության ուղեկիցը, բույսի կյանքի վերջին շրջանում սրվելով ու վերածվելով գլխավոր հակասության։ Ինչպես մյուս բոլոր, այնպես էլ նշված հակասությունների կողմերն իրենց բնույթով միասնական և հակադիր են՝ առանց հիդրոլիզի չի կարող տեղի ունենալ սինթեզ, առանց սինթեզի՝ հիդրոլիզ, ինչպես և առանց մահացման՝ աճ։*

*Ձևավորված առաջին տերևներն ու արմատները իրենց կենսագործունեության պրոցեսներում անկախ չեն։ Նրանց ֆունկցիաները փոխադարձաբար պայմանավորված են։ Արմատները, մատակարարելով ջուր, հանքային էլեմենտներ և օրգանական նյութեր, նպաստում են տերևների աճմանն ու ֆոտոսինթեզին։ Վերջինս բուսական օրգանիզմներում տեղի ունեցող ամենահիմնական և յուրահատուկ պրոցեսն է, որի ժամանակ տերևը, կլանելով արևի էներգիան, այն օգտագործում է հողից բարձրացող ջրի և օդից ստացվող ածխաթթու գազի քիմիական միացման ու շաքարների սինթեզման պրոցեսներում։ Շաքարների մի մասը շարժվելով դեպի արմատները, որպես էներ-*

գիայի աղբյուր, ծախսվում է նրանց աճման ու հողից կլանված հանքային նյութերի վերափոխման վրա։

Տերևների և արմատների առաջացումը, որով սկսվում է բույսի ամենաակտիվ կենսագործունեությունն ու զարգացումը, իր հերթին տեղիք է տալիս բազմաթիվ այլ կարգի հակասությունների դրսևորման և նրանց սրման։ Դրանցից մեկը սպիտակուցային նյութերի քայքայման և վերականգնման պրոցեսների հակասությունն է։

Սպիտակուցային նյութերի այս հատկությունը դեռևս 66 տարի առաջ հանճարեղ կերպով կանխագուշակել է Ֆրիդրիխ Էնգելսը։ «Կյանքը դա սպիտակուցային մարմինների գոյության ձևն է,— գրում է Ֆ. Էնգելսը,— և գոյության այդ ձևը էապես կայանում է այդ մարմինների քիմիական բաղադրիչ մասերի անընդհատ ինքնավերականգնման մեջ» (Անտի-Դյուրինգ, 1936 թ. էջ 108)։

Բիոլոգիական գիտության հարուստ պատմությունը, սկսած Էնգելսի ժամանակներից, փաստորեն ընթացել է այս դրույթի հաստատման ուղղությամբ։ Սակայն միայն վերջին երկու տասնամյակների նվաճումները հնարավորություն տվեցին փորձնական եղանակով ապացուցելու սպիտակուցների քայքայման և վերականգնման ունակությունը և դրանով իսկ լրիվ գնահատելու Էնգելսի կանխատեսության գիտական արժեքը։

Սպիտակուցային մոլեկուլների ինքնավերականգնմանը և քայքայմանը զուգահեռ նույն տիպի փոփոխություններ են տեղի ունենում քլորոֆիլի հետ։ Վերջինս երկրի վրա միակ սպիտակուցա-պիգմենտային կոմպլեքսն է, որն ընդունակ է արևի էներգիայի ներգործությամբ ջուրը քիմիապես կապել ածխաթթու գազի հետ, սինթեզելով օրգանական նյութ։ Ռադիոակտիվ իզոտոպների կիրառմամբ ցույց է տրվել, որ տերևն իր այդ կարևոր ֆունկցիան, որով ապահովում է կյանքի գոյությունը երկրի վրա, կատարում է այնպիսի մեծ ինտենսիվությամբ, ինչպիսի ակտիվությամբ վերականգնվում են նրա մոլեկուլները։ Որքան ուժեղ է արտահայտվում քայքայման ու վերականգնման պրոցեսների հակասությունը, այնքան ինտենսիվ է ընթանում ֆոտոսինթեզը։ Ինչպես հասարակության կենսամակարդակը բնորոշվում է արտադրվող և սպառվող արդյունքների քանակով, այնպես էլ ֆոտոսինթեզի ինտենսիվությունը բնորոշվում է քլորոֆիլի քայքայման և վերկանգնման պրոցեսների ակտիվությամբ։

Բույսի ներքին կենսական պրոցեսների հակասությունները, որոնք պայմանավորված են տերևների ու արմատների կենսագործունեությամբ, չեն սահմանափակվում միայն քլորոֆիլի քայքայման ու վերականգնման պրոցեսներով։ Կանաչ տերևների ու արմատների կենսագործունեության շնորհիվ հանդես է գալիս աճման և ջրափոխանակության հակադրություններից բաղկացած մի այլ հակասություն։ Աճման ընթացքում բույսը մի քանի տասնյակ անգամ ավելի շատ ջուր է կլանում, քան այն օգտագործում իր սինթետիկ պրոցեսներում։ Հաշվված է, որ յուրաքանչյուր լիտր կլանված ջրից, աճման պրոցեսներում օգտագործվում է միայն մի քանի գրամ։ Մյուս հսկայական բաժինը գոլորշիանում է։ Այդ պրոցեսը, որը կոչվում է տրանսպիրացիա, չափազանց ուժեղ է դրսևորվում շոգ և չոր վայրերում։ Տրանսպիրացիայի շնորհիվ մի կողմից բույսն ազատվում է իր գոյության պահպանման համար վնասակար ջերմությունից, մյուս կողմից՝ արմատների միջոցով հողից կորզում է անհրաժեշտ հանքային նյութեր, որոնք ջրի հետ միասին բարձրանում և սնում են տերևները։



Բույսերի աճման և տերևների մեծացման հետ մեկտեղ պրոգրեսիվ կերպով ուժեղանում է ջրի տրանսպիրացիան։ Սակայն բնությունը տարբեր հողակլիմայական պայմաններում հավասարապես հարուստ չէ ջրով։ Նույնիսկ եթե բույսն աճում է ջրառատ միջավայրում, այնուամենայնիվ վեգետատիվ հզորության հասած վիճակում նա ընդունակ չէ տերևներին առատությամբ ջուր մատակարարել։ Դրա պատճառը հիմնականում արմատների և տերևների միջև ընկած տարածության մեծացումն է, որի հետևանքով բույսի աճման որոշ շրջանից սկսվում է աճման և ջրամատակարարման հակադրություններից կազմված հակասությունը։ Չէ՛ որ չոր կլիմայի պայմաններում բույսերի գաճաճ լինելը հիմնականում պայմանավորված է այս հակասության սրումով, մինչդեռ տրոպիկական գոտում, հողի և օդի խոնավության առատությամբ այս հակասությունը զգալի չափով մեղմանում է, և դրա շնորհիվ բույսերը հասնում են հսկայական մեծության։

Բույսի աճը, իր հերթին, հարուցում է նույն կարգի մի այլ հակասություն։ Քանի դեռ բույսն իր չափերով փոքր է և միևնույն օրգանները՝ տերևներն ու արմատները իրար մոտ են գտնվում, նրանց միջև նյութափոխանակությունը ընթանում է մեծ ինտենսիվությամբ։ Սակայն աճմանը զուգընթաց մի կողմից բազմապատկվում է բեռնային օրգանների թիվը, մյուս կողմից՝ նրանք իրարից աստիճանաբար հեռանում են և զգալիորեն նվազում է տերևների ու արմատների ֆունկցիոնալ կապը։ Դրա հետևանքով էլ թուլանում է նրանց միջև տեղի ունեցող նյութափոխանակությունը, որը և ազդում է աճման վրա։ Այս մեկ անգամ ևս գալիս է հաստատելու Վ. Ի. Լենինի խոսքերն այն մասին, որ «մարքսիստական դիալեկտիկայի հիմնական դրույթն այն է, որ բնության ու հասարակության մեջ բոլոր սահմանները պայմանական ու շարժուն են, որ չկա և ոչ մի երևույթ, որը որոշ պայմաններում չկարողանար իրեն հակադիր դրության վերածվել» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 22, էջ 415)։ Տվյալ դեպքում տերևների և արմատների նյութափոխանակության թուլացումը կասեցնում է բույսի աճը։

Բույսերը որոշակի աճից ու զարգացումից հետո անցնում են ծաղկման և պտղակալման, որը տեղիք է տալիս մի նոր՝ աճման և պտղակալման հակասության։ Դեռ շատ վաղուց նկատված է, որ պտղակալումը թուլացնում է բույսերի վեգետատիվ աճը, և ընդհակառակը՝ ուժեղ աճի դեպքում արգելակվում է պտղակալումը։ Այս երկու անհրաժեշտ կենսական պրոցեսներն իրենց բնույթով միասնական և հակադիր են։ Միասնականությունն արտահայտվում է նրանով, որ առանց աճման՝ վեգետատիվ օրգանների առաջացման չէին կարող կազմավորվել ծաղիկներ ու սերմեր, իսկ առանց սերմերի անհնար է և կյանքի անընդհատությունը, հետևաբար և աճը երկրի վրա։ Այս հակասությունը տարբեր կերպ է դրսևորվում միամյա և բազմամյա բույսերի մոտ։ Միամյա բույսերի պտղակալումն այն աստիճան ուժեղ է, որ կյանքի առաջին իսկ տարում բացառում է աճը և վրա են հասնում բույսի ծերացումն ու մահը, իսկ բազմամյա բույսերի մոտ այս հակասությունը զարգանում է աստիճանաբար։ Սկզբում բույսի վրա կազմավորվում են սահմանափակ թվով ծաղիկներ ու պտուղներ, հետագայում նրանց թիվն ու մասսան շատանում է ու դրա փոխարեն թուլանում է աճը։ Մի շարք պտղատու կուլտուրաների բերքատվու-

թյան պարբերականությունը՝ մեկ տարի պտղակալումը, իսկ հաջորդ տարին բերքի բացառումը, կապված է հենց այս հակասության հետ։

Բույսերի զարգացման վաղ շրջաններում մենք առերևույթ ականատես ենք միայն նոր օրգանների առաջացման, առանց ծերացման արտաքին նշանների դրսևորման։ Սակայն աճման և ճյուղերի մեծացման ու նրանց թվի ավելացման հետևանքով թուլանում է նյութափոխանակությունը արմատների և տերևների միջև և սկսվում է, այսպես կոչված «պայքարը» միանման օրգանների միջև՝ ջրի, հանքային և օրգանական նյութերի համար։ Դրա հետ միասին ուժեղանում է զարգացած օրգանների ճնշող ազդեցությունն ավելի թույլ աճող մասերի վրա, որի հետևանքով վերջիններս աստիճանաբար ծերանում, մահանում և չորանում են։ Այս էլ մետամեր օրգանների և ցողունային հյուսվածքների մահացման ու վերականգնման հակասությունն է։

Ծառերի մոտ ճյուղերի մահացումն սկզբում ընթանում է կենտրոնախույս ուղղությամբ, արմատավզիկից վեր, որի հետևանքով ծառի բունը և ծեր ճյուղերի ցողուններն աստիճանաբար մերկանում են։ Հետագայում մահացումն ընդունում է կենտրոնաձիգ ուղղություն։ Այս դեպքում մահանում է բույսի գագաթը, հետո՝ հասակով ծեր ճյուղերը և, վերջապես՝ ամբողջ բունը։ Դրա փոխարեն առաջանում են բնային կամ արմատային շիվեր։ Նույն կարգի պրոցես է սկսվում ցողունային հյուսվածքների մոտ՝ ներսի տարեկան օղակներն աստիճանաբար մահանում են, իսկ դրսից առաջանում են նորերը։

Օնտոգենեզի ընթացքում հաջորդաբար ծագող ու սրվող այս հակասությունների թվարկումից միաժամանակ պարզվում է, որ միևնույն պրոցեսը կարող է հանդիսանալ մի քանի հակասությունների կողմերից մեկը։ Այսպես, օրինակ, աճման և մահացման, աճման և բերքատվության, աճման և բեռնային օրգանների միջև նյութափոխանակության հակասությունների մշտական կողմերից մեկը աճն է։ Այս հանգամանքը ցույց է տալիս, որ բույսերի մեջ գործող հակասությունները գտնվում են սերտ կապակցության և փոխադարձ պայմանավորվածության մեջ։

Վերը թվարկած փաստերը հանգեցնում են նաև այն եզրակացության, որ բույսերի անհատական զարգացումը իրականացվում է, առաջին հերթին, կենսական, միանման պրոցեսների հակասությունների քանակական ավելացման ճանապարհով։

## 2. ԲՈՒՅՍԵՐԻ ԱՆՀԱՏԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՈՐՊԵՍ ՆԵՐՔԻՆ ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍՐՈՒՄ ԵՎ ԳԼԽԱՎՈՐ ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԵՐԹԱՓՈԽՈՒԹՅՈՒՆ

Բույսերի անհատական զարգացման ամեն մի հակասություն, ինչպես տեսանք, բաղկացած է երկու հակադիր պրոցեսներից, որոնց ուժեղացումն ընթանում է անհավասարաչափ։ Հակադիր պրոցեսներից մեկը, մյուսի համեմատությամբ, ուժեղանում է ավելի դանդաղ։ Դրա հետևանքով էլ օնտոգենեզի որոշ էտապում հակասության երկու կողմերը ժամանակավորապես հավասարակշռվում են, այնուհետև նախկին թույլ կողմն իր ակտիվությամբ գերակշռում է մյուսին։ Այս եղանակով էլ լուծվում է տվյալ հակասությունը։

Հակասությունների ծագման, զարգացման, սրման և լուծման այս օրինաչափությունը պարզ պատկերացնելու համար կարելի է բերել բույսերի մետամեր օրգանների և հյուսվածքների մահացման ու աճման պրոցեսների հակասության օրինակը, որը պատկերված է հետևյալ նկարում։




Հակասության մի կողմը աճն է, որը ներկայացված է էլիպսների չներկված մասով և նշանակված է «ա» տառով։ Մյուս կողմը, մահացումն է՝ էլիպսների սև ներկված կեսերը, նշանակված «մ» տառով։ Բույսերի զարգացման վաղ շրջանում (I) աճման պրոցեսներն զգալի չափով գերակշռում են մահացմանը։ Հետագայում, բույսի վեգետատիվ մասսայի մեծացմանը զուգահեռ, ուժեղանում է թե՛ մեկ և թե մյուս կողմը, սակայն այն տարբերությամբ, որ մահացումն ավելի պրոգրեսիվ բնույթ է կրում։ Տվյալ հակասության զարգացման երկրորդ շրջանն է այս (II), որի ժամանակ բույսը հանդես է բերում մեծ կենսագործունեություն։ Դրան անմիջապես հաջորդում է հակասության երկու կողմերի ժամանակավոր հավասարակշռման ժամանակաշրջանը (III), երբ վեգետացիոն սեզոնի ընթացքում նոր առաջացող և մահացող օրգաններն ու ցողունային հյուսվածքներն իրենց ընդհանուր մասսայով մոտավորապես հավասարվում են։ Այս անցողիկ շրջանից հետո մահացման պրոցեսներն աստիճանաբար գերակշռում են աճման պրոցեսներին և հակասությունը թևակոխում է իր հաջորդ՝ սրման շրջանը (IV)։ Այս տենդենցն այն աստիճան է ուժեղանում, որ տանում է դեպի մահացման պրոցեսների պրոգրեսիվ ուժեղացում և հակասության լուծում (V)։ Ինչպես տեսնում ենք, հակասության երկու հակադիր պրոցեսների ակտիվության հավասարակշռման շրջանը ժամանակավոր էտապ է բույսի կյանքում, իսկ նրանց անհավասարությունը՝ հիմնական տենդենց։

Բույսի մեջ գործող կենսական պրոցեսների հակասությունները զարգանում, սրվում և լուծվում են միևնույն եղանակով, սակայն նրանք բոլորն էլ բույսի կյանքի բոլոր շրջաններում հավասարարժեք նշանակություն չունեն։ Այս տեսակետից անհրաժեշտ է տարբերել օնտոգենեզի այս կամ այն շրջանի բնորոշ գլխավոր հակասությունները մյուս հակասություններից։

Ծառերի անհատական զարգացման ընթացքում հաջորդաբար ծագում և մինչև գլխավոր հակասության մակարդակին են հասնում 4 հակասություններ, որոնց հերթափոխությունը օնտոգենեզին տալիս է ստադիական բնույթ։ Առաջին գլխավոր հակասությունը սերմի ֆերմենտների սինթետիկ և հիդրոլիտիկ գործունեության հակասությունն է, որով պայմանավորվում է նրա

ծլումը։ Դրա ներքին պատճառը, ինչպես արդեն նշվել է, մի կողմից սերմի պաշարանյութերի հիդրոլիզը՝ քայքայումն է, մյուս կողմից այդ քայքայված նյութերի հաշվին նորի սինթեզն է աճման կոնի բջիջներում։ Սերմի ծլումից հետո, այս գլխավոր հակասությանը զուգահեռ սկիզբ է առնում և զարգանում մի այլ հակասություն, որը դառնում է գլխավորը բույսի ինտենսիվ աճման շրջանում։ Այդ, աճման և տերևների ու արմատների միջև նյութափոխանակության հակասությունը շարունակում է զարգանալ մինչև բույսի ծաղկումը։ Պտղակալման շրջանից հետո, որպես գլխավոր՝ դրսևորվում է աճման և պտղակալման հակասությունը։ Օնտոգենեզի վերջին գլխավոր հակասությունը դա աճման և մահացման պրոցեսների հակասությունն է, որի լուծումով ավարտված է անհատական զարգացումը։

Այսպիսով, բույսերի անհատական զարգացումն ընթանում է նրանց կյանքի տարբեր շրջաններին հատուկ գլխավոր հակասությունների հերթափոխության եղանակով, որն էլ իրենից ներկայացնում է անցում մեկ որակական դրությունից այլ որակական դրության։ Այսպես, օրինակ, ցողունային մերիսթեմատիկ բջիջներից տերևի կամ ծաղկի գոյացումը նոր որակի առաջացում է։ Տերևների մեջ ջրի և ածխաթթու գազի միացումից շաքարի առաջացումը նույնպես որակական փոփոխություն է և այլն։

Երբ որևէ երևույթ ընդգրկում է բազմապիսի հակասություններ, ապա անընդհատ աճող ու զարգացող պրոցեսների մեջ տեղի ունեցող որակական փոփոխություններն անմիջականորեն առնչվում են գլխավոր հակասությունների և նրանց հերթափոխության հետ։

Գլխավոր հակասությունների հերթափոխությունը բույսերի մեջ իրականացվում է կամ նախկին գլխավոր հակասության լուծման, կամ նրա աստիճանական նվազեցման և նոր տիպի գլխավոր հակասության առաջացման եղանակով։ Օրինակ, պտղատու կուլտուրաների բերքատվության տարիներում բույսի ամբողջ կենսագործունեությունն ուղղված է հիմնականում երկու՝ աճման և պտղակալման պրոցեսների իրականացմանը։ Այս պրոցեսն սկզբում ընթանում է պտղատվության բարձրացման ճանապարհով, որի հետևանքով խիստ թուլանում է վեգետատիվ աճը, քանի որ սինթեզված օրգանական նյութերի մեծ մասը ծախսվում է բերքի կազմավորման վրա։ Այս դեպքում խիստ կրճատվում է ինչպես տերևների թիվը, այնպես էլ սինթեզվող նյութերի քանակը։ Հասկանալի է, որ այսպիսի պայմաններում բույսի գոյության համար կենսական նշանակություն ունի ոչ այնքան պտղի կամ սերմի կազմավորումը, որքան տերևների առաջացումը։ Պտղակալման կասեցմամբ լուծվում է վեգետատիվ աճման և պտղակալման հակասությունը։ Այս հակասության առկայությամբ էլ, ինչպես հայտնի է, բնորոշվում է բույսի զարգացման տվյալ շրջանի որակական վիճակը։ Լուծվող հակասության փոխարեն դրսևորվում է աճման և մահացման պրոցեսների գլխավոր հակասությունը։ Բույսերի օնտոգենեզի այս շրջանը իր նախորդից որակապես տարբերվում է ո՛չ միայն պտղակալման կասեցմամբ, այլև կենսական պրոցեսների զգալի պասսիվությամբ։

Բույսերի անհատական զարգացման այսպիսի պարզաբանումը հնարավորություն է տալիս միաժամանակ բացատրելու քանակական փոփոխություններից որակականին անցնելու էությունը։ Ինչպես պատկերված է վերը բերված սխեմայում, ամեն մի գլխավոր հակասություն լուծվում է նրա ուժեղ



կողմի հանդեպ նախկին թույլ կողմի քանակական անվերադարձ գերակշռությամբ։ Օրինակ, երբ բույսի մահացող օրգանների և հյուսվածքների մասսան քանակապես գերակշռում է նոր առաջացող օրգանների ու հյուսվածքների մասսային, ապա վրա է հասնում մահը, որը նոր որակ է։ Այստեղից էլ բխում է, որ օնտոգենետիկ զարգացման քանակական փոփոխությունը գլխավոր հակասությունների կողմերի ուժեղացումն է, իսկ որակական փոփոխությունը՝ հակադրությունների անհավասար ուժեղացման հետևանքով տվյալ հակասության լուծումը, կամ նրա նշանակության նվազումն է նորի հանդեպ։

## 3. ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑՈՒՄԸ ՈՐՊԵՍ ՕՆՏՈԳԵՆԵԶԻՆ ԲՆՈՐՈՇ ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՎԵՐԱՑՈՒՄ

Երկրի վրա կյանքի անընդհատությունը կապված է այն բանի հետ, որ զարգացող ու ծերացող անհատներն իրենց կյանքում վերարտադրում են նոր սերունդներ, որոնք ազատ են մայրական օրգանիզմի սրված հակասություններից։ Սերմը զատվելով մայրական բույսից և ծլելով, իր անհատական կյանքում հաջորդաբար դրսևորում է այն բոլոր հակասությունները, որոնք հատուկ են եղել մայրական օրգանիզմին։ Սակայն, եթե այդ նույն ծլող սերմը մնա մայրական բույսի վրա, կմասնակցի մայրական օրգանիզմում գործող բոլոր հակասություններին և կծերանա նույն արագությամբ, ինչ մայր բույսը։ Այս բանը մենք տեսնում ենք երիտասարդ ճյուղերի մոտ։ Երբ նրանց հեռացնում ենք մայր բույսից, արմատակալեցնում ու աճեցնում ենք առանձին, ապա նա իր մեջ հաջորդաբար դրսևորում է այն բոլոր ներքին հակասությունները, որոնք հատուկ են մայր օրգանիզմին։ Մինչդեռ, երբ այդ ճյուղը շարունակում է մնալ մայրական ծառի սաղարթին, ապա նա շուտ ծերանում և չորանում է։

Այս օրինակը ցույց է տալիս, որ երիտասարդացման պրոցեսն, առաջին հերթին՝ կապված է ամբողջական բույսից նրա սերմերի կամ առանձին ինքնուրույն կյանքի ընդունակ մասերի հեռացման հետ։ Բույսից մեկուսացած մասերի այս կարևորագույն հատկության վրա հիմնված է կտրոններով բազմացնելու երկարամյա պրակտիկան։ Բույսերի այս հատկությունը կապված է նրանց մոտ սաղմնային կամ մերիսթեմատիկ բջիջների առկայության հետ, որոնք անընդհատ բաժանվելով, տալիս են, մի կողմից՝ վեգետատիվ օրգաններ, մյուս կողմից՝ սերմեր։

Սաղմնային բջիջները հիմնականում գտնվում են բողբոջներում, այսպես կոչված՝ աճման կոներում։ Նրանց գլխավոր առանձնահատկությունն այն է, որ աճման օպտիմալ պայմաններում ինտենսիվ բազմանում են՝ կազմավորելով նոր օրգաններ ու հյուսվածքներ։ Ընդ որում ուշագրավ է այն, որ այդ բջիջների մի մասը ժամանակի ընթացքում կորցնում է իր բազմացման ընդունակությունը և դառնում այս կամ այն մշտական հյուսվածքի բջիջ, որոշակի ֆունկցիայով։ Օրինակ՝ այսպիսի բջիջներից առաջանում են տերևներ, ցողունի տարբեր հյուսվածքներ՝ բնափայտ, կեղև, խցան և այլն։ Մյուս բոլոր բջիջները, որոնք մնում են աճման կոնի գագաթում, շարունակում են պահպանել իրենց սաղմնային դրությունը, ինչպես և բազմանալու ունակությունը և այդ ճանապարհով անցնում են սերնդից սերունդ։

Բուսաբուծության պրակտիկայում կիրառվում են նաև վեգետատիվ բազմացման մի շարք այլ եղանակներ, որոնց շնորհիվ բույսերը երիտասարդանում

են մասնակիորեն։ Դրանցից մեկը պատվաստումն է, որի դեպքում հեռացվում է վայրի բույսի սաղարթը և կտրված բնի վրա պատվաստվում կուլտուրական սորտի բողբոջը կամ կտրոնը։ Դրա շնորհիվ երիտասարդանում են պատվաստը և պատվաստակալը։ Պատվաստի երիտասարդացումը արտահայտվում է նրանով, որ կտրոնը կամ բողբոջը ազատվում է մայր բույսին հատուկ հակասություններից։ Պատվաստակալի երիտասարդացումը կապված է սաղարթի հեռացման հետ։ Պատվաստի շնորհիվ ստացվում է մի համեմատաբար երիտասարդ բույս, բաղկացած փոքրիկ կտրոնից և պատվաստակալի արմատային սիստեմից։ Նոր բույսի առավելությունն այն է, որ այն սկսում է աճել չափազանց մեծ էներգիայով։

Մասնակի երիտասարդացման էֆեկտ է ստացվում նաև պտղատու ծեր ծառերի կտրման ու խուզման ժամանակ։

Հեռացնելով ծեր ծառի առանցքային ճյուղերը, մարդն արհեստականորեն փոխում է արմատային սիստեմի և վերգետնյա օրգանների մասսայի փոխհարաբերությունը, ուժեղացնում է բևեռային ակտիվ օրգանների՝ տերևների ու արմատների ֆունկցիոնալ կապը, այսինքն՝ մեղմանում է նյութափոխանակության հակասությունը այդ օրգանների միջև, որի շնորհիվ ծառերը վերականգնում են իրենց նախկին աճը և բերքատվությունը։

Մշակելով երիտասարդացման այս եղանակները, մարդիկ փաստորեն ընդօրինակել են բույսերի բնական ինքնաերիտասարդացմանը։ Ծառերը հասնելով հսկա մեծության, զգալի չափով կորցնում են իրենց աճման էներգիան, որի հետևանքով մահանում և չորանում են գագաթի առանցքային ծեր ճյուղերը և, վերջապես, ամբողջ սաղարթը։ Սակայն այդ նույն ժամանակ բնի ստորին մասից ու արմատներից առաջանում են բազմաթիվ շիվեր, որոնք ցուցաբերում են ինտենսիվ աճ։ Մի շարք դիտողություններով պարզված է, որ ծառերի սաղարթի մահացմանը հաջորդում է առանցքային խոշոր արմատների չորացումը. իսկ նոր շիվերի առաջացմանը՝ նոր արմատների կազմավորումը։ Այս հատկության շնորհիվ շատ բույսեր բազմանում են արմատային շիվերով, կարճ ժամանակամիջոցում գրավելով հսկայական տարածություններ։ Սակայն դեռ վաղ շրջաններից հայտնի է, որ վեգետատիվ կամ պատվաստի եղանակով երկարամյա բազմացման ժամանակ բույսերն աստիճանաբար կորցնում են իրենց կենսունակությունն ու բերքատվությունը, կամ ենթարկվում են, այսպես կոչված, այլասերման, դուրս են գալիս գյուղատնտեսության պրակտիկայից։ Անընդհատ վեգետատիվ բազմացման բացասական կողմն այն է, որ խաչաձևման բացակայության պատճառով սերնդից սերունդ փոխանցվում են միայն մայրական հատկությունները և բույսերի ժառանգականությունը դառնում է կոնսերվատիվ։

«Կյանքը իր բոլոր մանրուքներով և աննկարագրելի բազմազանությամբ,— գրել է Ի. Վ. Միչուրինը,— աննախընթաց շարժվում է առաջ, կենդանի օրգանիզմների բոլոր արտաքին պայմանները մշտապես փոփոխվում են։ Յուրաքանչյուր օրգանիզմ հարմարվելով այդ փոփոխություններին աստիճանաբար կատարելագործվում է էվոլյուցիայի ընդհանուր ճանապարհին, իսկ այն ամենը, որ դանդաղում է այդ շարժման մեջ, անխուսափելիորեն ենթակա է մահացման և ոչնչացման» (И. В. Мичурин, Избранные сочинения, 1948, стр. 199)։ Այդ բախտին, ինչպես տեսնում ենք, առաջին հերթին, արժանանում են անընդհատ վեգետատիվ ճանապարհով բազմացող բույսերն ու սորտերը։



Այս դեպքում որպես հակասության մի կողմ հանդես է գալիս բույսի ժառանգականությունը, իսկ որպես մյուս կողմ՝ արտաքին միջավայրի փոփոխականությունը։ Երբ ուժեղանում է նրանց անհամապատասխանությունը, և ժառանգականությունը ետ է մնում այդ փոփոխություններից, ապա բույսերը կորցնում են իրենց կենսունակությունը, այլասերվում և դուրս են մղվում էվոլյուցիայի ընդհանուր ուղուց։

Բույսերի անհատական զարգացման ներքին հիմնական օրինաչափությունների ճիշտ ըմբռնումն ունի ոչ միայն տեսական, այլև գործնական հսկայական նշանակություն։ Այն հնարավորություն է տալիս ավելի արդյունավետ ղեկավարելու բույսերի աճը, զարգացումը և բերքատվությունը։ Ըստ էության, ժամանակակից ագրոտեխնիկան հիմնված է բույսերի ներքին, հիմնական օրինաչափությունների ճանաչման վրա, որի շնորհիվ, մարդը ցանկալի արդյունքների հասնելու նպատակով հնարավոր միջոցներով զարգացնում կամ կասեցնում է բույսերի օնտոգենեզին բնորոշ այս կամ այն հակասությունը։ Այսպես օրինակ, այն բույսերը, որոնց մոտ որպես բերք օգտագործվում են տերևները՝ կաղամբը, թեյը, ազնիվ դափնին և այլն, անհրաժեշտ բարձր ագրոտեխնիկայի կիրառմամբ մարդը մի կողմից բարելավում է աճման պայմանները և մյուս կողմից ձգձգում, կամ էլ բոլորովին կասեցնում է ծաղկումը և սերմնակալումը։ Նույնպիսի ագրոմիջոցառումներ են կիրառվում այն բույսերի մշակության ժամանակ, որոնց բերքը ստացվում է ստորգետնյա օրգանների վրա՝ կարտոֆիլ, ճակնդեղ և այլն։ Սակայն, ինչպես հայտնի է, մի այլ խումբ բույսեր՝ պտղատու ծառեր, հացազգի կուլտուրաներ և այլն, բերք են տալիս պտուղների և սերմերի ձևով։ Սրանց բերքատվության բարձրացման համար մշակված ագրոտեխնիկական միջոցառումներն ուղղված են ծաղկման և պտղակալման պրոցեսների արագացմանը և ուժեղացմանը։

Ամփոփելով բույսերի անհատական զարգացման պրոցեսների վերաբերյալ մեր պատկերացումները՝ գալիս ենք այն համոզման, որ ստեղծագործորեն կիրառելով մարքսիստական թեզը զարգացման մասին, որպես հակադրությունների պայքարի, լրիվ հնարավորություն ենք ստանում ավելի խոր ըմբռնելու բույսերի անհատական զարգացման հիմնական օրինաչափությունները և դրանք ի սպաս դնելու մարդկության բարօրությանը։



## ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՐԵՎՈՐ ԳՈՐԾՈՆԸ

*ՍՄԿՊ XXII համագումարը խնդիր դրեց ստեղծել կոմունիզմի նյութատեխնիկական բազան, ըստ ամենայնի զարգացնել կոմունիստական արտադրական հարաբերությունները, բարելավել կոմունիզմ կառուցող մարդու դաստիարակության գործը: Պարտիայի առաջադրած խնդիրների իրականացումն անհնար է, առանց պարտիական ու պետական կարգապահության ամրապնդման, կադրերի պատասխանատվության բարձրացման, պարտիայի շարքերի միասնության ու համախմբվածության ամրապնդման: Այդ է մեր բոլոր կադրերի գործունեության, մեր բոլոր հաջողությունների հիմքը: Որտեղ գոյություն ունի գիտակցական բարձր կարգապահություն, այնտեղ հաջողությամբ են կենսագործվում համաժողովրդական-համապետական նշանակություն ունեցող միջոցառումները:*

*Պարտիական ու պետական կարգապահությունը սերտ փոխհարաբերության մեջ է դեմոկրատական ցենտրալիզմի հետ: Առանց դեմոկրատիայի չի կարող լինել գիտակցական կարգապահություն և, հակառակը՝ առանց ամուր կարգապահության դեմոկրատիան գործարար լինել չի կարող: Մինչդեռ կան մարդիկ, որոնք հաճախ ճիշտ չեն հասկանում երկրի ղեկավարման դեմոկրատացման ուղղությամբ պարտիայի իրականացրած վերջին միջոցառումների էությունը. նրանց թվում է, թե դրանց իրականացումը այս կամ այն չափով հարվածում է կարգապահությանը:*

*Ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարման առավել նպատակահարմար կազմակերպական ձևի ստեղծումը, գաղափարական աշխատանքի բարելավումը, աշխատավորության նյութական-կուլտուրական դրության հետագա լավացման ուղղությամբ իրականացվող միջոցառումները պայմաններ են ստեղծել զգալի չափով բարձրացնելու պարտիական ու պետական կարգապահությունը, հաջողությամբ լուծելու պարտիայի կողմից սովետական ժողովրդի առջև դրված տնտեսական ու քաղաքական խնդիրները:*

*Ստեփանավանի գյուղական արտադրական պարտիական կոմիտեն ու պարտկազմակերպությունները մի շարք լուրջ միջոցառումներ են մշակել հանձնարարված գործի նկատմամբ կադրերի պատասխանատվությունը բարձրացնելու, նրանց հետ տարվող աշխատանքը բարելավելու, պարտիական ու պետական կարգապահությունն ամրապնդելու ուղղությամբ:*

*Պարտիական ու պետական կարգապահության բարձրացման հիմքը աշխատանքում տեղ գտած թերությունների ու սխալների բոլշևիկյան, սկզբունքային քննադատության ծավալումն է: «Գործողության միասնություն, քննարկման ազատություն և քննադատություն»,— այսպես է բնութագրել Վ. Ի. Լենինը պարտիական կարգապահության հասկացողությունը:*



*Լենինյան այս դրույթը հիմք ունենալով՝ պարտիական կոմիտեի պլենումներում, բյուրոյի և ակտիվի նիստերում, սկզբնական կազմակերպություններում այնպիսի գիծ է տարվում, որպեսզի թերությունների ու սխալների նկատմամբ անհաշտելիության մթնոլորտ ստեղծվի: Պարտիական կոմիտեն իր ամենօրյա պրակտիկ գործունեության մեջ ձգտում է, որ կադրերի հետ ունեցած հարաբերությունները խարսխվեն աշխատանքի արդյունքների վրա, ըստ արժանվույն գնահատելով նրանց գործունեությունը: Այլապես աշխատանքի արդյունքների վրա չհիմնված խնամակալությունը կադրերի նկատմամբ, նրանց թերությունների ու բացերի սքողումը, աշխատանքի արդյունքների ոչ սկզբունքային գնահատմամբ չեն կարող պայմաններ ստեղծել քննադատության ու ինքնաքննադատության ծավալման, կադրերի իսկական բոլշևիկյան դաստիարակության, պարտիական ու պետական կարգապահության ամրապնդման համար:*

*Կարգապահության կրողները կադրերն են: Այս հանգամանքը հաշվի առնելով, պարտիական կոմիտեն և սկզբնական պարտկազմակերպությունները հետևողական աշխատանք ծավալեցին կադրերի ընտրության ու տեղաբաշխման գործում եղած թերությունները վերացնելու ուղղությամբ:*

*Անցյալ տնտեսական տարվա սկզբին վարչության կոլտնտեսություններում շուրջ 100 միավորով կրճատվեցին վարչական աշխատողների հաստիքները, ավելացավ անասնապահության ու դաշտավարության բնագավառում աշխատող կոմունիստների թիվը: Սարչապետ, Ղարաքիլիսա, Գյառգյառ և այլ գյուղերի կոլտնտեսությունների շատ բրիգադավարներ, ֆերմաների վարիչներ, որոնք տարիներ շարունակ գտնվում էին նույն պաշտոնում, լճացել էին, չէին տեսնում նորը, չէին կարողանում կազմակերպական աշխատանք ծավալել, հանվեցին գրաված պոստերից և ուղարկվեցին շարքային աշխատանքի:*

*Աշխատանքները ձախողելու և հեղինակազրկվելու համար աշխատանքից հանվեցին Ղարաքիլիսայի, Հովնանաձորի կոլտնտեսությունների նախագահներ Է. Մինասյանը, Թ. Զոհրաբյանը, Ղարաքիլիսայի կոլտնտեսության պարտբյուրոյի քարտուղար Ա. Դավոյանը: Կկլդաշի, Լեջանի, Կաթնաղբյուրի կոլտնտեսությունների նախագահներ Զ. Յուսուպովը, Ս. Սաքանյանը, Կ. Կիրակոսյանը պարտիական տույժի ենթարկվեցին կոլտնտեսությունների աշխատանքը վատ գլխավորելու և ֆինանսա-տնտեսական խախտումներ թույլ տալու համար: Ամրապնդվեց Ուռուտի, Կալինինոյի, Կիրովոյի, Հոբարձիի և Ղարաքիլիսայի կոլտնտեսությունների ղեկավարությունը:*

*Պարտիական կոմիտեի և սկզբնական պարտկազմակերպությունների կենսագործած այս և մյուս միջոցառումները նպաստեցին տնտեսություններում և կազմակերպություններում պարտիական ու պետական կարգապահության բարձրացմանը: Զգալիորեն աճեց պարտիական կազմակերպությունների հեղինակությունը: Այժմ կոլտնտեսությունների, սովխոզների, հիմնարկությունների ղեկավարները և պարտկազմակերպությունների քարտուղարներն ավելի մեծ պատասխանատվություն են ցուցաբերում ինչպես սեփական, այնպես էլ վերադաս պարտիական ու սովետական օրգանների որոշումների կենսագործման նկատմամբ:*

*Պարտիական ու պետական կարգապահության* հիմնական ցուցանիշը արտադրական պլանների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարումն է: *Այդ է պատճառը, որ պարտիական կոմիտեն, սկզբնական*

պարտկազմակերպությունները լայն աշխատանք են ծավալում տնտեսական խնդիրների իրականացման ուղղությամբ։

Մեր արտադրական վարչության էկոնոմիկայի հիմնական ճյուղն անասնաբուծությունն է, մասնավորապես կաթնատու անասնաբուծությունը։ Անասնաբուծությունից ստացված դրամական եկամուտները կազմում են կոլտնտեսությունների ընդհանուր եկամուտների 70—75 տոկոսը։ Վարչության կոլտնտեսություններն ու սովխոզները տալիս են ռեսպուբլիկայում արտադրվող կաթի 11,5 և վաճառքի 11,7 տոկոսը։ Այդ տեսակետից է՛լ ավելի է բարձրանում պարտիական կազմակերպությունների դերը հանրային անասնաբուծության զարգացումն ապահովելու գործում։

Վարչության կոլտնտեսություններն ու սովխոզներն անցյալ տարի, հիրավի, նշանակալից հաջողություններ ձեռք բերեցին անասնաբուծության զարգացման և մթերքների արտադրության ավելացման ասպարեզում։ Կատարվեցին խոշոր և մանր եղջերավոր անասունների գլխաքանակի ավելացման յոթնամյակի հինգերորդ տարվա առաջադրանքները, նախորդ տարվա համեմատությամբ զգալի չափով ավելացավ կովերի ու թռչունների գլխաքանակը։ Սոցիալիստական պարտավորությամբ նախատեսված 24450-ի փոխարեն անցյալ տարի արտադրվեց մոտ 24700 տոննա կաթ, ընդ որում՝ կաթի համախառն արտադրությունը, 1962 թ. համեմատությամբ, ավելացավ մոտ 12 տոկոսով, իսկ կովերի միջին կաթնատվությունը՝ 190 կիլոգրամով։

Կաթի արտադրության ավելացման գործում առավել բարձր ցուցանիշների հասան Լոռվա տոհմաբուծարանը, Իլմազլուի, Կզլշաֆակի ու Ստեփանավանի սովխոզները, Հոբարձիի, Սարչապետի, Կիրովոյի, Սվերդլովի, Սարատովկայի, Ագարակի կոլտնտեսությունները, որոնք կովերի միջին կաթնատվությունը, 1962 թ. համեմատությամբ, ավելացրին 300—500 կիլոգրամով։ Դրա շնորհիվ բոլոր տնտեսությունները ապահովեցին կաթի արտադրության զգալի աճ։

Անցյալ տարի հողատարածությունների 100 հեկտարի հաշվով արտադրվեց 310 ցենտներ կաթ, իսկ վարելահողի նույն տարածության դիմաց՝ 38 ցենտներ միս (սպանդանոցային քաշով)։ Սարատովկա, Նովոսելցովո, Բլագոդարնոյե և այլ կոլտնտեսությունները նույն չափի հողատարածության դիմաց ստացան 550—700 ցենտներ կաթ, 80—90 ցենտներ միս և այժմ պայքարում են մթերքների արտադրության երկրորդ բնագիծը նվաճելու համար։

Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացումը հնարավորություն տվեց կատարելու և գերակատարելու պետությանը դրանց վաճառքի առաջադրանքները։ Մսի վաճառքի տարեկան պլանը կատարվեց 110, կաթինը՝ 101, ձվինը՝ 109 տոկոսով։ Անցյալ տարի վարչության կոլտնտեսություններն ու սովխոզները 30.000 ցենտներով ավելի կաթ վաճառեցին պետությանը, քան 1962 թվականին։

Այս հաջողությունները պետական ու պարտիական կարգապահության ամրապնդման, մարդկանց պատասխանատվության բարձրացման արդյունք են, այն բանի արդյունք, որ պարտիական կոմիտեն, սկզբնական պարտիական կազմակերպությունները, արտադրական վարչությունը խելացիորեն, հետամուտ լուծում են կադրերի պատասխանատվության, նրանց նկատմամբ ցուցաբերվող պահանջկոտության ու օգնության հարցերը։

Պարտիայի XXII համագումարը, կոմունիզմի կառուցման խնդիրներին համապատասխան, մշակեց և ընդունեց պարտիայի նոր կանոնադրությունը՝



պարտիական կյանքի վարման օրենքը։ Նրանում հստակորեն նշված են պարտիայի անդամի պարտականություններն ու իրավունքները, պարտիայի կազմակերպական սկզբունքները։ Եվ այժմ, ավելի քան երբեք, կոմունիստներից պահանջվում է լինել պարտիայի քաղաքականության կենսագործման համար մղվող պայքարի առաջավոր դիրքերում։

Մեր աշխատանքում եղած թերություններն ու էական սխալներն ամենից առաջ բացատրվում են նրանով, որ տնտեսական ու քաղաքական խնդիրների ժամանակին ու լրիվ կենսագործման համար դեռևս չի բարձրացել պարտիական կազմակերպությունների դերը և կոմունիստների մի մասն անհրաժեշտ պատասխանատվություն հանդես չի բերում իրենց կանոնադրական պարտականությունների կատարման նկատմամբ։ Այնտեղ, որտեղ կոմունիստները վատ են կենսագործում իրենց կանոնադրական պարտականությունները, խոսք լինել չի կարող բարձր կազմակերպվածության, կարգապահության, պարտիական կազմակերպության մարտունակության մասին։

Շահնազար գյուղի կոլտնտեսությունը, օրինակ, ամենևին էլ վատ պայմաններում չի գտնվում, սակայն տևականորեն ետ է մնում։ Այդ բացատրվում է նրանով, որ պարտիական կազմակերպությունն ու կոլտնտեսության վարչությունը, շրջանային օրգանները հետևողական ու սիստեմատիկ աշխատանք չեն կատարում ֆերմաները մշտական կադրերով ապահովելու, անասնաբույծների վարպետությունը բարձրացնելու, առաջավոր փորձն ու գիտության նվաճումներն արմատավորելու, անասնապահության աշխատատար պրոցեսները մեքենայացնելու ուղղությամբ։

Շահնազարի պարտիական կազմակերպության մեջ հաշվվում են պարտիայի 89 անդամ-թեկնածուներ, բայց նրանցից Դ. Նարգիզյանը, Ն. Սողոմոնյանը, Ս. Միրզոյանը, Ժ. Մարկոսյանը և ուրիշներ պատշաճ ձևով չեն մասնակցում հանրային արտադրությանը և պարտիական-քաղաքական աշխատանքներին։ Նրանք, այսպես ասած, «հատուկ» կատեգորիայի կոմունիստներ են, որոնք գործը ձախողելու համար տարբեր ժամանակներում հանվել են աշխատանքից, չեն աշխատում և սպասում են նոր պաշտոնի։ Այստեղ 600 կոլտնտեսականներ չեն կատարել աշխօրերի պարտադիր մինիմումը։ Իսկ արդյունքն այն է, որ ցածր է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, մեծ չափերի են հասնում հանրային ունեցվածքի հափշտակումներն ու գողությունները։ Անցյալ տարի կովերի միջին կաթնատվությունն այստեղ 220 կիլոգրամով պակաս էր վարչության տնտեսությունների միջինից։

Նման օրինակներ կարելի է բերել նաև Սարչապետի, Կաթնաղբյուրի, Ղարաքիլիսայի, Լեջանի կոլտնտեսությունների պարտիական կազմակերպությունների կյանքից։ Սարչապետ գյուղի պարտիական կազմակերպության անդամ Ս. Հովսեփյանը պարտիական կոմիտեի բյուրոյի որոշմամբ ազատվեց բրիգադավարի պարտականությունից, սակայն արտադրության մեջ աշխատելու և իրեն արդարացնելու փոխարեն, նա ձի գնեց և զբաղվում էր մասնավոր աշխատանքով։

Շատ պարտիական կազմակերպություններ վերջերս սկսել են ավելի կոնկրետ զբաղվել կանոնադրական իրենց պարտականությունները վատ կատարող կոմունիստների հարցով. ժողովներում քննարկում են «կոմունիստի կողմից կանոնադրական պարտականությունների կատարման վիճակը», «կոլտնտեսության ղեկավար աշխատողների պատասխանատվության բարձրացու-

մը», «ինչպես է կոմունիստն ապահովում իր ավանգարդային դերը» հարցերը և խիստ պատասխանատվության ենթարկում կարգապահության խախտողներին։ Բայց առանձին սկզբնական պարտկազմակերպություններ և նրանց բյուրոներ անկարգապահ կոմունիստների նկատմամբ դեռևս վարում են հաշտվողական գիծ։ Պարտկազմակերպությունների քարտուղարները, որոնք անհատական պատասխանատվություն են կրում կազմակերպության գործերի վիճակի համար, հաճախ հետևողականություն հանդես չեն բերում անպարտաճանաչ կոմունիստներին տույժի ենթարկելու հարցում։

Պարտիական կազմակերպությունների որոշ քարտուղարներ երբեմն շատ նեղ են պատկերացնում պարտիայի կանոնադրության այն պահանջը, ըստ որի կոմունիստը պետք է ապահովի իր ավանգարդային դերն արտադրության մեջ։ Այդ է պատճառը, որ նրանք չեն բարձրացնում պարտիայի անդամների պատասխանատվությունն ու ակտիվությունը։

Կարգապահության բարձրացման, կադրերի և կոմունիստների ճիշտ դաստիարակության, նրանց ավանգարդային դերն ապահովելու գործում անժխտելի է պարտիական ժողովների նշանակությունը, քննարկվող հարցերի խելացի նախապատրաստումը։ Եթե խոսքն այն մասին է, թե ինչպես են կենսագործվում սեփական ու վերադաս օրգանների որոշումները, ապա պարտիական ժողովը պետք է հաշիվ պահանջի յուրաքանչյուր կոմունիստից, թե նա ինչպես է կենսագործում դրանք, ինչպես է մոբիլիզացնում աշխատավորության ուժերը առաջադրված խնդիրներն իրականացնելու համար։

Հարցերի գործարար քննարկման, կոմունիստների աշխատանքը սկզբունքային դիրքերից գնահատելու դեպքում, ժողովը, անկասկած, դրական դեր կխաղա։ Շատ կարևոր է նաև այն, թե կոմունիստների մոբիլիզացիան ինչպես է օգնում որոշումների կենսագործմանը։ Ժողովների նախապատրաստման և անցկացման նման պրակտիկան զգալի չափով կբարձրացնի կոմունիստների պատասխանատվությունը, պարտիական ու պետական կարգապահությունը։

Պարտիական կազմակերպություններում վերը նշված հարցերում անհրաժեշտ կարգ ու կանոնի բացակայությամբ պետք է բացատրել կոլտնտեսություններում դեռևս գոյություն ունեցող թերությունները։ Եթե վատ են կազմակերպված անասունների խնամքն ու պահպանությունը, խախտվում են գյուղատնտեսական կուլտուրաների ցանքի, մշակության ու բերքահավաքի ագրոկանոնները, տրվում է անասունների կորուստ, անհրաժեշտ պայքար չի տարվում անասունների մայրական կազմի ստերջությունը վերացնելու, գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքն իջեցնելու, տնտեսությունների ֆինանսական գործունեությունը կարգավորելու ուղղությամբ, նշանակում է տվյալ տնտեսություններում պարտիական ու պետական կարգապահությունը պատշաճ բարձրության վրա չի գտնվում, ցածր է ղեկավարների, կոմունիստների պատասխանատվության զգացումը հանձնարարված գործի նկատմամբ։

Այդ տեսակետից էլ մեր վարչության տնտեսությունների համար աններելի են անասունների մեծ չափերի հասնող անկումները, անասնապահական մթերքների, մասնավորապես մսի արտադրության ցածր մակարդակը։ Բանն այն է, որ տնտեսությունների առանձին ղեկավարներ չեն ապահովել անասունների բտման ու գիրացման արդյունավետ կազմակերպումը։ Միայն անկումների ու ցածր կենդանի քաշ ունեցող անասունների մորթի հետևանքով կոլ-



տնտեսություններն ու սովխոզները, մոտավոր հաշվումներով, կորցրել են 300 տոննա միս, կամ 150 հազար ռուբլի։

ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան (1963 թ.) և փետրվարյան (1964 թ.) պլենումները մշակեցին գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման գործնական ծրագիր. պարտիան մեր կադրերին նպատակամղեց խելացիորեն բարձրացնել գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման մակարդակը, ռացիոնալ օգտագործել հնարավորությունները և այդ բազայի վրա ապահովել գյուղատնտեսության ինտենսիվացումը։ Իհարկե, մենք ունենք շատ աշխատողներ, որոնք ժամանակին արձագանքում են պարտիայի որոշումներին, անում իրենցից կախված ամեն բան՝ պարտիայի առաջադրած խնդիրների կենսագործման համար։ Սակայն կան նաև այնպիսի աշխատողներ, որոնք ոչ միայն վատ են կատարում իրենց պարտականությունները, չեն մտածում արտադրության բարձրացման համար նոր ռեզերվներ որոնելու ու դրանք օգտագործելու մասին, այլև չեն ունկնդրում իրենց հասցեին արված քննադատական դիտողություններին և անհրաժեշտ եզրակացություն չեն անում դրանից։

Ստեփանավանի արտադրական վարչությունում է գտնվում գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների մինիստրության պետական տոհմաբուծարանը, որի վրա մեծ պարտականություններ են դրված անասունների ցեղայնության բարելավման կապակցությամբ։ Պարտիական կոմիտեի պլենումներում, բյուրոյի նիստերում, կոնֆերանսներում բազմաթիվ քննադատական դիտողություններ են եղել այդ հիմնարկության և նրա դիրեկտոր ընկ. Յ. Մուրադյանի հասցեին։ Բայց սայլը տեղից դեռ չի շարժվել։ Մի՞թե կարելի է խոսել ցեղայնության բարելավման մասին, երբ անցյալ տարի տոհմաբուծարանի սպասարկած կոլտնտեսություններում 100 կովից ստացվեց 74 հորթ։ Շատ տնտեսություններում մեկ կովի կաթնատվությունը չի անցնում 1500—1600 կիլոգրամից։

Նմանօրինակ վիճակը հնարավորություն չի տալիս հաջողությամբ լուծելու անասնապահական մթերքների արտադրության ավելացման ուղղությամբ առաջադրված խնդիրները, զգալի չափով բարձրացնում է արտադրված մթերքների ինքնարժեքը, պայմաններ չի ստեղծում կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը անհրաժեշտ չափով բարձրացնելու։ Ի դեպ, պետական տոհմաբուծարանում և անասնաբուժական տեղամասերում կան 50 մասնագետներ, որոնց աշխատավարձի տարեկան ֆոնդը կազմում է 100 հազար ռուբլի։ Պետությունը վարչության յուրաքանչյուր տնտեսության համար միջին հաշվով պահում է 1,5 մասնագետ։ Սակայն այս ամենից հետո, ինչպես ասվեց վերևում, խիստ բարձր է կովերի ստերջության տոկոսը, մեծ չափերի են հասնում անկումները և անհրաժեշտ աշխատանք չի տարվում անասունների ցեղայնության բարելավման ուղղությամբ։

Այդ բոլորը բացատրվում է նրանով, որ առանձին տնտեսություններում ընկած է պետական ու պարտիական կարգապահությունը։ Մասնագետների մոտ բացակայում է սրտացավ, բարեխիղճ վերաբերմունքը գործի նկատմամբ, պարտիական կազմակերպությունները սկզբունքայնորեն վեր չեն հանում այդ թերությունները, կադրերին ինչպես հարկն է չեն նպատակամղում իրենց պարտականություններն անթերի կատարելու, քննադատական դիտողություններից անհրաժեշտ եզրակացություն հանելու։

Պարտիական կարգապահության բարձր մակարդակ կարելի է ապահովել
այն դեպքում, երբ չեն խախտվում ղեկավարման կոլեկտիվության սկզբունք-
ները։ Հարցերի կոլեկտիվ լուծումը բարձրացնում է յուրաքանչյուրի պատաս-
խանատվությունն ընդունված որոշումների անթերի կատարման համար։ Սա-
կայն այդ չի նշանակում, թե կազմակերպության քարտուղարը, կոլտնտեսու-
թյան նախագահը պատասխանատվություն չեն կրում իրավիճակի համար։
Հարցերի կոլեկտիվ լուծումը նպատակ ունի բարձրացնել հանրային տըն-
տեսությունը, ճիշտ զուգակցել կոլտնտեսականի, յուրաքանչյուր աշխատողի
և հանրային տնտեսության, պետության շահերը։

ՍՄԿՊ XXII համագումարի՝ պարտիական, պետական ու հասարակական
հսկողությունն ուժեղացնելու մասին պահանջի համապատասխան, հետագա-
յում, ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշմամբ ստեղծվեցին պար-
տիական ու պետական վերահսկողության կոմիտեներ և նրանց աջակցող խըմ-
բեր։ Այդ նոր ինստիտուտը հսկայական դեր է խաղում պարտիական ու պե-
տական կարգապահության ամրապնդման, վերադաս օրգանների որոշումների
կենսագործման ուղղությամբ կադրերի պատասխանատվությունը բարձրաց-
նելու գործում։ Անցած ժամանակամիջոցում անհամեմատ ուժեղացել է հսկո-
ղությունը առևտրի և աշխատավորությանն սպասարկող այլ կազմակերպու-
թյունների գործունեության նկատմամբ։ Պարտիական ու պետական վերահըս-
կողության շրջանային կոմիտեն աշխատանքից ազատել է առևտրի և այլ
բնագավառներում վստահություն չներշնչող մի շարք աշխատողների, նպաստել
նրանց կարգապահության բարձրացմանը։

Յոթնամյակի վեցերորդ տարում լուրջ խնդիրներ են կանգնած Ստեփա-
նավանի արտադրական վարչության տնտեսությունների առաջ։ Նախատեսվում
է անասունների գլխաքանակի ավելացման, ինչպես նաև գյուղատնտեսական
մթերքների արտադրության ու վաճառքի զգալի աճ։

ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան և փետրվարյան պլենումների որոշում-
ների անշեղ իրականացումը պահանջում է ուժերի նոր մոբիլիզացում։ Վար-
չության տնտեսությունները միջոցառումներ են նախատեսել քիմիայի ընձեռած
հնարավորությունները գյուղատնտեսության մեջ արդյունավետ ու նպատա-
կասլաց օգտագործելու համար։ Այդ խնդիրներն անհնար է կատարել, եթե
կարճ ժամանակամիջոցում չվերացվեն աշխատանքում նկատվող թերություն-
ները, պարտիական ու պետական կարգապահությունը չդրվի պատշաճ բարձ-
րության վրա։

ՕՆ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ
ՀԿՊ Ստեփանավանի գյուղական արտադրա-
կան կոմիտեի քարտուղար





## ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Շինարարության ծավալը Սովետական Միությունում 1980 թվականին,
1960 թվականի համեմատությամբ մեծանալու է մոտ 4,5—5 անգամ, իսկ մեր
ռեսպուբլիկայում՝ 5,5—6 անգամ։ Դա հիմնականում տեղի է ունենալու աշ-
խատանքի արտադրողականության բարձրացման հաշվին, որի աղբյուրը տեխ-
նիկական պրոգրեսն է։

1960—1980 թվականներին շինարարության, ինչպես նաև ամբողջ ար-
դյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրանալու է
չորսից-չորսուկես անգամ։ Եթե հաշվի առնենք նաև բանվորական օրվա տևո-
ղության կրճատումը, այն կբարձրանա ոչ պակաս, քան 5 անգամ։

Վլադիմիր Իլյիչը իր ժամանակ նշել է. աշխատանքի արտադրողականու-
թյունը, վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարա-
կարգի հաղթանակի համար։ Կենսագործելով մեծ Լենինի այդ ցուցումը՝ մեր
պարտիան մեծ ջանքեր է գործադրել աշխատանքի արտադրողականությունը
ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում անընդհատ բարձրացնելու ուղ-
ղությամբ։ Աշխատանքի արտադրողականությունը զգալիորեն բարձրացել է
նաև շինարարության մեջ։ Այսպես, եթե աշխատանքի արտադրողականության
մակարդակը 1928 թ. ընդունենք 100, ապա այն 1940 թ. աճել է 2,5, 1950 թ.՝
3,07, 1963 թ. մոտ 7 անգամ։

Այս աճն առաջին հերթին արդյունք է այն բանի, որ շինարարության մեջ
լայնորեն կիրառվում է տեխնիկական պրոգրեսը՝ մեքենայացվել են աշխա-
տանքի բազում պրոցեսներ։ Ինչպես ժողովրդական տնտեսության բոլոր բնա-
գավառներում, այնպես էլ շինարարության մեջ, տեխնիկական պրոգրեսի դերը
խիստ կարևոր է։

ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումում ընկ. Ն. Ս. Խրուշչովն ասաց.
տեխնիկական պրոգրեսը այն հիմնական բանալին է, որի միջոցով մենք
հաջողությամբ կարող ենք լուծել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի
ստեղծման հարցը և հասնել աշխատանքի բարձր արտադրողականության։

Շինարարության մեջ տեխնիկական պրոգրեսի հիմնական ուղին ինդուս-
տրացումն է՝ բոլոր տեսակի աշխատանքների մեքենայացումը, շենքերի ու
կառույցների հավաքական եղանակի մասսայական կիրառումը, բոլոր աշխա-
տատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը։

Պարտիայի ծրագրում ասված է.

«Կապիտալ շինարարության հսկայական մասշտաբները պահանջում են
շինարարական ինդուստրիայի և շինանյութերի արդյունաբերության արագ
զարգացում և այնպիսի մակարդակի տեխնիկական կատարելագործում, որն

ապահովի ժողովրդական տնտեսության պահանջները, շինարարության ժամկետների առավելագույն կրճատումը, իջեցնի դրա արժեքն ու բարելավի որակը՝ շինարարության հետևողական ինդուստրացման, ըստ տիպային նախագծերի խոշոր չափերի կոնստրուկցիաներից և արդյունաբերական արտադրության տարրերից լրիվ հավաքովի շենքերի ու շինանյութերի կառուցման անցնելն արագորեն ավարտելու միջոցով»։

Շինարարության ինդուստրացման հիմքը հավաքովի երկաթ-բետոնն է։ Սովետական Միությունում 1962 թվականին արտադրվել է 41 միլիոն, իսկ 1963 թվականին՝ ավելի քան 44 միլիոն խորանարդ մետր հավաքովի երկաթ-բետոն։

Ներկայումս Սովետական Միությունում արտադրվում և օգտագործվում է ավելի շատ հավաքովի երկաթ-բետոն, քան մնացած բոլոր երկրները միասին վերցրած։ Այժմ մեր երկրում 2,5 անգամ ավելի երկաթ-բետոն է արտադրվում, քան Ամերիկայի Միացյալ Նահանգներում։

Մեր ռեսպուբլիկան հավաքովի երկաթ-բետոն սկսեց արտադրել 1954—55 թվականներին։ Միայն շինարարության մինիստրությունը 1954 թվականին արտադրել է 4,2 հազար, 1962 թվականին 303,2 հազար, իսկ 1963 թվականին մոտ 400 հազար խմ. երկաթ-բետոն։

Սովետական Միությունում բնակչության մեկ շնչին ընկնող հավաքովի երկաթ-բետոնի արտադրանքը 1963 թվականին կազմում է մոտ 0,19 խմ., իսկ տեխնիկապես ամենազարգացած կապիտալիստական երկրներում՝ 0,055 խըմբից էլ պակաս։ Մեզ մոտ՝ Հայաստանում, 1963 թվականին մեկ շնչին ընկավ մոտ 0,225 խմ. հավաքովի երկաթ-բետոն, կամ մոտ 4 անգամ ավելի, քան տեխնիկապես ամենաառաջավոր կապիտալիստական երկրներում։

Հավաքովի երկաթ-բետոնի արտադրության այդպիսի աճը մեր երկրում միանգամայն օրինաչափ է։ Հավաքովի երկաթ-բետոնի ծավալը և հավաքական եղանակով կառուցման աստիճանը ինդուստրացման ու տեխնիկական պրոգրեսի կարևորագույն ցուցանիշներից մեկն է։

Տարեցտարի աճում է շինարարության մեջ օգտագործվող կոնստրուկցիաների, դետալների և շինանյութերի քանակը, որոնց մինչև շենք բերելը, մշակում են գործարաններում։ Մեր գործարանները թողարկում են լավորակ խոշոր որմնասալեր տնաշինարարության համար, 3×12 մետրանոց ծածկասալեր, ինչպես նաև հավաքովի երկաթ-բետոնե մեծ թռիչքներ կրող բազմապիսի կոնստրուկցիաներ, բարակ պատերով ու մեծ մակերեսների կոնստրուկցիաներ ծածկերի համար, թրթռագլանաբետոն (вибропрокат), թեթև, շատ ամուր բետոններ, բջջաբետոն, արմավորման համար օգտագործվող լավագույն մետաղներ, դոմնային վառարանների կառուցման համար խոշոր ծավալային հավաքովի կոնստրուկցիաներ և այլն։

Հավաքովի երկաթ-բետոնը մեծ նշանակություն ունի շինարարական աշխատանքների արտադրողականության բարձրացման գործում։ Եթե մեկ խորանարդ մետր մոնոլիտ երկաթ-բետոն պատրաստելու համար պահանջվում է միջին թվով 5 մարդ-օր, հավաքովի երկաթ-բետոնի պատրաստման համար, աշխատանքի ընդհանուր ծախսը (գործարանում պատրաստելու և շենքում մոնտաժելու համար) կազմում է 2,7 մարդ-օր, այսինքն՝ մոտ 2 անգամ պակաս, քան մոնոլիտի դեպքում։

Հավաքովի երկաթ-բետոնն արդյունավետ է ո՛չ միայն այն պատճառով,



որ պակասեցնում է աշխատատարությունը, այլև նրանով, որ տալիս է մետաղի ու անտառանյութի զգալի խնայողություն, իջեցնում շինարարության արժեքը և կրճատում կառուցման ժամկետը։

Հաճախ հարց են տալիս՝ եթե հավաքովի երկաթ-բետոնը այդպիսի առավելություններ ունի, ապա ինչո՞ւ կապիտալիստական երկրներում համեմատաբար ավելի քիչ է տարածված, քան մեզ մոտ։ Կան, այսպես կոչված՝ «հեղինակավոր» մարդիկ, նույնիսկ մասնագետներ, որոնք այդ բացատրում են նրանով, որ իբր թե կապիտալիստներն արդեն համոզվել են, որ հավաքովի երկաթ-բետոնը մոնոլիտի նկատմամբ ոչ մի առավելություն չունի. ոմանք էլ հարց են տալիս. ինչո՞ւ կապիտալիստական երկրներում հավաքովի երկաթ-բետոն արտադրելու համար մեծ մասամբ կաղապարները պատրաստում են փայտից և ոչ մետաղից, ինչպես գործարաններում. գուցե դրանք ավելի ձեռնտո՞ւ են։

Այս հարցի պատասխանը պետք է որոնել ժողովրդական տնտեսության սիստեմի մեջ։ Միայն պլանային սոցիալիստական տնտեսությունը կարող է ապահովել շինարարության պլանային զարգացումը։ Մեր պայմաններում հավաքովի երկաթ-բետոնի մնայուն գործարանների կառուցումը նպատակահարմար է և շահութաբեր, որովհետև այդ գործարանների արտադրանքի օգտագործումը տվյալ վայրում ապահովված է առնվազն առաջիկա մի քանի տասնյակ տարիներում։ Կապիտալիստական երկրների շինարարական շուկայի քաոսային վիճակի պայմաններում շատ մեծ համարձակություն կլինի կառուցել նման գործարաններ։ Այս պատճառով էլ կապիտալիստական երկրներում հավաքովի երկաթ-բետոնի մեծ մասը պատրաստվում է անմիջապես կառույցներում կամ ժամանակավոր «պոլիգոններում», որոնք չեն պահանջում մեծ ու մնայուն կապիտալ ներդրումներ, որն, իր հերթին, հնարավորություն չի տալիս իրականում ի հայտ բերելու հավաքովի երկաթ-բետոնի իսկական տեխնիկա-տնտեսական էֆեկտը։ Այդ պատճառով էլ շատ դեպքերում նրանք գերադասում են մոնոլիտ երկաթ-բետոնը, չնայած այն շատ աշխատանք և մեծ քանակով փայտանյութ է պահանջում։ Սրան նպաստում է նաև այն հանգամանքը, որ այդ երկրներում գոյություն ունի պարապ ու էժան բանվորական ուժ։

Վերջին 8 տարվա ընթացքում Սովետական Միության նորակառույցներում ծախսվող մեկ միլիոն ռուբլու անտառանյութի նորման միջին հաշվով կրճատվել է 2 անգամ, իսկ մեր ռեսպուբլիկայում՝ ավելի քան 2,5 անգամ։ Հավաքովի երկաթ-բետոնը թեթևացնում է կոնստրուկցիայի քաշը և տնտեսում մեծ չափով երկաթ։

Այս ամենի հետ պետք է նշել, որ շինարարության ինդուստրացումը դեռևս անբավարար է. ամբողջ երկրում ընդհանուր տնաշինարարության միայն 15 տոկոսն է կառուցվել խոշոր որմնասալերից, բացառությամբ առանձին խոշոր քաղաքների, ուր այդ որմնասալերից կառուցված տները 1962 թվականին կազմել են 40—50 տոկոսը։

Մեզ մոտ՝ Հայաստանում, խոշոր որմնասալերից բնակարանային շինարարությունը 1962 թվականին կազմել է 9,8, իսկ 1963 թվականին՝ 14 տոկոս, մինչդեռ խոշոր պանելային շինարարություններում բնակելի մակերեսի արժեքը 15—17 տոկոսով ավելի էժան է, քան աղյուսից, կամ քարից կառուցված տներինը։ Բանվորական ուժի ընդհանուր ծախսը (գործարանում և կառույցներում) կրճատվում է 35—40 տոկոսով, իսկ աշխատանքի արտադրողականությունը բարձրանում է 2—2,5 անգամ։ Այս գործի նկատմամբ ցուցաբերվող

անուշադրության հետևանքով վերջին 4 տարում երկրում տնաշինարարական կոմբինատները 20 միլիոն քառ. մետր բնակելի մակերեսի (խոշոր որմնասալերի) փոխարեն շահագործման են հանձնել ընդամենը 11,3 մլն. քառ. մետր կամ 56,5 տոկոսը։

Մեր կարծիքով խոշոր պանելային բնակելի տներն իրենց դրական հատկություններով հանդերձ դեռևս զերծ չեն թերություններից։ Կառուցվող խոշոր պանելային բնակելի տների կոնստրուկցիան և հատակագծային լուծումները զուրկ են ճկուն պլանավորման հնարավորությունից։ Անհրաժեշտ է, որ մեր նախագծողները մտահոգվեն այս ուղղությամբ, բնակելի տների այնպիսի տիպարային նախագծեր մշակեն, որ հնարավոր լինի, անհրաժեշտության դեպքում, դրանք ձևափոխել և օգտագործել ժամանակի նորմաներին համապատասխան։ Հարկավոր է պանելների միացման կարանները պնդացնել և դարձնել հերմետիկ, ինչպես նաև այնպես անել, որ միացնող մետաղյա մասերը ժամանակի ընթացքում չօքսիդանան։

Հատուկ ուշադրություն պետք է նվիրել շենքերի արտաքին ձևավորմանը, որովհետև մինչև օրս էլ նորակառույցների արտաքին պանելների երեսպատման հարցը չի լուծվել ինչպես Միության մեջ, այնպես էլ մեզ մոտ։ Կարծում ենք, որ արտաքին պանելներն իրենց երեսպատման տեսքի տարբերությամբ ու գույնով, ճարտարապետական ձևավորմամբ պետք է վերացնեն շենքերի ներկայիս միապաղաղ, գորշ, ոչ հրապուրիչ տեսքը։

Չնայած հավաքովի երկաթ-բետոնի մեծ արժանիքներին, այն դեռևս ունի նաև թերություններ։ Դրանցից մեկը նրա ծանր քաշն է, 6—8 անգամ այն ծանր է մետաղից կամ փայտից պատրաստված համապատասխան կոնստրուկցիաներից։ Մինչդեռ շենքի քաշի իջեցումը նույնպես շինարարության պրոգրեսիվ ցուցանիշներից մեկն է, հատկապես նրա ինքնարժեքի իջեցման և աշխատանքների ինդուստրացման դեպքում։

Ապագայում, հավանաբար, հավաքովի երկաթ-բետոնն իր տեղը որոշ չափով կզիջի պլաստմասսաներից, ալյումինի ձուլվածքներից, ապակե բետոնից, ասբոցեմենտից և ժամանակակից այլ նյութերից պատրաստված կոնստրուկցիաներին, որոնք անհամեմատ ավելի թեթև են և ինդուստրիալ։

Ժամանակակից շինարարություններում աշխատատար ծախսերի ավելի քան 65 և շենքի արժեքի ավելի քան 40 տոկոսը (սկսած շինանյութերի հանույթից, վերջացրած նրանց պատրաստելով ու տեղադրմամբ) կազմում են տրանսպորտային ծախսերը։ Եթե ներկայումս Սովետական Միությունում միայն երկաթուղով տեղափոխվող շինանյութերի քաշը տարեկան անցնում է 800 միլիոն տոննայից, բեռնավորելով ամբողջ երկաթուղային տրանսպորտի ավելի քան 25 տոկոսը, ապա 10—15 տարի հետո, երբ շինարարության ծավալը կմեծանա մի քանի անգամ, շինանյութերի փոխադրման պրոբլեմը կդառնա ժողովրդական տնտեսության համար շատ լուրջ խնդիր։ Այս պատճառով էլ անհրաժեշտ է խիստ կրճատել շինանյութերի ծախսը, հատկապես այնպիսի ծանր կոնստրուկցիաներինը, ինչպիսիք են՝ ներկա երկաթ-բետոնը, նրա բաղադրիչները (ավազը, խիճը), քարը և այլն։

Երկաթ-բետոնի կոնստրուկցիաների քաշը պետք է իջեցնել ի հաշիվ թեթև բետոնների օգտագործման. մեր ռեսպուբլիկայում այս ուղղությամբ շատ բան է արված և արվում է. օգտագործվում են բարձր մարկայի ամրության բետոններ։ Բարձրացվում է հավաքովի երկաթ-բետոնի որակը, ճշգրտվում են նրա



չափերը, փորձեր են արվում մետաղյա արմատուրայի փոխարեն օգտագործել ապակեպլաստներ։

Հավաքովի բետոնի և երկաթ-բետոնի պատրաստման, այն ավելի ամուր դարձնելու, քաշը թեթևացնելու և արժեքն իջեցնելու գործում մեծ դեր են խաղում նրա բաղադրիչները՝ ցեմենտը, արմատուրան և չեզոք նյութերը։ Այս պատճառով էլ բետոնի ու երկաթ-բետոնի արտադրության հետագա աճը, իր հերթին, պահանջում է մեծ չափով ավելացնել նշված նյութերը, ինչպես նաև բարելավել դրանց որակը։

Բարձր ամրության բետոն ստանալու համար անհրաժեշտ է ունենալ բարձր մարկայի ցեմենտ, կամ անհրաժեշտ է ավելի ցածր մարկայի ցեմենտներից ծախսել սովորականից ավելի շատ, սակայն, երբ ցեմենտի ծախսը բետոնի մեջ նորմայից ավելացնում ենք, մեծանում է բետոնի կծկումը և բետոնն ստանում է ճաքճքելու ունակություն։ Այդ պատճառով էլ հարկավոր է հասնել այն բանին, որ բարձր մարկայի բետոն ու երկաթ-բետոն ստացվի, ցեմենտի ոչ մեծ ծախսով, այսինքն՝ բարձր մարկայի ցեմենտից։ Միաժամանակ անհրաժեշտ է զարգացնել նաև հատուկ տեսակների՝ անջրաթափանց, լայնացվող, կավահողային, արագ ամրացվող պորտլանդ և ցեմենտի այլ տեսակների արտադրությունը։ Սրան զուգահեռ պետք է զարգացնել նաև ավտոկլավային բետոնի արտադրությունը. վերջինս տալիս է ցեմենտի և խոշոր չափերի չեզոք նյութերի հսկայական խնայողություն։

Երկաթ-բետոնի երկրորդ հիմնական տարրը պողպատի արմատուրան է։ Այս թանկարժեք նյութը միշտ անհրաժեշտ է խնայողաբար օգտագործել և, քանի որ հավաքովի երկաթ-բետոնի մեջ այն ավելի քիչ է ծախսվում, քան սովորական մոնոլիտում, հավաքովի երկաթ-բետոնն ավելի ձեռնտու և գնահատելի է։ Մետաղի մաքսիմում խնայողության նպատակով անհրաժեշտ է հավաքովի երկաթ-բետոնն ստանալիս մասսայաբար օգտագործել բարձր ամրության պողպատալարեր, հատկապես լարված արմավորված երկաթ-բետոններ պատրաստելիս, որոնք 2—2,5 անգամ պակասեցնում են մետաղի ծախսը։

Շատ մոտ ապագայում արմատուրայի փոխարեն մեծ թափ կստանա ապակելարի օգտագործումը, որը 4 անգամ ավելի պինդ է, քան ժամանակակից ամենապինդ պողպատաձողը և 3 անգամ թեթև, քան պողպատը։ Բացի այդ, ապակելարը ո՛չ օքսիդանում է, ոչ էլ ձևազերծման ենթարկվում, ինչպես ժամանակակից պողպատները։

Բետոնի ամրության ու թեթևության, ավելի քիչ ցեմենտ ծախսելու համար մեծ նշանակություն ունի չեզոք նյութերի որակը։ Փաստորեն շինարարությունները և հավաքովի երկաթ-բետոնի գործարաններն առայժմ հանքերից ստանում են կիսամշակված-լեռնային զանգված (խճի հետ խառնված ավազ)։ Անհրաժեշտ է հրաժարվել դրանց փոքր, կիսամեքենայացված արտադրություններից, ստեղծել խոշոր մեքենայացված հանքեր, որտեղ հնարավոր կլինի ստանալ լիարժեք մշակված լիցքանյութեր։ Մեծ օգուտ կտա պեռլիտի արտադրության զարգացումը։ Այն նոր ու մեծ հեռանկարներ բաց կանի ինչպես պանելային շինարարության համար, այնպես էլ ջերմամեկուսիչ նյութ և էժան գնով թեթևագույն բետոններ (մինչև 300 կգ խմ) ստանալու համար, որոնք շատ անհրաժեշտ են միատարր ու շերտավոր, բարակ ու թեթև արտաքին պատերի պանելների պատրաստման համար։ Դրանցից և մի շարք այլ թեթև լիցքանյութերից ու ջերմամեկուսիչներից պատրաստված շերտավոր կամ միաշերտ պա-

նելները կարող են լիովին լուծել կարկասային բարձրահարկ շենքերի ինդուստրիալ կոնստրուկտիվ բարդ հարցերը:

Թեթև կախովի պանելներ կարելի է պատրաստել բարակ պատերով թերթային նյութերի (ասբոցեմենտ, ապակեպլաստիկա, ալյումինից թերթեր, ապակեբետոնե բարակ սալեր և այլն) առկայության դեպքում: Այսպիսի պանելների մեկ քառակուսի մետրը 10—15 անգամ ավելի թեթև կլինի, քան այժմ պատրաստվող ամենաթեթև պանելները: Այդպիսի պանելների համար, որպես մեկուսիչ նյութ կարելի է օգտագործել (պեռլիտից բացի) նաև մի շարք քիմիական նյութեր՝ ապակեթելը, ապակեփրփուրը, ապակեբամբակը, խարամաբամբակը, փրփրակերամիկան, ասբեստային ու դիատոմիտային շինվածքները. իսկ սրանցից առավել արդյունավետ են միներալային բամբակից պատրաստված սալերն ու ներքնակները, որոնց արտադրանքի ծավալը 1965 թվականին և հետագա տարիներին կկազմի Սովետական Միությունում արտադրվող բոլոր տեսակի մեկուսիչ նյութերի մոտ 50 տոկոսը:

Վերջապես մեծ քիմիայի զարգացման հետ մեկտեղ մոտավորապես 1970—1975 թթ. բոլոր տիպի մեկուսիչ նյութերից լավագույնները կլինեն ծակոտկեն-պլաստները (поропласты), որոնք կպատրաստվեն սինթետիկ խեժերից: Դրանք անգերազանցելի են քաշի թեթևությամբ և ջերմամեկուսիչությամբ:

Շենքերի կայունության համար մեծ դեր է խաղում նաև նրանց ծածկի որակը: Ներկայումս հարթ ծածկերը հիմնականում պատում են ռուլոնային նյութերով (ռուբեռոիդ, պերգամին, տոլ և տոլից կաշի): Գնալով ավելի են տարածվում հարթ կտուրները: Ներկայումս Հայաստանում կան արդյունաբերական այնպիսի օբյեկտներ, որոնց հարթ ծածկի մակերեսը 40000 քառակուսի մետրից ավելի է: Հարթ կտուրներով են ծածկվում նաև բնակելի ու այլ շենքեր: Այդ պատճառով էլ անհրաժեշտ է գտնել այնպիսի ծածկանյութեր, որոնք ավելի դիմացկուն լինեն, քան նշված ռուլոնային նյութերը, որոնք առայժմ միակ ծածկանյութն են: Վերջիններիս կարող է փոխարինել միներալային թելիկներից պատրաստված ամբողջական ռուլոնային նյութից կառուցված ծածկը, որի վրա խոնավությունն ու ժամանակը չեն ազդում: Այդպիսի ծածկի համար անհրաժեշտ է գտնել և օգտագործել համապատասխան նոր նյութեր: Արդեն հայտնաբերվել և թողարկվում են մի շարք բարձրորակ ռուլոնային նյութեր, միներալային թելեր (ասբեստաթելեր) և այլն, որոնք օգտագործվում են նորակառույցներում: Այս հարցն ավելի արմատապես կլուծվի, եթե թողարկվի ապակեթելից գործված ռուլոնային նյութ, որը ծածկվի անտիսեպտային նյութով՝ բիտումով (գուդրոնով): Պետք է հոգալ այս ուղղությամբ, տեխնիկական պրոգրեսիվ միջոցներով բարելավել կառույցների ծածկերը, տալով դրանց ավելի բարձր ու տևական կայունություն:

Նոր օգտավետ նյութերի ու կոնստրուկցիաների օգտագործումը շինարարության մեջ առաջացնում է ինդուստրացման արագ ու մեծ թափ, ինչպես նաև փոխում է որակը: Կառուցվածքների շահագործման որակը պայմանավորված է նաև ներքին ու արտաքին հարդարման աշխատանքների որակով: Հարդարման աշխատանքները խիստ ներգործում են նրա արժեքի և կատարման համար պահանջվելիք ժամկետի ու աշխատատար պրոցեսների կրճատման վրա: Այդ հնարավորություն է ընձեռում մաքսիմում չափով կրճատելու երկար ժամանակ ու աշխատանք պահանջող թաց պրոցեսները: Թաց-ծեփային գործերը փոխա-



րինվում են չոր-ամբողջական ծեփային սալիկով, հատակի թաց-նախապատրաստական աշխատանքները փոխարինվում են փայտյա թելիկներից, կամ տաշեղից պատրաստած մեծ սալիկով, որոնք և՛ չոր են, և՛ թեթև, և՛ լավ մեկուսիչ են (թե՛ ձայնի, թե՛ ջերմության):

Հատակների երեսպատման համար մասսայաբար օգտագործվող շատ աշխատատար պարկետը փոխարինվում է լինոլիումով, ռելինով, փայտյա թելիկներից սալիկով և առանց կարանների մաստիկական հատակներով (պոլիվինիլացետատային էմուլսիայով):

Թվարկած նյութերն ու կիսաֆաբրիկատները, մասնավորապես մեր ռեսպուբլիկայում, ունեն մեծ հեռանկարներ: Ժողտնտխորհի մի շարք գործարաններ արդեն այս տարի սինթետիկ նյութերից մասսայաբար թողարկելու են պլենթուսներ, երեսկալներ, օդափոխության ցանցեր և ատրճանավանդակի բռնափայտեր: Երևանի ռետինատեխնիկական գործարանը թողարկում է ռելինին կոչվող բարձրորակ նյութը՝ հատակի երեսպատման համար: Այս տարի մեր ռեսպուբլիկայում կարտադրվի շուրջ մեկ միլիոն քառակուսի մետր ռելին, կգործի նաև Իջևանի փայտատաշեղասալերի նոր գործարանը, որի արտադրանքն օգտագործվելու է որպես հատակների մեկուսիչ, երեսպատման, կահույք և ատաղձ պատրաստելու թանկարժեք շինանյութ: Արդեն գործում է Սևանի ապակելարերի գործարանը: Մոտ տարիներս շահագործման կհանձնվեն Ալավերդու խարամաբամբակի, Սևանի ապակեբամբակի գործարանները և այլն:

Սինթետիկ խեժերն անփոխարինելի նյութ են ներկերի ու լաքերի արտադրության, արտաքին, ներքին հարթությունների ներկման համար: Դրանք լրիվ փոխարինում են ժամանակակից յուղաներկերին, որոնք պատրաստվում են բուսական կամ կենդանական դեֆիցիտային յուղերից: Սրանք հաճախ ավելի կայուն են յուղաներկերից, անփոխարինելի իրենց թթվակայունությամբ, գոլորշիներից չփափկելու և այլ հատկություններով:

Հետագայում մեծ քիմիայի զարգացման հետ մեկտեղ այն լայնորեն կկիրառվի նաև շինարարության մեջ: Պլաստմասսաների արտադրության զարգացումը հնարավորություն կտա շինարարության մեջ կիրառել տարբեր տիպի ու չափերի խողովակներ, սանիտարա-տեխնիկական սարքավորումներ, դռների ու պատուհանների պարագաներ, շրջանակներ, ջրադիմացկուն պաստառներ, լինկրուստ, թափանցիկ պլաստիկներ, ապակեպլաստիկներ և այլն: Բացի նրանից, որ քիմիական արդյունաբերության թողարկած շինվածքներն ու նյութերն ավելի գեղեցիկ են ու թեթև, դրանք ունեն մի շարք այլ առավելություններ ևս. այսպես՝ սինթետիկ խողովակներն, ի տարբերություն պողպատյա խողովակների, երբեք չեն օքսիդանում: Սինթետիկ խողովակների ներքին հարթ մակերեսը ոչ մի դիմադրություն ցույց չի տալիս հեղուկի կամ գազի անցմանը: Սրանք լավ են դիմանում նաև սառնամանիքներին: Սինթետիկ խեժերից պատրաստված սոսինձը լավագույնն է բետոնե և երկաթ-բետոնե կոնստրուկցիաների միացման համար որպես սոսինձ:

Ժամանակակից խոշոր պանելային տները (որոնք շինհրապարակներում աշխատատար պրոցեսները և կառուցման տևողությունը կրճատում են մեկուկեսից-երկու անգամ) դեռևս ավելի աշխատատար են: Այս պատճառով անհրաժեշտ է ստեղծել ավելի պրոգրեսիվ տիպի (լրիվ հավաքովի) տներ, որոնք ա-

# Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ



## ՈՒԿՐԱԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՓԱՌՔՆ ՈՒ ՊԱՐԾԱՆՔԸ

Հարյուրհիսուն տարի առաջ, 1814 թվականի մարտի 9-ին, Կիևի նահանգի Մորինցի գյուղում, ճորտ գյուղացու ընտանիքում ծնվեց Տարաս Գրիգորևիչ Շևչենկոն՝ մի մարդ, որին վիճակված էր դառնալ ուկրաինական ժողովրդի փառքն ու պարծանքը։ Դուրս գալով ժողովրդական զանգվածների ընդերքից, Տարաս Շևչենկոն նվաճեց իր ժամանակի առաջավոր կուլտուրայի բարձունքները․ դարձավ մեծ բանաստեղծ, ականավոր գեղագետ-նկարիչ, խոր մըտածող, ռևոլյուցիոներ-դեմոկրատ։

Շևչենկոյի կյանքը ողբերգական էր։ Նա ապրեց ընդամենը 47 տարի, որից քսանչորսը՝ որպես ճորտ, իր վրա կրելով ճորտային ստորացուցիչ աշխատանքի ամբողջ ծանրությունը և տիրոջ տմարդի վերաբերմունքի դաժանությունը, տասը սարսափելի ու տանջալից տարիներ անցան աքսորում, իսկ մնացածը՝ ցարական ոստիկանության չթուլացող հսկողության ներքո։

Առատաձեռն բնությունը Շևչենկոյին օժտել էր նկարչի ձիրքով և բանաստեղծի շնորհքով։ Հետագայում հենց նկարչի այդ ձիրքի շնորհիվ էլ Շևչենկոն իր վրա գրավեց ռուսական կուլտուրայի նշանավոր ներկայացուցիչների՝ նկարիչներ Բրյուլովի, Վենեցիանովի, բանաստեղծ Ժուկովսկու և այլոց ուշադրությունը, որոնք էլ նրան ազատեցին ճորտական կախվածությունից և օգնեցին կրթություն ստանալու։ Շևչենկոյի գեղանկարչական գործերը, որոնք տոգորված են մարդու և բնության հանդեպ խոր սիրով և կատարված են բարձր վարպետությամբ, նոր խոսք էին ժամանակի գեղարվեստի մեջ և զգալի դեր են խաղացել Ռուսաստանում ռեալիստական գեղանկարչության ձևավորման ու զարգացման ասպարեզում։

Շևչենկոն ոտանավորներ է սկսել գըրել այն ժամանակ, երբ ճորտ էր, բայց միայն ազատվելուց հետո նա կարողացավ իրեն նվիրել գրականությանը։ Պետերբուրգի գեղարվեստների ակադեմիայում սովորելու տարիներին Շևչենկոն գրում է լիրիկական մի շարք բանաստեղծություններ ու պոեմներ, որոնք արտահայտում են նրա անհուն կարոտը հայրենի անդաստանների, չքնաղ բնության նկատմամբ։ Հետագայում, հիշելով այդ տարիները, Շևչենկոն գրում էր՝ «Իմ աչքերի առջև երևում էր իմ խեղճ Ուկրաինան՝ իր ամբողջ անարատ, մելամաղձոտ գեղեցկությամբ։ Եվ ես մտատանջության մեջ էի, ես չէի կարողանում իմ հայացքը հեռացնել այդ հարազատ սքանչելի գեղեցկությունից»։ Բայց պոետի վաղ բանաստեղծությունների մեջ եղած կարոտի ու թախծի գլխավոր պատճառը ճորտության մեջ տառապող հայրենի ժողովրդի անտանելի ծանր կյանքն էր։ Տառապանքները «խեղճ Ուկրաինայի», որը «որբի նման Դնեպրի վրա է լալիս» և որի «արցունքները ոչ ոք չի ուզում տեսնել», հոգեկան մեծ ցավ էին պատճառում Շևչենկոյին, համակում նրան այրող ատելությամբ դեպի թագակիր դահիճներն ու ճորտատերերը և բուռն ցանկություն առաջացնում օգնելու իր սարկացված ժողովրդին՝ գտնելու ազատության ճանապարհը։

Շևչենկոյի այդ ապրումները, խոհերն ու զգացմունքներն իրենց փայլուն արտահայտությունն են գտել նրա բանաստեղծությունների առաջին ժողովածուում, որը «Կոբզար» խորագրով լույս է տեսել 1840 թվականին Պետերբուրգում։ Դա մի փոքրիկ գրքույկ էր, որտեղ զետեղված էին ընդամենը ութ ստեղծագործություն, սակայն դժվար է գերագնահատել նրա նշանակությունը։ «Կոբզարը» ուկրաինական գրականության պատմության նոր շրջանի սկիզբը դրեց։ Արդեն իսկ ժողովածուի վերնագրով Շևչենկոն ընդգծում է, որ ինքը շարունակում է ուկրաինական ժողովրդական երգիչների՝ կոբզարների տրադիցիաները, որ նրա ստեղծագործությունն անխզելիորեն կապված է ժողովրդական պոեզիայի հետ։ Եվ իսկապես, «Կոբզարի» քնարական բանաստեղծություններին, բալլադներին և պոեմներին հատուկ է գերող թարմությունը․ օրգանական կապը ուկրաինական ժողովրդական բանահյուսության, երգի և կենդանի խոսակցական լեզվի հետ։ Ընթերցողը վառ պատկերների մեջ տեսնում է Ուկրաինան՝ իր զմայլիչ բնությամբ, Ուկրաինան՝ իր պատմական անցյալով և բանաստեղծի ժամանակվա ներկայով։ Շևչենկոն ցույց է տալիս նաև ճորտատիրության տակ հեծող գյուղացիության չարքաշ կյանքը։

Շևչենկոյի առաջին ժողովածուում հատուկ տեղ է գրավում «Կատերինա» սոցիալ-կենցաղային պոեմը։ Այդ սրըտառուչ ու հուզող ստեղծագործության մեջ պատկերված է ողբերգական բախտը աղջիկ-գեղջկուհու, որին անարգել և լքել է ցարական բանակի սպան։ Այդ թեման թերևս նորություն չէր։ Ե՛վ ռուսական, և՛ ուկրաինական գրականության ազնվական գրողները մինչև Շևչենկոն մշակել են այն էտիկական պըլանով, հարուստ-գայթակղիչի արարմունքը դիտելով միայն որպես անբարոյականության արտահայտություն։ Այլ դիրքերից մոտեցավ այդ հարցին ժողովրդական զանգվածների բանաստեղծը։ Նա բացահայտեց, որ աղջիկ-գեղջկուհու ողբերգությունը պայմանավորված է իր ժամանակի դասակարգային հարաբերություններով։ Նա ցույց տվեց մարդկանց սոցիալական անհավասարությունը շահագործողական հասարակության մեջ։

Ասես աշխարհն է լայն,
Ուր տեղ չունեն ապաստանեն
Մենակ մարդիկ միայն։
Պարգևում է բախտը մեկին
Առատ հող անսահման,
Իսկ մյուսին լոկ թողնում այն,
Ուր թաղում են նրան։

Ամբողջ պոեմը տոգորված է ժողովրդական ցասման զգացումով ընդդեմ աշխարհի տերերի և ամեն տեսակ բռնակալների։ Գայթակղված աղջիկ-

գեղջկուհու ողբերգական կործանման թեման իր հետագա զարգացումը գտավ բանաստեղծի նաև այնպիսի պոեմներում, ինչպես՝ «Կույրը» և «Մարինան», ուր արդեն պարզ հնչում է վրեժխնդրության հուժկու կոչը:

Ժողովրդի համար երջանիկ ապագայի ուղիներ որոնելիս Շևչենկոն իր մի շարք վաղ ստեղծագործություններում դիմում է Ուկրաինայի պատմությանը: Այդ տեսակետից ամենաբնորոշը «Հայդամակներ» պոեմն է, որի հիմքում ընկած է 18-րդ դարի երկրորդ կեսում ընդդեմ լեհական շլյախտայի, ընդդեմ սոցիալական, ազգային և կրոնական լծի Ուկրաինայում բռնկված գյուղացիական ապստամբություններից մեկը: Պոեմի գլխավոր հերոսը ապստամբ աշխատավոր ժողովուրդն է, որի ներկայացուցիչները պատկերված են ջերմ սիրով: Ժողովրդական ապստամբների կերպարները պոեմում ունեն ռևոլյուցիոն նշանակություն: Փառաբանելով հերոսական անցյալը, պոետը դրանով իսկ ձգտում է իր ժամանակակիցներին մղել ազատագրական պայքարի, ընդդեմ ինքնակալական-կալվածատիրական հասարակարգի:

Քառասնական թվականներին ավելի ու ավելի է պայծառանում Շևչենկոյի ռևոլյուցիոն-դեմոկրատական գիտակցությունը: Նրա քաղաքական զարգացման վրա հսկայական ազդեցություն են գործում ռուսական մտավորականության առաջավոր, հեղափոխականորեն տրամադրված ներկայացուցիչները, որոնց հետ նա շփվեց Պետերբուրգում: Եվ այդ չէր կարող չարտահայտվել Շևչենկոյի ստեղծագործության մեջ: Նախորդների հերոսական սխրագործությունները երգելուց բանաստեղծն անցնում է ցարիզմի և կալվածատերերի դեմ ուղղված սատիրային:

Հիանալի, սուր երգիծական «Երազ» («Ամեն մարդ իր բախտն ունի») պոեմում Շևչենկոն պատկերում է Նիկոլայ առաջինի մռայլ ժամանակաշրջանի Ռուսաստանը, վիթխարի մերկացնող ուժով խարազանելով ավանդական-ճորտատիրական հասարակարգի ամբողջ սիստեմը: Երազի մեջ թռչելով լայնարձակ երկրի տարբեր շրջանների վրայով, բանաստեղծը նկարագրում է և՛ ճորտ գյուղի սարսափելի կյանքը, ուր թագավորում են սովը, գյուղացիների իրավազրկությունն ու կալվածատերերի կամայականությունը, և՛ սիբիրյան աքսորը, ուր ավազակների ու չարագործների շրջանում չտեսնված խոշտանգումների են ենթարկվում դեկաբրիստները՝ ազատության անվեհեր մարտիկները, և Պետերբուրգը՝ իր շահամոլ ու կաշառակեր աստիճանավորներով, անխնա մուշտրայի ենթարկվող զինվորներով, և՛ ցարական պալատը, ուր ամեն ինչ ներծծված է կեղծիքով ու ստորաքարշությամբ: Տալով ցարական-կալվածատիրական կամայականությունների դաժան պատկերը, բանաստեղծը կոչ է անում Ռուսաստանում ապրող բոլոր ժողովուրդներին՝ միասնաբար հանդես գալ ընդհանուր թշնամու դեմ:

Այդպիսի կոչ է արվում նաև մյուս երգիծական պոեմում՝ «Կովկաս»-ում: Բանաստեղծը փառաբանում է ժողովրդի անհաղթահարելի ուժը, ժողովուրդ, որին առասպելական Պրոմեթևոսի նման, չեն կարող հաղթել թշնամիները: Պրոմեթևոսի կերպարը պոեմում դա արիության, ըմբոստության և հաղթանակի խորհրդանշանն է:

Շևչենկոն ցարական Ռուսաստանը ցույց տվեց որպես ժողովուրդների բանտ, ուր՝

Եվ մոլդավացուց ֆինները մինչև
Լուռ են բոլորը՝ ողջ լեզուներով...

Պոետը սատիրական մեծ ուժով է մերկացնում եկեղեցին, որն օգնում էր ցարիզմին և կալվածատերերին թալանելու ժողովրդին: Բանաստեղծը սուր քննադատության է ենթարկում ազգային ճնշման քաղաքականությունը:

Կովկասի ժողովուրդների բախտը պոետը կապում է ցարական Ռուսաստանի մյուս ժողովուրդների ճակատագրի հետ: Ամբողջ պոեմը տոգորված է ժողովուրդների եղբայրության և բարեկամության վսեմ գաղափարով:

Ռևոլյուցիոն պայքարի մոտիվները, ինքնակալության տապալման կոչը արտահայտվել են Շևչենկոյի նաև քնարական բանաստեղծություններում, և ամենից առաջ՝ հռչակավոր «Կտակում»՝ իր կրքոտ բացագանչությամբ.

Թաղեցեք ու ելեք ոտքի,
Շղթաները կտրեք,
Եվ թշնամու չար արյունով
Ազատություն ցողեք:

Հարկավոր է պատկերացնել Նիկոլայան դաժան ռեակցիայի ժամանակը, հասկանալու համար, թե «Կտակի» հեղինակը ինչպիսի վիթխարի քաղաքացիական արիություն, ինչպիսի մեծ սեր ուներ ժողովրդի, և այրող ատելություն՝ նրա ճնշողների հանդեպ:

Իզուր չէ, որ ցարիզմն այնպես սարսափում էր Շևչենկոյի ահեղ խոսքից և նրա հետ դաժան դատաստան տեսնում: Առանց քննության ու դատի պոետը՝ «խռովահույզ և ծայրաստիճան հանդուգն բանաստեղծություններ հորինելու համար» աքսորվեց Օրենբուրգի հատուկ կորպուսը՝ որպես շարքային զինվոր: Եվ այդ վճռի վրա Նիկոլայ առաջինն իր ձեռքով գրեց. «Խստագույն հսկողության տակ պահել, արգելելով գրել և նկարել»: Գրչի մի հարվածով դահիճ ցարը Շևչենկոյին զրկեց ոչ միայն ազատությունից, այլև գրողի ու նկարչի համար ամենանվիրական ու թանկ բանից՝ գրելու և նկարելու իրավունքից: «Եթե ես ճիվաղ, արյունարբու լինեի,— գրել է իր օրագրում Շևչենկոն,— ապա այն ժամանակ էլ ինձ համար ավելի հարմար մահապատիժ հնարել չէր կարելի...»: Բայց ըմբոստ Շևչենկոն, չենթարկվեց ցարի վճռին: Օգտագործելով թեկուզ ամենափոքր հնարավորությունը, իրեն մեծ վտանգի ենթարկելով, աքսորում էլ նա շարունակում էր գրել և նկարել:

Աքսորի տասը տարիների ընթացքում Շևչենկոն գրեց բազմաթիվ ոտանավորներ, պոեմներ և վիպակներ: Դրանցից մի քանիսը արտացոլում էին բանաստեղծի վիճակի համար բնական վշտի ու թախծի տրամադրությունները: Բայց պոետի ստեղծագործության հիմնական մոտիվները մնում էին նույնը. սերն առ ժողովուրդ, ատելություն ցարի և կալվածատերերի հանդեպ, հավատ իր գործի հաղթանակի նկատմամբ: Տասը տարվա կյանքի դաժան պայմանները քայքայեցին պոետի առողջությունը, բայց չթուլացրին նրա ռևոլյուցիոն ոգին, չսասանեցին նրա հայացքները:

Աքսորից վերադառնալուց հետո նոր շրջան սկսվեց Շևչենկոյի ստեղծագործության մեջ: Նրա պոեզիայում նոր ուժով հնչեցին և՛ ցասումը ժողովրդի կեղեքիչների դեմ, և՛ ճորտատիրական հասարակարգը տապալելու կոչը: Շևչենկոյի այդ տարիների քաղաքական քնարերգության համար բնորոշ է «Աչքով չտաք՝ ես չեմ հիվանդանում» բանաստեղծությունը, որի մեջ պոետը արտահայտում է այն գաղափարը, որ գյուղացիական «ռևոլյուցիան է ինքնակալության ու ճորտատիրության ոչնչացման միջոցը» և, Չերնիշևսկու նման, ժողովրդին կոչ է անում «կացին վերցնել»: Ժողովրդական ապստամբության և նրա հաղթանակի նկատմամբ խոր հավատով է լի նրա «Այստեղ, ամենուր—վատ է ամեն բան» բանաստեղծությունը, որ գրել է պոետը մեռնելուց քիչ առաջ:

Շևչենկոյի պոեզիայի վրա բարերար ազդեցություն են ունեցել նրա ամենա-

մոտ գաղափարական ընկերները՝ ռուս մեծ ռևոլյուցիոն դեմոկրատներ Գերցենը, Չերնիշևսկին և Դոբրոլյուբովը։ Չերնիշևսկու և Դոբրոլյուբովի հետ նա մտերմացավ իր կյանքի վերջին տարիներին։ Նրանք բարձր էին գնահատում Շևչենկոյի ստեղծագործությունը և նրա ռևոլյուցիոն նպատակասլացությունն ու ժողովրդայնությունը։

«Կոբզարի» 1860 թվականի հրատարակության առթիվ գրած իր գրախոսականում Դոբրոլյուբովն ընդգծում էր, որ ժողովրդայնությունը Շևչենկոյի ստեղծագործության գլխավոր հատկանիշն է։ «Նա ամբողջովին ժողովրդական բանաստեղծ է,— գրել է Դոբրոլյուբովը,— նրա բոլոր շահերը և համակրանքը լիակատար համապատասխանության մեջ են ժողովրդական կյանքի իմաստի և պահանջերի հետ, նա դուրս է եկել ժողովրդի ծոցից, ապրել է ժողովրդի հետ ոչ միայն գաղափարով, այլև կյանքի հանգամանքներով ամուր և սերտ կապված է նրա հետ»։ Ռուս ռևոլյուցիոն-դեմոկրատները հանձին Շևչենկոյի տեսնում էին հանուն Ռուսաստանի բոլոր ժողովուրդների ազատության պայքարի մեծ մարտիկի։

Շևչենկոյի ստեղծագործությունը հերքում է բուրժուական նացիոնալիստների այն հերյուրանքը, թե բանաստեղծին իբր հատուկ էր ազգային սահմանափակությունը։ Շևչենկոյի սուրբ ատելությունը ռուսական ցարիզմի նկատմամբ նրանք ջանում էին ներկայացնել իբրև թշնամանք ռուս ժողովրդի հանդեպ։ Բայց դրանից, իհարկե, ոչինչ դուրս չեկավ և չէր էլ կարող գալ։ Բոցաշունչ հայրենասերը, որ անձնվեր սիրում էր իր Ուկրաինան ու հարազատ ժողովրդին, ինչպես և յուրաքանչյուր հանճարեղ գրող, իսկական ինտերնացիոնալիստ էր։ Գտնվելով աքսորում, նա մոտիկից ծանոթացավ ցարիզմի կողմից ճնշված եղբայրական ժողովուրդների կյանքին, համակվեց խոր համակրանքով նրանց նկատմամբ։ Նրա ստեղծագործություններում, նամակներում, օրագրում շատ ջերմ խոսքեր կան ղազախների, կիրգիզների, ուզբեկների, թուրքմենների մասին։

Մեծ սիրով ու հարգանքով է վերաբերվել Շևչենկոն դեպի ռուս ժողովուրդը, դեպի նրա առաջավոր մշակույթը։ Իր գրական գործունեության սկզբնական շրջանում նա տարված էր Ռիլեևի, Պուշկինի, Լերմոնտովի, Բելինսկու ստեղծագործություններով։ Շևչենկոն բարձր էր գնահատում ռուս մեծ երգիծաբաններ՝ Գոգոլին և Սալտիկով Շչեդրինին։ Ինքը՝ Շևչենկոն երկու գրականությունների գործիչ էր։ Նրա գրական ժառանգության մի էական մասը՝ ինը վիպակ, երկու պոեմ, երկու պիես, օրագրեր — գրված են ռուսերեն։ Պատահական չէ, որ Մաքսիմ Գորկին Շևչենկոյի նշանակությունը տեսնում էր այն բանում, որ նա ոչ միայն ուկրաինական, այլև համառուսական բանաստեղծ էր։

Շևչենկոն գրականության մեծ նորարար էր. նա խիզախորեն դեն նետեց արխաիկ ձևերը, հարստացրեց լեզուն նոր բառերով և դարձվածքներով, որոնք վերցված էին ժողովրդական բանահյուսության անսպառ գանձարանից։ Ուկրաինական նոր գրականության և գրական լեզվի հիմնադիրն էր նա։ Շևչենկոյի ստեղծագործության մեջ ուկրաիներենը հանդես եկավ իր ամբողջ հարստությամբ և բարեհնչունությամբ, իր ողջ ճկունությամբ և գեղեցկությամբ։ Շևչենկոյի լեզուն հանճարեղորեն պարզ է, ճշտորոշ, երաժշտականորեն հնչեղ։

Շևչենկոյի երկերը, որոնք ճշմարտացի և բազմակողմանիորեն արտացոլում են ժողովրդի կյանքը, դասակարգային պայքարը, սոցիալական հարաբերությունները, հաստատեցին ռեալիզմը ուկրաինական գրականության մեջ։ Նրա ստեղծագործության շնորհիվ ուկրաինական գրականությունը մտավ մեծ



գրականությունների շարքը։ Շևչենկոյի դերը ուկրաինական ժողովրդի հոգևոր զարգացման, նրա կուլտուրայի և արվեստի վերելքի մեջ բացառիկ մեծ է։ «Շևչենկոն ամեն ինչ է Ուկրաինայի համար,— գրել է Ավ. Իսահակյանը։— Առանց Ուկրաինայի չի կարելի պատկերացնել Շևչենկոյին և առանց Շևչենկոյի չի կարելի զգալ, հասկանալ Ուկրաինան»։

Շևչենկոյի ստեղծագործությունը հսկայական նշանակություն ունեցավ ինչպես ուկրաինական, այնպես էլ համառուսական ազատագրական շարժման պատմության մեջ, լայնորեն օգտագործվում էր ռևոլյուցիոն պրոպագանդայում։ Երբ 1914 թվականին ցարական կառավարությունն արգելեց Շևչենկոյի ծննդյան 100-ամյակի տոնակատարությունը, Վ. Ի. Լենինը գրեց. «Շևչենկոյին մեծարելու արգելքն այնպիսի սքանչելի, հոյակապ, հազվագյուտ բարեբախտ և հաջողակ միջոց էր կառավարության դեմ ագիտացիա անելու տեսակետից, որ ավելի լավ ագիտացիա պատկերել անգամ չի կարելի...Այդ միջոցից հետո միլիոնավոր և միլիոնավոր «քաղքենիներ» սկսեցին փոխարկվել գիտակից քաղաքացիների և համոզվել այն դարձվածքի ճշմարտությանը, թե Ռուսաստանը «ժողովուրդների բանտ է»» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 20, էջ 265)։

Շևչենկոյի պոեզիան վաղուց արդեն դարձել է տարբեր ժողովուրդների ազգային կուլտուրաների սեփականությունը։ Նա իր ուրույն տեղն է գտել նաև հայ մշակույթում։ Հայ ընթերցողը առաջին անգամ ծանոթացել է Շևչենկոյի ստեղծագործությանը 1897 թվականին, երբ «Բազմավեպ» հանդեսում (որը լույս էր տեսնում Վենետիկում) տպագրվեց հատված «Մարինա-Չերնիցա» պոեմից։ Թարգմանիչ Կ. Կուշներյանը «Բազմավեպի» նույն տարվա մի այլ համարում բանաստեղծի մասին մի ծավալուն հոդված գրեց։ Այնուհետև հայկական մամուլում տարբեր ժամանակներում հրապարակվում են Շևչենկոյի առանձին ստեղծագործությունները։ Ուկրաինական ժողովրդի մեծ զավակի կյանքի ու գործունեության նկատմամբ հետաքրքրությունն ուժեղացավ հատկապես ռուսական առաջին ռևոլյուցիայի ժամանակաշրջանում և, ապա, 1911 թվականին, երբ նշվում էր նրա մահվան հիսնամյակը։

Շևչենկոյի մասին հոդված է գրել հայ ականավոր մարքսիստ, Լենինի զինակից Ս. Սպանդարյանը։ 1914 թվականին «Հասկեր» ամսագրում տպագրվեց Աթ. Խնկոյանի «Անմոռանալի Տարասը» վերնագրով հոդվածը՝ նվիրված Շևչենկոյի ծննդյան 100-ամյակին։

Սովետական իշխանության տարիներին Շևչենկոյի շատ ստեղծագործություններ բազմիցս տպագրվել են սովետահայ պարբերական մամուլում։ Հայպետհրատը երեք անգամ լույս է ընծայել «Կոբզարը»՝ բանաստեղծ Գեղամ Սարյանի թարգմանությամբ։

Այդ ամենը վկայում է, թե ինչպիսի մեծ հետաքրքրություն է ցուցաբերում հայ ժողովուրդը ուկրաինական հանճարեղ բանաստեղծի ստեղծագործության նկատմամբ։ Եվ այդ միանգամայն օրինաչափ է։ «Տարաս Գրիգորևիչ Շևչենկոն,— ասել է Ն. Ս. Խրուշչովը 1939 թվականին Կիևում, բանաստեղծի արձանի բացման ժամանակ,— մոտիկ և թանկ է մեր մեծ հայրենիքի բոլոր ժողովուրդներին այն բանի համար, որ նա իր ստեղծագործություններում արտահայտում էր ոչ միայն ուկրաինական չքավորության խոհերը, այլև բոլոր ազգերի աշխատավորների խոհերը»։

Ահա թե ինչու ուկրաինական ժողովրդի հետ միասին Շևչենկոյի ծննդյան 150-ամյակը մեծ սիրով են նշում սովետական բոլոր ժողովուրդները, ամբողջ առաջադեմ մարդկությունը։

Գ. ԹԱԹՈՍՅԱՆ

# ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ հարցեր

## ՄԻՆՉԵՎ Ե՞ՐԲ...

Կինոարվեստը հազիվ է բոլորել իր 70-ամյակը, սակայն արդեն դարձել է
արվեստներից ամենաճանաչվածն ու ամենամասսայականը: Դեռ ավելին, կի-
նոն այսօր դառնում է ո՛չ միայն միլիոնների արվեստ, այլև արվեստ՝ միլիոն-
ների մասին: Աշխարհում ստեղծվող կինոժապավենների ճնշող մասը պատ-
մում է ոչ թե արտակարգ դեպքերի ու դեմքերի, այլ սովորական, հասարակ մար-
դու ճակատագրի, նրա հույզերի ու մտորումների մասին: Մարդն իր ներքնաշ-
խարհով, բարդ հոգեբանությամբ դառնում է կինոարվեստի հիմնական ա-
ռարկան: Այսօր կինոարվեստն իրավամբ կոչում են «մարդաբանություն»:
Սովետական բազմազգ կինեմատոգրաֆի օղակներից մեկի՝ հայկական
կինոարվեստի 40 տարին է լրանում 1964 թվականին: Չորս տասնամյակ ա-
ռաջ, 1924 թվականին, էկրան բարձրացավ առաջին հայկական դոկումենտալ
նկարը «Խորհրդային Հայաստան» վերնագրով:
Խոսելով հայկական կինոյի այսօրվա վիճակի, նրա ցավերի ու անելիք-
ների մասին, չի կարելի, գոնե համառոտակի, չհիշատակել թե ինչ վաստակ
է ունեցել հայ կինեմատոգրաֆը ոչ հեռու անցյալում:
Երբ հայկական գրականությունն ուներ Թումանյան ու Իսահակյան, Զոր-
յան ու Դեմիրճյան, Տերյան ու Չարենց, հայ թատրոնը՝ Աբելյան ու Փափազ-
յան, հայ կերպարվեստը՝ Սուրենյանց ու Սարյան, երաժշտությունը՝ Սպեն-
դիարյան, իսկ ճարտարապետությունը՝ Թամանյան, Հայաստանում չկար և ոչ
մի կինոապարատ, գոյություն չուներ կինոարվեստ:
Հայկական կինեմատոգրաֆը սովետական կարգերի ծնունդն է: Եվ մեկ
տասնամյակ բավական էր, որ սովետական տարիներին հիմնվեր և հաստատ-
վեր հայ ազգային կինոարվեստը: Այդպես եղավ այն պատճառով, որ նորա-
ստեղծ այդ արվեստը հենվեց հայ թատրոնի ու գրականության հզոր ուսե-
րին: 1925-ից մինչև 1935 թվականը հայկական համր կինեմատոգրաֆը էկ-
րան հանեց 30 նկար, որոնց թվում այնպիսի չգերազանցված գործեր, ինչ-
պիսիք են՝ «Նամուսը», «Զարեն», «Շորն ու Շորշորը», «Խաս-փուշը», «Տունը
հրաբխի վրա», «Մեքսիկական դիպլոմատները», «Կիկոսը» և «Գիքորը»:
Համաշխարհային էկրանում հաստատված էկզոտիկ, զարդարված, խան-
չալի ու յափնջու ռոմանտիկայով տոգորված Արևելքի փոխարեն հայկական
ֆիլմերի միջոցով բացվեց մի այլ Արևելք, իսկական Արևելքը՝ իր սոցիալա-
կան հակասություններով, թշվառների ու հարստահարողների բարդ հարա-
բերություններով, կնոջ դաժան ճակատագրով, անչափահասների ողբերգա-
կան կյանքով: Նամուսի կեղծ հասկացողության զոհերը, կյանքի հատակը
նետված, դաժանությունից գազազած խասփուշները, Բաքվի նավթահանքե-
րում տանջվող բանվորները, խեղճ ու մոլորված գյուղացիները, հուսախաբված



մայրերն ու ադաթի զոհերը բարձրացան էկրան, փոխարինելով կեղծ Արևելքի
հերոսներին, որոնք շատրվանների ափին ղալյան էին ծխում, մետաքսե ու մա-
հուդե զգեստների մեջ լողում, ռահաթ-լոխում ճաշակում, կամ սիրուն կնոջ
համար խանչալ խաղացնում: Հայկական կինոարվեստը առաջին իսկ քայլե-
րից հաստատեց իր ազգային ուրույն դեմքը, մտավ համաշխարհային կինո-
յի պատմության մեջ որպես իրական ու իսկական Արևելքի բացահայտողը:
«Պեպո»-ով սկսվեց հայ կինոարվեստի նոր շրջանը, որն է՛լ ավելի ամ-
րապնդեց ու զարգացրեց առաջին տասնամյակի հաջողությունները: Այժմ
հայկական կինոաշխատողներն իրենց ուշադրությունը կենտրոնացրին ռևո-
լյուցիոն դեպքերի, սովետական կարգերի հաստատման համար ժողովրդի
մղած պայքարի վրա: «Կարո» և «Զանգեզուր», «Սևանի ձկնորսներ» և «Լեռնա-
յին արշավ», ահա հայ լավագույն պատմա-ռևոլյուցիոն ֆիլմերը, որոնց հե-
րոսները դարձան հազարավոր ու միլիոնավոր հանդիսատեսների սիրելիները:
Իր գոյության երկրորդ տասնամյակում էլ հայկական կինոարվեստը գրավեց
իր ուրույն ու պատվավոր տեղը սովետական ու համաշխարհային կինեմա-
տոգրաֆում: Բավական է ասել, որ «Պեպո» կինոֆիլմը, շրջելով Սովետական
Միության բոլոր և աշխարհի տարբեր երկրների էկրանները, ամենուրեք ար-
ժանացավ բարձր գնահատականի:
Երկու տասնամյակի ընթացքում հայկական կինեմատոգրաֆը ստեղծեց
50 գեղարվեստական և 70 դոկումենտալ ֆիլմ, որոնք համոզիչ ապացույցը
եղան հայ կինոարվեստի լինելիության:
Դրությունը փոխվեց պատերազմից հետո ընկած ժամանակաշրջանում:
Տասը տարվա ընթացքում (1945—1954 թթ.) նկարահանվեցին ընդամենը 2
լիամետրաժ և 6 կարճամետրաժ գեղարվեստական ֆիլմ: Ահա այս տարիներին
էր, որ հայ կինոաշխատողները կորցրին շատ բան՝ և՛ պրոֆեսիոնալ կարողու-
թյուն, և՛ վարպետություն, և՛ գեղարվեստական ճաշակ, և՛ կինոարվեստի
սպեցիֆիկայի հասկացողություն, և՛ ազգային ինքնատիպություն: Արվեստի
ասպարեզում անհատի պաշտամունքի ներգործությունն ամենից ուժգին ար-
տահայտվեց կինեմատոգրաֆում: Բանը հասավ նրան, որ 1949—1959 թվա-
կաններին Սովետական Միության բոլոր ստուդիաները արտադրում էին տա-
րեկան մեկ տասնյակից պակաս կինոնկարներ: Իսկապես դժվար է պատկե-
րացնել, թե ինչով կվերջանար այդ բոլորը, եթե ՍՄԿՊ XX համագումարը նոր
ուղիներ չբացեր սովետական հասարակության առջև: Խիստ բնորոշ է, որ հա-
մագումարից հետո ընկած ժամանակաշրջանի միայն 5 տարին տվեցին եր-
կու տասնյակ հայկական գեղարվեստական ֆիլմեր: Այս թվերը վկայում են,
որ պարտիան ու կառավարությունը կինոաշխատողների համար ստեղծեցին
բոլոր պայմանները, որպեսզի կինոարվեստն ընթանա ստեղծագործական լայն
ճանապարհով: Վերջին տարիներին սովետահայ կինոյի ասպարեզում երևացին
նոր երիտասարդ կինոռեժիսորներ, սցենարիստներ, օպերատորներ, նկարիչ-
ներ ու դերասաններ: էկրան բարձրացած ֆիլմերից մի քանիսն արժանացան
դրական, նույնիսկ փայլուն գնահատականների: Դրանցից են՝ «Պատվի հա-
մար», «Ոսկե ցլիկ», «Ամպրոպի արահետով», «Սիրտը երգում է», «Կամո»,
«Կոչված են ապրելու», «Հյուսիսային ծիածան», «Տժվժիկ» ֆիլմերը, որոնք
վկայեցին, որ հայկական կինոարվեստը երկար տարիների անգործությունից
հետո ի վիճակի է ո՛չ միայն վերածնվելու, այլև զարգացնելու իր լավագույն
տրադիցիաները:

Սակայն վերջին ժամանակներս հայկական կինեմատոգրաֆիայում նկատվում են լուրջ թերություններ: Կինոֆիլմ ստեղծողները միշտ չէ, որ պատասխանատվության բարձր գիտակցությամբ են մոտենում կինոարվեստին, որպես գաղափարական, գեղարվեստական ներգործության մեծ ուժի: Այս է պատճառը, որ մեր ստուդիայի թողարկած ֆիլմերի մակարդակը գնալով իջնում է:

ՀԿԿ Կենտկոմի բյուրոն 1962 թվականի սեպտեմբերի 7-ին արձանագրեց, որ վերջին ժամանակներս «Հայֆիլմ» ստուդիան էկրան է բարձրացրել գաղափարական-գեղարվեստական տեսակետից շատ թույլ ֆիլմեր, որոնք արժանացել են հանդիսատեսների արդարացի դատապարտմանը: Այդ ֆիլմերից հատկապես նշվեց «Երբ քեզ հետ են ընկերներդ» (սցենարի հեղինակ Ստուկալով, բեմադրող-ռեժիսոր Գ. Սարկիսով), «Թռիչք անդունդի վրայով» (սցենարի հեղինակ Լ. Կարագյոզյան, բեմադրող-ռեժիսոր Լ. Իսահակյան), «Նրա ֆանտազիան» (սցենարի հեղինակ՝ Կ. Մինց, բեմադրող-ռեժիսոր Ս. Կևորկով), «12 ուղեկիցներ» (սցենարի հեղինակներ՝ Մ. Շաթիրյան, Մ. Օվչիննիկով, բեմադրող-ռեժիսոր Է. Քարամյան):

ՀԿԿ Կենտկոմի բյուրոն իր ընդլայնած նիստում մանրամասն վերլուծության ենթարկեց հայկական կինոարվեստի հետագա զարգացման հարցերը և կարևոր որոշում ընդունեց: Անցել է արդեն մեկ և կես տարուց ավելի, սակայն մինչև օրս էլ ռեալ արդյունքներ չկան, մինչև օրս էլ մեր ֆիլմերի մեծ մասը հիասթափեցնում է հանդիսատեսին:

Ինչո՞ւ է «Հայֆիլմ» կինոստուդիան վատ և միջակ կինոնկարներ թողարկում:

Կան շատ պատճառներ, որոնք խանգարում են լավ ֆիլմեր ստեղծելուն: Կան մեծ ու փոքր, կարևոր և երկրորդական պատճառներ: Ինչ խոսք, որ «Հայֆիլմ» կինոստուդիան պետք է ունենա ուժեղ ղեկավար, որ ստուդիան կարիք ունի նոր շենքի, որ սցենարական բաժինը՝ ստուդիայի ուղեղը, իր բարձրության վրա պիտի լինի: Ճշմարիտ է նաև այն, որ արտադրական կուլտուրան կինոստուդիայում շատ է կաղում, որ աշխատանքը պատշաճ ձևով չի կազմակերպվում: Սրանք հարցեր են, որ սպասում են իրենց լուծմանը: Սակայն բանի էությունը միայն դրանում չէ: Հայկական կինոարվեստի արդի վիճակի հիմնական մեղքն ընկնում է ստեղծագործական աշխատողների՝ սցենարիստների, ռեժիսորների, օպերատորների վրա: Վերջին տարիներին «Հայֆիլմ» կինոստուդիան թողարկել է մոտ չորս տասնյակ ֆիլմեր, որոնցից հազիվ չորսը արժանացան ուշադրության: Այդ մի քանի ֆիլմերն էլ միայն համեմատաբար էին հաջողված, քանի որ դրանցից և ոչ մեկը չարժանացավ միութենական, էլ չենք խոսում՝ միջազգային մրցանակի:

Կինոարվեստը բարդ արվեստ է, այն ստեղծվում է կոլեկտիվ ուժերով: Լավ ֆիլմ ստեղծելու համար հարկավոր է ոչ թե մեկ տաղանդ, ինչպես, ասենք, լավ կտավ, կամ լավ սիմֆոնիա ստեղծելու համար, այլ տաղանդավոր ստեղծագործողների մի խումբ: Ուրեմն, առաջին հերթին անհրաժեշտ է ստեղծագործական կոլեկտիվ: Մինչև որ չլուծվի հայկական կինեմատոգրաֆի ստեղծագործական կոլեկտիվի առողջացման հարցը, դժվար թե կարելի լինի լավ ֆիլմեր ստեղծել:

Հաճախ կարելի է լսել, որ մեր ֆիլմերի թեման արդիական է, որ ցուցադրվող դեպքերն ունեն ակտուալ բովանդակություն: Այդ լավ է, բայց գեղարվեստական ստեղծագործության համար նույնքան անհրաժեշտ է այն, թե գեղարվեստական ինչպիսի միջոցներով է բացահայտված թեման: Արվեստում գաղափարայնությունն ու գեղարվեստայնությունն անբաժանելի են: Եթե բովանդակությունն անկախ լիներ գեղարվեստական ձևից, ապա ավելի դյուրին կլիներ կարդալ այդ թեմայով մի փոքրիկ հոդված, քան դիտել երկու ժամանոց կինոֆիլմ, քանզի հոդվածից էլ կարելի է հասկանալ արծարծված խնդրի բովանդակությունը:



Մեր ֆիլմերի հիմնական թերությունը ո՛չ միայն այն է, որ նրանց թեմաները լայն ու խոր խնդիրներ չեն ընդգրկում, այլև այն, որ եղած բովանդակությունը բավարար գեղարվեստական միջոցներով չի բացահայտվում:

Կինեմատոգրաֆի գեղարվեստական արտահայտչականության միջոցները շատ հարուստ ու բազմազան են. բայց, ցավոք սրտի, այդ ծով հնարավորություններից մեր կինոաշխատողներից շատերը չեն կարողանում օգտվել:

Գեղարվեստական հարցերի քամահրումը, վարպետության և, վերջապես, տաղանդի բացակայությունը արվեստի մեջ հանգեցնում են բովանդակության մակերեսային բացահայտման, այսինքն՝ իլյուստրատիվության, որը և ժամանակակից հայ կինոարվեստի ամենախոցելի տեղն է: Խոսել մեր կինոարվեստի թերությունները վերացնելու ուղիների մասին, կնշանակի խոսել նախ և առաջ իլյուստրատիվությունը հաղթահարելու միջոցների, այսինքն՝ գեղարվեստականության մասին:

Գեղարվեստական ստեղծագործությունը, ինչպես նաև կինոֆիլմի բովանդակությունը, գաղափարը պետք է ունենա իր կերպարը: Հանճարեղ ռեժիսոր, «Զրահանավ Պոտյոմկինի» հեղինակ Սերգեյ Էյզենշտեյնը այդ անվանում էր «բովանդակության կերպար», «թեմայի կերպար»:

Կինեմատոգրաֆիստը, ձեռնարկելով ընտրած թեմային, պարտավոր է ֆիլմի բովանդակությունն արտահայտել ոչ թե դեպքերի արձանագրական վերարտադրությամբ, այլ պատկերավոր ձևով: Սրան հասնելու ուղիները բազմազան են և ընդգրկում են հեղինակի, ռեժիսորի, օպերատորի, դերասանի ու նկարչի աշխատանքը: Սակայն այս բոլորի ղեկավարն է կինոռեժիսորը, որն ի մի է հավաքում, օրգանապես շաղկապում բոլորի ստեղծագործական ջանքերը: Ահա թե ինչու կինոռեժիսորի տաղանդով, նրա պրոֆեսիոնալ պատրաստականությամբ ու վարպետությամբ է գլխավորապես պայմանավորված ֆիլմի հաջող կամ անհաջող լինելը: Կինոռեժիսորը կինոարվեստում վճռող դեր է կատարում: Ռեժիսորը ֆիլմի իսկական հեղինակն է: Այդպիսին են եղել Չառլի Չապլինը, Էյզենշտեյնը, Պուդովկինը, Ռոմմը, Բեկնազարյանը, այդպիսիք են և ժամանակակից լավագույն ֆիլմերի ռեժիսորները: Ի դեպ, հայկական կինոարվեստի ամենաթույլ օղակը հենց կինոռեժիսուրան է: Մեր կինոռեժիսորներից շատերը հաճախ ի վիճակի չեն ո՛չ միայն բարդ գեղարվեստական խնդիրներ լուծելու, այլև ստեղծելու պրոֆեսիոնալ ընդունելի մակարդակով ֆիլմ:

Սակայն նույնիսկ պրոֆեսիոնալության առկայության դեպքում կաղում է գեղարվեստական, պատկերավոր ռեժիսորական մտածողությունը: Այս միտքը պարզաբանենք կոնկրետ օրինակներով: «Չապաև» կինոֆիլմում կա մի տեսարան, ուր Չապաևը ջանում է հասկացնել ռազմական մի խնդիր. նա չի կարողանում այդ անել խոսքով և դիմում է... կարտոֆիլների: Ով տեսել է սովետական այդ հոյակապ ֆիլմը, դժվար թե մոռանա այս դրվագը: Չապաևը կարտոֆիլները դասավորում է սեղանի վրա այնպես, ինչպես կդասավորեր

զորքը ռազմադաշտում։ Կինոռեժիսորներ Վասիլևները այստեղ հասել են մտքի պատկերավոր դրսևորման։ Հիշենք «Պեպո» ֆիլմի այն դրվագը, ուր «Դարչոն Կեկելին պաչիլ ա» լուրն է տարածվում քաղքենիական Թիֆլիսով մեկ։ Դրվագն սկսվում է եկեղեցու ներսում, որտեղ Կեկելի ընկերուհին հայտնում է նրան այն մասին, որ Դարչոն հրաժարվել է իր խոստումից։ Կամաց-կամաց եկեղեցին լցվում է բամբասողների շշուկով, էկրանի վրա երևում են դեմքեր՝ պառավների ու ջահելների. տգեղ ու գեղեցիկ այդ դեմքերը չարակամություն, հրճվանք, կարեկցանք, վիշտ, անտարբերություն են արտահայտում։ Հետո ռեժիսոր Բեկնազարյանն ու օպերատոր Ցելդմանը, կարծես զայրացած այս անմարդկային վերաբերմունքից, դուրս են բերում Կեկելին եկեղեցուց և այստեղ սկսվում է հոյակապ մի կինոմատոգրաֆիկ մոնտաժ. խեղճ Կեկելը հազիվ է քայլում վշտից, ամոթից ու հուզմունքից, իսկ ապարատը դիպչում է մեկ այս պատուհանին, մեկ մյուս, «վազում է» հին Թիֆլիսի նեղլիկ փողոցներով, կանգ առնում. փայտե պատշգամբներում և ամենուրեք կանայք բամբասում են՝ «Դարչոն Կեկելին պաչիլ ա»։ «Կատաղի» մոնտաժ, որը պատկերավոր կերպով արտահայտում է ո՛չ միայն կոնկրետ բովանդակությունը, այլև ֆիլմի հեղինակների վարակիչ զայրույթը։

Յու. Ռայզմանի «Կոմունիստ» ֆիլմում գտնված են այնպիսի արտահայտիչ դրվագներ, ինչպիսիք են՝ «անտառահատումը» և «Գուբանովի գնդակահարությունը»։ Վերհիշենք այդ դրվագներից առաջինը։ Մթերքով բեռնված գնացքը վառելիք չլինելու պատճառով մնում է կես ճանապարհին։ Շոգեքարշի բրիգադը ոչ մի քայլի չի դիմում գնացքը տեղից շարժելու համար, թշնամաբար տրամադրվածները նույնիսկ ուրախ են։ Եվ ահա կոմունիստ Գուբանովը, կացինը ձեռքն առած, մտնում է անտառ։ Կտրում մեկ, երկու, երեք, չորս ժամ... Կտրում է աններևակայելի համառությամբ։ Օրը մթնում է, իսկ կոմունիստը գերմարդկային ջանքերով կտրում է ու կտրում։ Մենք տեսնում ենք բրիգադի մարդկանց դեմքերը։ Նրանք սկզբում չարամիտ ժպտում են, հետո լրջանում, զարմացած իրար նայում, ոմանք ամաչում են, ոմանք վախեցած են։ Իսկ անտառից լսվող ռիթմիկ հարվածների ձայնը կարծես կշտամբում է նրանց։ Եվ կոմունիստը հաղթում է... մեկը մյուսի հետևից մարդիկ մոտենում են Գուբանովին և սկսում աշխատել։ Այս սքանչելի դրվագում իշխում է պատկերավոր մտածողությունը։

Ահա այս պատկերավորությունն է, որ պակասում է հայկական շատ ֆիլմերին։ Պատկերավոր մտածողությունն, իհարկե, ինքնանպատակ չէ, այլ միայն միջոց բովանդակությունը, գաղափարը բացահայտելու համար։ Ժամանակակից կինոարվեստն ավելի ու ավելի խոր է թափանցում մարդու ներքնաշխարհը, ջանում է արտացոլել երևույթների ներքին իմաստը։ Այս կապակցությամբ ավելի ու ավելի ակներև է դառնում թեմայի պատկերավոր լուծման նշանակությունը։

Պատկերավոր պիտի լինեն ո՛չ միայն ֆիլմի սյուժեն, առանձին դրվագները, այլև ամեն մի կադր։ Կինոկադրը մեծ օրգանիզմի՝ կինոնկարի սկզբնական բջիջն է։ Կադրն այն աղյուսն է, որոնց հանրագումարից կառուցվում է կինոստեղծագործության մեծ շենքը։ Ահա թե ինչու պատկերավոր, կինեմատոգրաֆիական արտահայտությունը հենց կադրի մեջ արդեն ձեռք է բերում մեծ կարևորություն։ Դիմենք էկրանին։ «Պատվի համար» կինոնկարի սկզբում հայտնի է դառնում, որ Էլիզբարյանի «բախտը» բացվել է։ Նավթի շատրվան է



խփել. Լուրն ուրախացրել է Անդրեաս Էլիզբարյանին, և նա կառքով սլանում է նավթահանքերը։ Կադրի միտքը, բովանդակությունը հասկանալի են։ Բայց, եթե ռեժիսոր Ա. Հայ-Արտյանը չգտներ այդ մտքի պատկերավոր կինեմատոգրաֆիկ լուծումը, կադրը արձանագրության նման չոր կլիներ։ Ահա այդ դետալը՝ կանգնած է կախարդված Էլիզբարյանը և նայում է ծովացող նավթին. Հետո նա կռանում է, ձեռքը թաթախում «սև ոսկու» մեջ, մի բուռ նավթ առնում, մոտեցնում ռունգերին։ Մենք տեսնում ենք Էլիզբարյան-Ներսիսյանի դեմքը և սև նավթի մեջ թաթախված ձեռքը խոշոր պլանով, տեսնում ենք այդ մարդու աչքերը, նավթոտ ձեռքը և, իհարկե, ավելի ուժգին է տպավորվում կադրի բովանդակությունը։

Նման օրինակներ կարելի է բերել «Սիրտը երգում է», «Կոչված են ապրելու», «Հյուսիսային ծիածան», «Արևածագից առաջ» ֆիլմերից։ Սակայն հայկական կինոնկարների մեծագույն մասում գործողությունը, բովանդակությունը մնում են արձանագրային վերարտադրության սահմաններում, ուստի և չունեն հուզական ներգործություն, այսինքն՝ փաստորեն չկա գեղարվեստորեն բացահայտված բովանդակություն։

Այժմ կինոարվեստը, ապրելով իր հասուն շրջանը, ավելի ու ավելի է հեռանում թեմայի իլյուստրատիվ լուծումից, որոնելով երկի գաղափարն արտահայտելու նոր, պատկերավոր միջոցներ։ Նման ստեղծագործական որոնումներն են, որ բացակայում են հայկական կինոարվեստում։ Շաբլոն դարձած ու վաղուց մաշված գեղարվեստական միջոցներով են «կերակրում» մեր ռեժիսորները հանդիսատեսին, որն արդեն չի ընդունում միջակ որակի ֆիլմը, ուզում է տեսնել էկրանում իրականության պատկերավոր, գեղարվեստորեն մարսված արտացոլումը։

Վերջին շրջանի հայկական ֆիլմերի էական թերություններից է նաև այն, որ նրանց ազգային ինքնատիպությունը գունազերծվել է, որը հատկապես նկատվում է արդիական թեմայով մի շարք նկարներում։ Մինչդեռ հայտնի է, որ առավել մեծ ճանաչում և ընդունելություն ունեն այն ֆիլմերը, որոնցում սոցիալիստական բովանդակությունը գեղարվեստորեն մարմնավորվում է ազգային ձևի մեջ։ Բանը նրանումն է, որ «Հայֆիլմի» շատ ստեղծագործողներ չգիտեն մեր ժողովրդի անցյալն ու ներկան, չեն ապրում մեր օրերի հերոիկայով և, հասկանալի է, փոխանակ գեղարվեստական արտահայտչականության ձևերն ու եղանակները քաղեն կոնկրետ իրականությունից, դիմում են ստերեոտիպին։ Բանը հասել է այնտեղ, որ վերջին շրջանում ռեսպուբլիկայի լավագույն դերասաններին ավելի ու ավելի սակավ ենք տեսնում էկրանի վրա։ Մեր կինոռեժիսորները գերադասում են որոնել իրենց ֆիլմերի դերակատարներին Սովետական Միության բոլոր քաղաքներում, բայց ոչ ռեսպուբլիկայի բազմաթիվ թատրոններում։ Ռեժիսորներից ոմանք ասում են, թե թատրոնի դերասանը լավ չի խաղում կինոյում։ Նման կինոռեժիսորներին արժե մեկ անգամ ևս հիշեցնել նշանավոր դերասան և ռեժիսոր Ալեքսեյ Դիկիի խոսքերը. «Պետք է շատ ձեռքից գնացած կինոռեժիսոր լինել հիասթափվելու համար թատերական տաղանդավոր դերասանից, ասելով՝ սա կինոյի համար չէ»։ Այդ «ձեռքից գնացած» կինոռեժիսորներին ենք «պարտական», որ Արուս Ոսկանյանը, Վահրամ Փափազյանը, Արմեն Արմենյանը, Օլգա Գուլազյանը, Գուրգեն Ջանիբեկյանը, Ցոլակ Ամերիկյանը, Լևոն Ջոհրաբյանը և շատ ուրիշ տաղան-

*դավոր հայ դերասան-դերասանուհիներ էկրան չբարձրացան, կամ երևացին մեկ-երկու ֆիլմերում միայն։*

*Հայկական կինոարվեստի հաջողությունները սերտորեն կապված են եղել հայ գրականության լավագույն ստեղծագործությունների հետ։ Բայց չգիտես ինչու մինչև օրս էլ էկրան չեն բարձրացել Դեմիրճյանի ու Զորյանի, Նաիրի Զարյանի ու Գուրգեն Մահարու և մյուս տաղանդավոր գրողների երկերը։ Հայաստանի Գրողների միությունը և «Հայֆիլմ» ստուդիան համարյա ոչինչ չեն անում տաղանդավոր գրողներին, հատկապես գրական երիտասարդությանը կինոյի աշխատանքներում ներգրավելու ուղղությամբ։ Այդ է պատճառը, որ հրապարակի վրա չկան մեր ռեսպուբլիկայի բազմաբովանդակ կյանքն արտացոլող, գաղափարապես և գեղարվեստորեն բարձր սցենարներ։*

*Անցյալ տարի Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմն անցկացրեց սովետահայ կինոարվեստի հետագա զարգացման հարցերին նվիրված խորհրդակցություն, որտեղ սուր քննադատության ենթարկվեց «Հայֆիլմ» ստուդիայի ղեկավարության աշխատանքը։ Բայց մինչև օրս էլ գործը տեղից չի շարժվում։ Մինչև ե՞րբ «Հայֆիլմ» ստուդիան պետք է թողարկի գորշ, գեղարվեստորեն թույլ կինոնկարներ։*

*Վերջերս ռեսպուբլիկայում կազմակերպվեց կինեմատոգրաֆիայի պետական կոմիտե, որի առջև լուրջ խնդիրներ են դրված։ Ինչպես ՀԿՊ XXIII համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ նշեց ընկեր Յա. Ն. Զարոբյանը, կինեմատոգրաֆիայի պետական կոմիտեն «պետք է գործն այնպես կազմակերպի, որ միավորելով կինոյի, գրականության, երաժշտության և արվեստի մյուս գործիչների ստեղծագործական ջանքերը, ավելի արագ հաղթահարի մեր կինոյի ետ մնալը»։*

*Հայկական կինոարվեստը կարիք ունի արմատական վերակառուցման, և այդ գործում չպետք է հապաղել։*

**Ս. ՌԻԶԱԵՎ**
**Արվեստագիտության թեկնածու**



## ԳՐԱԴԱՐԱՆԱՅԻՆ ՀՈԳՍԵՐ

*Գիրքը մարդու լավագույն բարեկամն է, նրա խորհրդատուն, նոր գիտելիքների ձեռքբերման աղբյուրը։ Դրանով է պայմանավորված այն մեծ սերը, որ մեզ մոտ տածում են դեպի գրահրատարակչությունը։ Միլիոնավոր տպաքանակով են լույս աշխարհ գալիս գրքերը մեր երկրում, նրանք հարստացնում են քաղաքացիների անձնական գրադարանները, նպաստելով նրանց հոգևոր զարգացմանը։ Բայց որքան էլ մեծանա անձնական գրադարանների և նրանցում ամփոփված գրքերի քանակը, այդ ճանապարհով մասսայական պահանջարկի բավարարման չես հասնի։ Գրքերի, պարբերական մամուլի հասարակական օգտագործման առավել ճկուն ու կազմակերպված ձևը մասսայական գրադարանների ցանցն է, որն անհրաժեշտ է անընդհատ ընդլայնել, ավելի ու ավելի լավ հիմքերի վրա դնել նրանց գործունեությունը։*

*Գրադարանային հիմնարկները կոչված են գրականության ընտրության, գրքի ակտիվ պրոպագանդման, ընթերցանության ղեկավարման և մասսայական միջոցառումների շնորհիվ նպաստելու աշխատավորների կոմունիստական աշխարհայացքի ձևավորմանը, նրանց գիտելիքների հարստացմանը, կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացմանը։ «Առաջին հայացքից համեստ է գրադարանավարի դերը,— ասաց Լ. Ֆ. Իլյիչովը ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումում,— սակայն նրանից որքա՜ն շատ բան է կախված մարդկանց դաստիարակության գործում։ Ինչ գիրք նա կհանձնարարի, ինչի մասին և ինչպես կվրուցի ընթերցողի հետ, արդյոք ընթերցողների կոնֆերանս կանցկացնի, սրանք բոլորը ոչ թե տեխնիկական, այլ գաղափարական մեծ հարցեր են»։*

*Գրադարանային աշխատողները հսկայական փորձ են կուտակել գիրքը արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրության, գիտության, տեխնիկայի, արվեստի և գրականության առաջադիմության, ուսուցման նպատակին ծառայեցնելու բնագավառում։ Գնալով ավելի է ակտիվանում հասարակայնության մասնակցությունը գրադարանային գործին։ Երևան են եկել գրքի հասարակական պրոպագանդայի հարյուրավոր օգնականներ՝ բժիշկներ և ուսանողներ, դասատուներ ու տնային տնտեսուհիներ, գիտնականներ ու բանվորներ, որոնք գրադարաններին առընթեր խորհուրդներում շնորհակալ աշխատանք են կատարում աշխատավորների գրադարանային սպասարկման կուլտուրայի բարձրացման գործում։ Ներկայումս ռեսպուբլիկայի քաղաքներում, ավաններում և գյուղերում հասարակական հիմունքներով գործում են տասնյակ գրադարաններ ու առանձին տածքակետեր։*

*Չնայած ազգաբնակչության գրադարանային սպասարկման գործում նըկատվող ակներև հաջողություններին, բայց և այնպես գրադարանների գործունեության մակարդակը չի համապատասխանում ժամանակի պահանջներին։*

Դրան հասնելու համար նախ անհրաժեշտ է ճիշտ տեղաբաշխել գրադարանները ու կոմպլեկտավորել գրականությունը, բարելավել կադրերի պատրաստման և գրադարանային գործի ղեկավարությունը։

Նորմալ երևույթ չէ, երբ ռեսպուբլիկայում գրադարաններ ունեցող առանձին կազմակերպություններ դրանց կազմակերպման ու տեղաբաշխման գործում երբեմն հանդես են բերում նեղ, գերատեսչական մոտեցում։ Մի՞թե կարելի է նորմալ համարել, երբ Երևանի քաղաքային (մասսայական և մանկական) գրադարանները մեծ մասամբ տեղադրված են քաղաքի կենտրոնական մասում, այն էլ իրար շատ մոտ։ Այսպես. Երքաղսովետի գործկոմի կուլտուրայի բաժնի №№ 20, 23 քաղաքային, Խնկո-Ապոր անվան մանկական ռեսպուբլիկական № 2 մանկական գրադարանները գտնվում են մի քանի հարյուր մետր հեռավորության վրա։ Այդ նույն հատվածում են գտնվում նաև ՀԿՊ Կենտկոմի և Երքաղկոմի քաղաքական լուսավորության և ուսուցիչների տների հարուստ գրադարանները, ինչպես նաև մի շարք դպրոցական ու գիտա-հետազոտական կազմակերպությունների և ինստիտուտների գրադարանները։ Մայրաքաղաքի Հոկտեմբերյան պողոտայում կողք-կողքի տեղակայված են երեք մասսայական գրադարան։ Նման օրինակներ կարելի է բերել ռեսպուբլիկայի մյուս քաղաքներում և շրջաններում գործող գրադարանային ցանցից։

Գրադարանային ցանցի նման տեղակայումը, նրանց գործունեության զուգահեռականությունը հնարավորություն չեն տալիս ռացիոնալ կերպով օգտագործելու գրքային ֆոնդը։ Ուստի ժամանակն է լրջորեն խորհելու յուրաքանչյուր բնակավայրի միմյանցից ոչ հեռու գտնվող զանազան գերատեսչությունների մանր գրադարանները միավորելու մասին, իսկ որտեղ բնակչության թիվը մեծ չէ, գոյություն ունեցող հաստիքների և դրամական միջոցների սահմաններում կազմակերպել կենտրոնական գրադարանի ճյուղեր (ֆիլիալներ), իսկ առանձին օբյեկտներում գրքատածքակետեր՝ այդ աշխատանքներին մասնակից դարձնելով հասարակայնության լայն շրջաններին։ Ռեսպուբլիկայի խոշոր քաղաքներում կարելի է կազմակերպել շրջանային (զոնալ) խոշորացված հենակետային գրադարաններ, իրենց մասնաճյուղերով, որտեղ լայն հնարավորություններ կստեղծվեն առանց ձգձգման և անհիմն մերժումների լիովին բավարարելու ընթերցողների ամենատարբեր խմբերի պահանջները։

Գրադարանային գործում գրքային ֆոնդերի ձեռքբերումն ու կոմպլեկտավորումը չափազանց կարևոր գործ է։ Այդ նշանակում է՝ գրականության հասարակական լայն օգտագործման համար կատարել գրքերի պլանաչափ ընտրություն, պատշաճ ձևով կազմակերպել ընթերցողների սպասարկումը, ըստ գրադարանի պրոֆիլի ձեռք բերել անհրաժեշտ բոլոր հրատարակությունները։

Հայտնի է, որ գրքերի ֆոնդերի կոմպլեկտավորումը հիմնականում կատարվում է գրադարանային կոլեկտորի միջոցով։ Դա նախ և առաջ հնարավորություն է ընձեռում գրքային ֆոնդերը ժամանակին և պլանաչափ կերպով համալրելու հրատարակվող հիմնական գրականությամբ և կոմպլեկտավորման գործում խուսափելու չարաշահումներից։ Սակայն փորձը ցույց է տվել, որ ռեսպուբլիկայի 2600 գրադարաններից միայն 1800-ն են օգտվում գրադարանային կոլեկտորից։ Մյուսների ֆոնդերի կոմպլեկտավորումը կատարվում է ինքնահոսի կարգով, ոչ պարբերաբար, որի հետևանքով այդ գրադարանները



զրկվում են հրատարակված գրքերի ճիշտ ընտրությունից և պլանաչափ համալրումից։

Գրադարաններ ունեցող շատ կազմակերպությունների ղեկավարներ (սովխոզներ, դպրոցներ և այլն) մեծ դժկամությամբ են բաց թողնում գրականության համար նախատեսված գումարները և մինչև իսկ տնտեսական տարվա վերջին օրերին, առանձին դեպքերում, իրենց քմահաճույքով են գրքեր «ընտրում»։ Այդպիսի պայմաններում գրադարանավարները հնարավորություն չունեն գրախանութներից ձեռք բերելու անհրաժեշտ գրականություն և գրքերի պատշաճ ընտրություն կատարել։

Մյուս հարցը ոչ պրոֆիլային, տարիների ընթացքում կատարված մեծ թվով ավելորդ, հնացած գրականության առկայությունն է մեր բազմաթիվ գրադարաններում, կամ տարբեր տարիների նույնատիպ հրատարակությունների, կրկնօրինակների կուտակումը, և դա այն դեպքում, երբ նոր ստացվող գրականության համար տեղ չկա։ Գաղտնիք չէ, որ գրադարանների նյութատեխնիկական բազան շատ թույլ է։ Բնականաբար հարց է առաջ գալիս, արդյոք նպատակահարմա՞ր է շրջանառության մեջ թողնել 1921—1955 թթ. լույս տեսած գիտության, տեխնիկայի, կուլտուրայի վերաբերյալ գրքերի ու բրոշյուրների կրկնօրինակները (որոշ խոշոր գրադարաններում դրանք, անշուշտ, կպահպանվեն)։

Տարբեր կազմակերպությունների գրադարանների սխալ կոմպլեկտավորումը հանգեցրել է այն բանին, որ մի գրադարանում կուտակվել են նույն գրողի ստեղծագործությունների բոլոր հրատարակությունների մի քանի տասնյակ օրինակներ, իսկ մի այլ գրադարանում դրանցից ոչ մեկը չկա. այսպես, օրինակ, Երևանի նուրբ բրդյա գործվածքեղենի-մահուդի կոմբինատի գրադարանում «ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը» գրքից կա մեկ օրինակ, իսկ դրան կից № 20 պրոֆ-տեխնիկական ուսումնարանի գրադարանում՝ 100։ Կամ Ալավերդու մանկական գրադարանում Վ. Անանյանի «Սևանի ափին» գրքից կա 18 օրինակ, իսկ Ախթալայի հանգստյան տան գրադարանում՝ մեկ և այլն։

Մեզ մոտ արդեն հասունացել է գրքափոխանակության հարցը և անհրաժեշտ է այն արագ լուծել։ Մեր կարծիքով, կուլտուրայի մինիստրության սիստեմում գործող գրադարանների ֆոնդերը համալրելու նպատակով հնարավոր է Ալ. Մյասնիկյանի անվան և Խնկո-Ապոր անվան մանկական գրադարաններին կից ստեղծել ռեսպուբլիկական, իսկ քաղաքային և շրջանային գրադարաններին կից՝ քաղաքային ու շրջանային կենտրոնական գրքափոխանակման ֆոնդեր։ Գրադարանները պետք է առանձնացնեն իրենց ֆոնդերում առկա հրատարակությունների կրկնօրինակները և դրանք փոխանակեն գրադարանում բացակայող գրքերի հետ. այդ եղանակով նրանք լրացնում են գրականության ֆոնդը՝ առանց պետական միջոցները ծախսելու։ Նույն ձևով կարելի է կազմակերպել գիտությունների ակադեմիայի, ուսումնական հաստատությունների, արհմիությունների սիստեմում գործող գրադարանների ֆոնդերի փոխանակությունը։ Այդ հնարավորություն կտա խնայելու հսկայական միջոցներ և բավարարելու ընթերցողների տարբեր խմբերի պահանջը։

Գրականության նկատմամբ աշխատավորների աճող պահանջների բավարարման գործին խանգարում է գերատեսչական մասնատվածությունը՝ գրքերի մշակման և դասակարգման աշխատանքներում։ Հրատարակվող գրքերի ճիշտ

մշակման և դասակարգման համար կարևոր նշանակություն ունեն գրքերի տպագիր քարտերը։ Ռուսերեն հրատարակությունների համար այդպիսի քարտեր կազմում է Վ. Ի. Լենինի անվան պետական գրադարանը, իսկ միութենական ռեսպուբլիկաներում՝ պետական գրապալատները կամ ռեսպուբլիկական գրադարանները։ Տպագիր կատալոգային քարտերը բազմացվում և կոմպլեկտներով ուղարկվում են գրադարաններին։ Առանձին կազմակերպությունների գրադարաններ գրականության ֆոնդերի սակավության, ոչ պրոֆիլային կոմպլեկտավորման, միջոցների բացակայության և այլ պատճառներով դրանք չեն ստանում։ Հետևանքը լինում է այն, որ այդ գրադարաններում գրքերի մշակման, դասավորման, գրականության հանձնարարական մատենագիտական քարտարանների կազմման գործում նկատվում են անթույլատրելի տարատեսակություն, գրադարանավարների ավելորդ, անիմաստ աշխատանք, իսկ ամենակարևորը՝ դժվարանում է ընթերցողների պահանջների բավարարումը։ Հաճախ գրքերի դասավորման պատճառով ընթերցողները ժամեր են կորցնում ցանկացած գիրքն ընտրելու համար, կամ նրանց պահանջը մերժվում է։ Աշխատանքի այդպիսի վիճակը տեղիք է տալիս արդարացի բողոքների։ Դրությունը կփոխվի, եթե բոլոր գրադարաններն ստանան տպագիր կատալոգային քարտեր։

Գործին զգալի չափով խանգարում է այն հանգամանքը, որ ՀՍՍՌ գիտությունների ակադեմիայի, Երևանի պետական համալսարանի, Հայպետուսմանկհրատի և մի քանի այլ հրատարակչություններ չեն կենսագործում վերադաս կազմակերպությունների որոշումները՝ գրքերը անոտացիաներով և գրադարանային դասակարգման նիշերով հրատարակելու մասին, մի բան, որ շատ կօգներ թե՛ գրադարանավարներին և թե՛ ընթերցողներին։

Կարծում ենք, որ մամուլի պետական նորաստեղծ կոմիտեն պատշաճ ձևով կկազմակերպի այդ գործը, որը մեծ օգնություն կլինի գրադարանային աշխատողներին, հնարավորություն կտա ընթերցողներին, առանց ավելորդ ժամավաճառության, ստանալու անհրաժեշտ գիրքը։

Աշխատավորների գրադարանային սպասարկման թերություններից մեկն էլ կադրերի պատրաստման, ընտրության և տեղաբաշխման հարցն է։ Ռեսպուբլիկայում գրադարանային աշխատանքի համար կադրեր են պատրաստում Երևանի պետական համալսարանը և ակումբա-գրադարանային տեխնիկումը։ Համալսարանի բանասիրական ֆակուլտետին կից գործում է հեռակա գրադարանային բաժին, որն ամեն տարի տալիս է մոտ 30 շրջանավարտ, այդքան էլ տալիս են տեխնիկումի ստացիոնար և հեռակա բաժինները։ Սակայն պետք է նշել, որ այդ բաժիններում սովորողների շարքում գրադարանային աշխատողները կազմում են միայն 60 տոկոսը։ Իսկ ինչպես են տեղաբաշխվում այդ կադրերը։

Հայկական ՍՍՌ կուլտուրայի և լուսավորության մինիստրությունները, տեղական օրգանները, ՀԱՄԽ-ի կուլտուրայի բաժինը և մյուս կազմակերպությունները վատ են զբաղվում գրադարանային կադրերի տեղաբաշխմամբ ու ընտրությամբ։ Բարձրագույն և, հատկապես, գրադարանային մասնագիտությամբ ավարտած ընկերներից շատերը չեն աշխատում. նրանց տեղերը բռնել են գրադարանային կրթություն չունեցող, իրենց գործը չսիրող մարդիկ։ Օրինակ՝ կուլտուրայի մինիստրության սիստեմում գործող 690 մասսայական գրադարաններում 1962 թ. աշխատում էին 1107 մարդ, որոնցից բարձրագույն մասնագիտական կրթություն ունեին 59, միջնակարգ մասնագիտական՝ 260 մարդ։



Գիտությունների ակադեմիայի սիստեմում գործող 20 գրադարաններում աշխատում են 130 մարդ, որոնցից 21-ը բարձրագույն, 2-ը միջնակարգ մասնագիտական կրթությամբ։ Արհմիութենական գրադարանների 92 աշխատողներից միայն երեքն ունեն բարձրագույն և 9-ը միջնակարգ մասնագիտական կրթություն։ Նույն վիճակն է նաև լուսավորության մինիստրության գրադարանային ցանցում և այլ կազմակերպություններում։

Տեղական առանձին պարտիական ու սովետական կազմակերպություններ հոգ չեն տանում գրադարանները գործիմաց կադրերով ապահովելու մասին։ Թվում է, որ բոլոր տիպի գրադարաններում էլ, անկախ նրանց գերատեսչական պատկանելությունից, աշխատողների նշանակումը, գրադարանների բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատություններում սովորողների ընդունումը պետք է անպայման համաձայնեցվի կուլտուրայի մինիստրության և նրա տեղական օրգանների հետ, որոնք կոչված են իրականացնելու գրադարանային գործի պետական վերահսկողությունը։

Լուրջ պակասություն է և այն, որ շատ գրադարանային հիմնարկներ, հատկապես գյուղական վայրերում, զուրկ են տարրական հարմարություններից, նույնիսկ չունեն իրենց շենքը։ Աշխատանքային ծանր պայմաններում են՝ Ալ. Մյասնիկյանի անվան պետական ռեսպուբլիկական, Երևանի Ավ. Իսահակյանի անվան քաղաքային կենտրոնական, Խնկո-Ապոր անվան մանկական ռեսպուբլիկական, Բասարգեչարի, Ապարանի շրջանային, Ախուրյանի՝ Կապս, Սևանի՝ Ծովագյուղ, Ապարանի՝ Ախուլա և շատ ուրիշ գյուղերի գրադարաններ։

Ալ. Մյասնիկյանի անվան պետական ռեսպուբլիկական գրադարանի գրքային ֆոնդն այժմ հասնում է մոտ 5 միլիոնի։ Գրադարան են հաճախում տարեկան 220 հազար մարդ, գրադարանից օգտվում են ավելի քան 13 հազար ընթերցողներ, որոնք յուրաքանչյուր տարի վերցնում են մոտ մեկ միլիոն գիրք։ Ընթերցողներին տարբեր խմբերի գրականության վերաբերյալ տարեկան տրվում է մոտ 30 հազար գրավոր և բանավոր մատենագիտական տեղեկանք։ Սակայն գրադարանի շենքի փոքրության պատճառով գրականության մի մասն անսիստեմ թափված է գրապահոցների հատակին, իսկ մոտ մեկ ու կես միլիոն գիրք երկար տարիներ պահվում է նախկին կուլտուրայի տան նկուղներում, փչանում խոնավությունից ու փոշուց։ Ընթերցասրահների փոքրածավալության և խիստ ծանրաբեռնվածության պատճառով անթույլատրելի կերպով սահմանափակվում է նոր ընթերցողների գրանցումը։ Գրականության անսիստեմ դասավորումը խիստ բացասաբար է անդրադառնում ընթերցողների սպասարկման գործի վրա, ընթերցողների շատ պահանջներ անհիմն կերպով մերժվում են կամ բավարարվում մեծ ուշացումներով, իսկ այդ օրինական բողոքների ու դժգոհությունների տեղիք է տալիս։ Անշուշտ, վաղուց արդեն ժամանակն է կոնկրետ միջոցներ ձեռք առնել՝ ընդլայնելու գրադարանների նյութատեխնիկական բազան։

Աշխատավորների գրադարանային սպասարկման թերություններից մեկն էլ գրադարանների հիմնական մասի կտրվածությունն է կյանքից, կոմունիստական շինարարության պրակտիկայից։ Հաճախ կազմակերպվող մասսայական միջոցառումները չեն շաղկապվում ընթերցողների տվյալ կոլեկտիվի առաջ դրված կոնկրետ խնդիրների հետ։ Որոշ գրադարաններ վատ են բավարարում ընթերցողների աճող պահանջները գիտա-տեխնիկական և արտադրական գրա-

կանության նկատմամբ, վատ են օգտագործում գիրքն ընթերցողներին մոտեցնելու բազմապիսի ձևերն ու մեթոդները, լավ չեն կազմակերպվում նոր ստացվող գրականության ինֆորմացիան, թույլ է մատենագիտական գիտելիքների պրոպագանդան: Այս ամենի հետևանքով ռեսպուբլիկայի աշխատավորների մի զգալի հատված դուրս է մնում գրադարանային սպասարկումից:

Գրադարանների աշխատանքի հանրագումարը ցույց է տալիս, որ այդ գործի կազմակերպական շատ ձևեր հնացել են և կենսական անհրաժեշտություն է դարձել դրանց արմատական վերակառուցումը: Աշխատավորների գրադարանային սպասարկման գործում գրադարանների գերատեսչական անջատվածությունը, կոորդինացման բացակայությունը նրանց աշխատանքում հանգեցնում են լուրջ թերությունների. նախ՝ ոչ խնայողաբար և աննպատակ են ծախսվում պետական միջոցները, ապակենտրոնացվում են աշխատողների ջանքերը, խախտվում գրադարանագիտական նորմաները:

Առկա թերությունները բացատրվում են գրադարանային գործում միասնական, կենտրոնական ղեկավարության, գրադարանային ցանցի համակենտրոնացված պլանավորման և տեղաբաշխման, ինչպես նաև գրադարանների՝ ըստ տիպերի և տեսակների ճիշտ բնորոշման, կադրերի պատրաստման, որակավորման և ընտրության բացակայությամբ:

Աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումներից բխող խնդիրներն էլ ավելի են բարձրացնում գրադարանների դերը, ուստի, անհրաժեշտ է ռեսպուբլիկայում ստեղծել գրադարանային ցանցը ղեկավարող կենտրոնական միջգերատեսչական գրադարանային հանձնաժողով, որի կազմում ընդգրկվեն ռեսպուբլիկայի գրադարանային ցանցի զարգացմամբ շահագրգռված բոլոր կազմակերպությունները: Այդ հանձնաժողովը կսահմանի ամբողջ գրադարանային աշխատանքի հաշվառման, հաշվետվության, գրականության կոմպլեկտավորման, ֆոնդերի մշակման, ընթերցողների սպասարկման, գիտա-բիբլիոգրաֆիական աշխատանքների կոորդինացման, կադրերի մասնագիտացման, աշխատողների դրույքների, գրադարանները նյութատեխնիկական բազայով ապահովելու, ֆինանսավորման, աշխատանքների պլանավորման միասնական կարգ, որը պարտադիր կլինի գրադարանային բոլոր հիմնարկների համար:

Գրադարանային ցանցի ղեկավարման նման վերակառուցումը հնարավորություն կտա գրադարանները դարձնելու քաղաքական, գիտա-տեխնիկական, գյուղատնտեսական, հանրակրթական գիտելիքների պրոպագանդման հեղինակավոր կենտրոններ, կօգնի բանվորին, կոլտնտեսականին, ինտելիգենտին՝ հարստացնելու իր գիտելիքները, ձևավորելու էսթետիկական ճաշակ, տիրապետելու գիտության ու տեխնիկայի նոր նվաճումներին, արմատավորելու աշխատանքի առաջավոր փորձը, ամենուրեք նպաստելու աշխատավորության քաղաքական կրթության և կոմունիստական բարոյական բարձր հատկություններ դաստիարակելու պատվավոր գործին:

Գ. ԱՂԱԽԱՆՅԱՆ
Հայկական ՍՍՌ կուլտուրայի մինիստրության
գրադարանային բաժնի պետ



# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ՍԱՀՄԱՆՆԵՐԻ ՎՐԱ ԱՆԴՈՐՐ՝ ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆԸ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ

**Խաղաղություն...** Աշխարհի բոլոր անկյուններում բարի կամքի տեր մարդիկ որքա՜ն հույսեր են կապում դրա հետ: Երեխայի դաստիարակությունից ու ընտանիքի անդորրից սկսած մինչև համայնետական, համազգային, համամարդկային պրոբլեմների լուծումը, միշտ էլ մեծագույն կարևորություն են ունեցել: Մարդկության բազմադարյան պատմության տարբեր շրջանում սերունդները երազել են խաղաղության մասին, նրա բերած բարիքների մասին: Խաղաղության հարցն առանձնապես սուր է ասպարեզ գալիս մեր օրերում:

**Խաղաղություն, թե՞ պատերազմ:** Ջերմամիջուկային մեր դարում պատերազմի սպառնալիքը մեծագույն վտանգի տակ է դնում մարդկության ապագան, նրա կարգացման ու բարգավաճման առկա հնարավորությունները: *Ո՛չ թե պատերազմ, այլ խաղաղություն:* Այս է հասարակ մարդկանց ցանկությունն ամենուրեք: Բայց ցավալի է, որ այսօր էլ իմպերիալիստական շրջանների քաղաքական գործիչները կանգնած են պատերազմի խելահեղ տեսակետին: Եվ հենց այդ է պատճառը, որ մարդկության միտքն ամեն օր, ամեն ժամ զբաղված է այն հարցով՝ *լինելո՞ւ* է պատերազմ, թե՞ կհաղթի խաղաղությունը:

Միջազգային կյանքի այսպիսի իրադրության մեջ խաղաղության օգտին այս տարվա նախադռանը հնչեց մի հզոր ձայն:

### Ի՞ՆՉ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՎ

1963 թվականի դեկտեմբերի 31-ին Սովետական Միության Մինիստրների սովետի նախագահ Ն. Ս. Խրուշչովը դիմեց աշխարհի երկրների պետությունների (կառավարությունների) ղեկավարներին մի ուղերձով, որը դարձավ համաշխարհային հասարակայնության ուշադրության կարևորագույն հարցերից մեկը: Սովետական պետության ղեկավարը միանգամայն հիմնավոր կերպով առաջ քաշեց տերիտորիալ վեճերի ու սահմանային հարցերի լուծման ժամանակ ուժի գործադրումից հրաժարվելու, դրանք միայն խաղաղ բանակցությունների միջոցով կարգավորելու պրոբլեմը: Այդ նպատակով ընկ. Խրուշչովն առաջարկեց կնքել համապատասխան միջազգային համաձայնագիր կամ պայմանագիր: ՍՍՌՄ Մինիստրների սովետի նախագահի այդ ուղերձը խիստ հետաքրքրություն առաջ բերեց աշխարհի հասարակական-քաղաքական ոլորտներում: Եվ ահա թե ինչու:

Երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտից հետո շատ կարճ ժամանակամիջոց պահանջվեց, որպեսզի Արևմուտքի քաղաքական գործիչները փոխեին իրենց վերաբերմունքը դաշնակցին ու թշնամուն որոշելու հարցում: Նրանք տրամագծորեն հակառակ բևեռն անցած սկսեցին հավաքագրել Արևմտյան Գերմանիայի ռևանշիզմի ու ագրեսիայի ուժերը: Այդ ռեակցիոն քաղաքականության ջատագովներն ու ամենաջերմ ոգեշնչողները հանդիսացան ԱՄՆ-ի պետական գործիչները՝ նախկին պրեզիդենտ Տրումենից և պետական քարտուղար Մարշալից սկսած մինչև «սառը պատերազմի» քաղաքականության «հայտնագործող» Դալլեսն ու նրա գործի շարունակողները մեր օրերում: Այդ քաղաքականությունն այնպես լարեց միջազգային հարաբերությունները, որ վերջին 10—15 տարում աշխարհն ու մարդկությունը մի քանի անգամ կանգնեցին նոր պատերազմի շեմին:

«Սառը պատերազմի» քաղաքականությունից ետ կանգնելու առաջին լուրջ քայլը կատարվեց անցյալ տարվա ամռանը, երբ միջուկային զենք ունեցող երեք մեծ տերությունների միջև կնքվեց այդ զենքի փորձարկումների մասնակի արգելման Մոսկովյան պայմանագիրը: Այդ վճռորեն լիցքաթափեց միջազգային հարաբերությունների մթնոլորտը, բացեց փոխադարձ հավատի և վստահության դռները, հնարավորություն տվեց երկուստեք նոր քայլերի դիմել՝ խաղաղության հարցի հետագա բարեհաջող լուծման ճանապարհին: Հենց այդ տեսակետից էլ չափազանց մեծ արժեք ունեն սովետական կառավարության ղեկավարի նոր տարվա ուղերձում տեղ գտած առաջարկները, որոնք մարդկությունն ընդունեց իբրև խաղաղության և բարօրության նոր ավետաբեր:

Ն. Ս. Խրուշչովի նշված ուղերձում հիմնականում առաջ են քաշված չորս դրույթներ, որոնք սովետական կառավարությունն առաջարկում է դնել ապագա միջազգային համաձայնագրի կամ պայմանագրի հիմքում: Այդ դրույթները նշում են տերիտորիալ վեճերը և սահմանային հարցերը խաղաղ ճանապարհով լուծելու ուղիներն ու մոտեցումները:

Ո՞րն է սովետական կառավարության ղեկավարի առաջարկների առանցքը: Դա առաջին հերթին՝ *ստեղծված պետական սահմանների փոփոխման նպատակով ուժ չգործադրելու հարցն է:* Քաջ հայտնի է, թե ինչի է հանգեցնում որևէ երկրի պետական ու ռազմական գործիչների կողմից այս բանի քամահրումը: «Բավական էր, որ մի պետություն պինված ուժով մյուս պետությունից կավթեր վիճելի տերիտորիան,— նշում է ընկ. Խրուշչովն իր ուղերձում,—որպեսզի այս վերջինս սկսեր նոր պատերազմ նախապատրաստել կորցրած տերիտորիան վերադարձնելու համար: Այնուհետև շրջանը կրկնում էր... Տերիտորիաների համար ամեն մի պատերազմից հետո պետությունների տերիտորիալ վեճերի սրությունը, թերևս էլ ավելի նշանակալից էր դառնում, քան պատերազմից առաջ»:

Քանի-քանի նման օրինակ կարելի է բերել պատմությունից: Էլզասի ու Լոթարինգիայի համար պատերազմներ են բռնկվել ֆրանսիացիների և գերմանացիների միջև, Շլեզվիգի համար՝ գերմանացիների ու դանիացիների միջև, Կլայպեդայի համար՝ լիտվացիների ու գերմանացիների միջև, Տիրոլի համար՝ իտալացիների և ավստրիացիների միջև, Ռիվյերայի համար՝ ֆրանսիացիների ու իտալացիների միջև և այլն:

Դեռ այսօր էլ այդ հարցերից շատերը Ասիայում ու Աֆրիկայում, Ամերիկայում ու Եվրոպայում վիճելի են համարվում: Իսկ ի՞նչ կստացվեր, եթե յուրաքանչյուր, իր կարծիքով տուժած, կողմը կրկին դիմեր զենքի: Արդյունքը կլինեին նոր պատերազմներ, որոնց մի մասը կարող էր վերածվել համաշխարհային սպանդի, արյան գետեր, տառապանք ու թշվառություն բերելով տասնյակ միլիոնավոր մարդկանց:

Օրինական հարց է ծագում, մի՞թե մարդկությունն ի վիճակի չէ խաղաղությամբ լուծելու այդ հարցերը: Պատմությանը քաջ հայտնի են շատ դեպքեր, երբ երկու հարևան ժողովուրդների, պետությունների տերիտորիալ վիճելի հարցերը լուծվել են ոչ բոլորովին էլ ուժի գործադրմամբ, այլ միայն և միայն բանակցությունների միջոցով՝ փոխադարձ համաձայնության, բարի դրացիական հարցադրման նշանաբանով:

Հենց այս է Ն. Ս. Խրուշչովի ուղերձի հիմնական դրույթներից մեկը, որի համար էլ նա կոչ է անում պետությունների (կառավարությունների) ղեկավարներին՝ կնքել կոլեկտիվ կամ երկկողմանի համաձայնագրեր *տերիտորիալ հարցերը ուժի միջոցով լուծելու* քաղաքականությունից հրաժարվելու մասին:

Մյուս հիմնական դրույթը, որ շեշտվում է սովետական կառավարության ղեկավարի ուղերձում, *դա այլ երկրների տերիտորիաները չօկուպացնելն է:* Երբ մարդ նայում է աշխարհի քաղաքական քարտեզին, այս ու այնտեղ աչքի են զարնում որևէ սովերեն երկրի տերիտորիան բնորոշող, գույնով տարբեր կետեր, կամ փոքրիկ շրջանակներ, որոնց կողքին շեղ տառերով նշված են *ԱՄՆ, Բրիտ., Ֆր.* և այլ գրառումներ: Դրանք իմպերիալիստական տերությունների բազաներն են, որոնք սարդոստայնի նման պատել են մեր հողագունդը, որոնց վերացումը բխում է բոլոր ժողովուրդների ու խաղաղության շահերից: Իմպերիալիստները սովորաբար հայտարարում են, թե այն հողերը, որոնցում տեղաբաշխված են այդ բազաները, մի ժամանակ վիջվել են այս կամ այն պայմանագրով: Բայց միանգամայն տեղին են Ն. Ս. Խրուշչովի շատ դիպուկ այն խոսքերը՝ թ'ե «Այդ վկայակոչումները ոչ ոքի չպետք է մոլորության մեջ գցեն: Գաղտնիք չէ, թե ինչպես էին իր ժամանակին կնքվում նման պայմանագրերը. ուժեղն իր կամքն էր հարկադրում թույլին»: Միջազգային լարվածության հետագա թուլացման, նոր պատերազմի կանխման ճանապարհին, օտար տերիտորիաներում ստեղծված բազաների վերացման հարցն այսօր հրամայական պահանջ է մարդկության համար, նրա երաշխավորված ապագայի կարևոր պայմաններից մեկը:

Երրորդ պրոբլեմը, որն առաջ է քաշում ընկ. Խրուշչովն իր ուղերձում, դա այն է, որ *ո՛չ հասարակական և պետական կառուցվածքների տարբերությունը, ո՛չ էլ տվյալ երկրի չճանաչումը կամ դրա հետ դիվանագիտական հարաբերության բացակայությունը, ինչպես նաև որևէ այլ պատճառաբանություն չի՛ կարող հիմք հանդիսանալ որևէ երկրի տերիտորիալ անձեռնմխելիության խախտման համար մեկ այլ պետության կողմից:* Խոսքն այստեղ երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով ստեղծված այն իրադրության մասին է, երբ մի քանի երկրների տերիտորիաների վրա ստեղծվել են ազգային պետության երկվորյակներ: Հասկանալի է, որ այստեղ հիմնականում նկատի են առնված Գերմանիայի, Չինաստանի, Կորեայի, Վյետնամի պրոբլեմները: «Այս հարցը լուծելիս,— նշում է Ն. Ս. Խրուշչովը,— հարկավոր է հրաժարվել ուժ գործադրելուց, այդ երկրների ժողովուրդներին հնարավորություն ընձեռել միավորման հարցերը լուծելու խաղաղ ճանապարհով»: Իսկ մյուս բոլոր պետությունները պետք է նպաստեն այդ բանին և ոչ թե բորբոքեն, հրահրեն նոր ավանտյուրաներ:

Ինչպես Ն. Ս. Խրուշչովն է ասում՝ «Մենք խորապես համոզված ենք, որ տերիտորիալ վեճերի համար ուժ գործադրելը չի համապատասխանում ոչ մի ժողովրդի, ոչ մի երկրի իսկական շահերին»: Այստեղից էլ տրամաբանական այն բախտորոշ հետևությունը, որը սովետական կառավարության ղեկավարի ուղերձի հիմնական նպատակն է. աշխարհի բոլոր պետությունները պետք է պարտավորություն ստանձնեն *բոլոր կարգի տերիտորիալ վեճերը բացառապես խաղաղ ճանապարհով լուծելու նպատակով:* Դրանք, բազմապան են և կարող են լինել ինչպես բանակցություններ, միջնորդություններ, այնպես էլ համաձայնեցնող պրոցեդուրաներ և այլ խաղաղ միջոցներ, որոնք կնախընտրեն շահագրգռված կողմերը, հասկանալի է, Միավորված ազգերի կազմակերպության կանոնադրությանը համապատասխան:

Համաշխարհային մասշտաբով տերիտորիալ վեճերի ոչ բռնի ուժով կարգավորելու մասին առաջարկների ընդունումը և այդ նպատակով միջազգային համաձայնագրի կնքումը *խաղաղասիրական մեծ ակտ*, նոր ավանդ կլիներ ժողովուրդների կյանքից պատերազմը բացառելու և խաղաղ գոյակցությունն ապահովելու ճանապարհին:

## ՈՎ ԻՆՉՊԵՍ ԸՆԴՈՒՆԵՑ ԱՌԱՋԱՐԿՆԵՐԸ

1964 թվականի անցած ժամանակաշրջանում և, հատկապես հունվար ամսին, աշխարհի բոլոր մայրաքաղաքների հեռագրատները ծանրաբեռնված էին հիմնականում մի հարցի վերաբերող հաղորդագրություններ ընդունելով: Ամենուրեք բոլորի ուշադրության կենտրոնում էր սովետական կառավարության ղեկավարի ուղերձը, որն ԱՄՆ-ի կառավարող շրջաններին շատ մոտ կանգնած «Վաշինգտոն պոստ» թերթում բնութագրվեց «....իբրև 1964 թվականի առաջին կոնկրետ խաղաղ նախաձեռնություն»:

«Սանտա Կլաուսը (Ձմեռ պապին) շատ լավ նվեր բերեց, և ոչ միայն երեխաներին»,—այսպես են հասարակ մարդիկ Միացյալ Նահանգներում որակել Սովետական Միության խաղաղասիրական քայլը: Եվ որքան էլ այդ տհաճ լինի երկրի տիրապետող շրջաններին, նույնիսկ «Նյու-յորք թայմս»-ը ստիպված նշեց. «Կասկածից վեր է, որ Ն. Ս. Խրուշչովի առաջարկներին ըստ արժանվույն մեծ ուշադրություն կդարձնեն ամբողջ աշխարհի կառավարություններն ու ժողովուրդները»:

Սակայն, քանօրյա ուսումնասիրությունից հետո միայն աշխարհին հայտնի դարձավ ԱՄՆ-ի կառավարության չափազանց զգուշորեն տրված պատասխանը: Պրեզիդենտ Լինդոն Ջոնսոնը գտնում է, որ Նիկիտա Խրուշչովի առաջարկներում կան դրական, ուշադրության արժանի կետեր և, որ Միացյալ Նահանգները համապատասխան միջոցառումների կդիմեն՝ դրանց շուրջ մտքերի փոխանակությամբ հարցերը մինչև վերջ պարզելու, ճշտելու և համաձայնության գալու առթիվ:

Ամերիկյան կառավարության սառն ու որոշակիորեն անտարբեր դիրքը Միացյալ Նահանգների մամուլը փորձեց բացատրել նրանով, որ պետական դեպարտամենտում *նեղացել են* այն բանի համար, որ *Սովետական Միությունն ԱՄՆ-ից առաջ անցավ:* Պարզ է մի բան, որ Ն. Ս. Խրուշչովի ուղերձի հիմնական դրույթները ամերիկյան կառավարող շրջանների սրտով չէին: Այդ հատկապես, ակներև էր զգացվում. ԱՄՆ-ի պրեզիդենտության թեկնածուներից մեկի՝ ծայրահեղ ռեակցիոն «կատաղիների» լիդեր Բարրի Գոլդուոտերի այն հայտարարությունից, որ իշխանության հասնելով, ինքը կպատռի Մոսկովյան պայմանագիրը և կխզի դիվանագիտական հարաբերությունները Սովետական Միության հետ: Բայց այդպիսիների թիվն ԱՄՆ-ում շատ չէ: Այստեղ կան խելամիտ, խոհեմ, բանիմաց բազմաթիվ մարդիկ, որոնք խնդրին մոտենում են ռեալ փաստերից ելնելով: Նման մարդկանց թվին է պատկանում, օրինակ, հայտնի արդյունաբերող Սայրուս Իտոնը, որ սովետական կառավարության ղեկավարի ուղերձը համարում է *խելացիության և համարձակության նոր դրսևորում:* Համանման տեսակետի է նաև Կոլումբիայի համալսարանի պրոֆեսոր Սայմուր Մելմանը: Նա փորձում է Միացյալ Նահանգների կոնգրեսմեններին համոզել խորհելու այն մասին, թե ինչպես հարմարեցնել ամերիկյան էկոնոմիկան առանց զենքի ու պատերազմների աշխարհին:

Սովետական առաջարկների ազդեցությունը մեծ է նաև Անգլիայում: Չնայած պրեմիեր մինիստր Ալեք Դուգլաս-Հյումն իր պաշտոնական պատասխանում ընդհանուր առմամբ հավանություն է տալիս Ն. Ս. Խրուշչովի ուղերձի դրույթներին, բայց այնքան միջանկյալ հարցեր է առաջ քաշում, որ պարզ է դառնում պրեմիերի անբարյացակամ վերաբերմունքը սովետական կառավարության ուղերձի նկատմամբ: Բայց Անգլիան միայն պաշտոնական քաղաքականությունը չէ: Այլ կերպ են բնորոշում սովետական ուղերձը հասարակական, ոչ պաշտոնական գործիչները: Օրինակ, բրիտանական իրավաբանների ազգային ընկերության նախագահ Ջոն Պլետտա Միլսը հայտարարել է. «Դա հատուկ կարևորություն ունեցող փաստաթուղթ է, և արժանի

է ողջույնի... Ուժի կիրառումը միջազգային վեճերի լուծման ժամանակ չի բխում ոչ մի ազգի շահերից: Սահմանային և տերիտորիալ բոլոր կոնֆլիկտների խաղաղ լուծումը պետք է դառնա միջազգային հարաբերությունների օրենք, այն ուղղակի անհրաժեշտ է աշխարհի ցանկացած երկրի բարօրությանն ու ծաղկմանը»: Անգլիական իրավաբանի այս միտքն է հաստատում նաև լեյբորիստական պարտիայի լիդեր Հարոլդ Վիլսոնը, որը Բելպերում արտասանած իր ելույթում նշեց. «Մենք թևակոխում ենք մի շրջան, երբ Սովետական Միության հետ Արևմուտքի գոյակցության մասին սոսկ խոսակցությունները չափազանց քիչ կարող են լինել: Մենք իսկական համագործակցության ենք ձգտում»: Իր քաղաքական լիդերի միտքը լրացրեց պառլամենտի դեպուտատ Ուիլյամ Ուորրին, որը հայտարարեց, թե «Խրուշչովի ուղերձը համաշխարհային կոնֆլիկտները զրկում է սնուցող միջավայրից»:

Սովետական առաջարկները հատկապես խանդավառությամբ ընդունեցին այն երկրների ժողովուրդները, որոնք ամենից շատ տուժեցին երկրորդ համաշխարհային պատերազմում: Այդ տեսակետից բնորոշ է ճապոնական գիտնական, Տոկիոյի համալսարանի պրոֆեսոր Բոկուրո Էյգուտիի հայտարարությունը, որը նշում է՝ «Նման համաձայնագիրը կխլի Ճապոնիայում ռևանշիստական տրամադրություններ ունեցող մարդկանց ոտքի տակի հողը... Խրուշչովը խորապես արդարացի է՝ ներկայումս միայն խաղաղ ճանապարհով, և ոչ պատերազմով կարելի է լուծել տերիտորիալ հարցերը»:

Իր հայտարարության մեջ նոր ագրեսիան սանձահարելու միտքն է առաջ քաշում նաև Բոկկեի (Ֆրանսիա) դիմադրության շարժման նախկին մասնակիցների ասոցիացիայի գլխավոր քարտուղար Շառլ Ֆուրնյեն, որը Սովետական կառավարության ղեկավարի ուղերձում տեսնում է խաղաղության երաշխիքը: Նա առանձնապես շեշտում է՝ «Մենք գտնում ենք, որ միջազգային համաձայնագիրը, որն ուղղված կլինի այն բանին, որպեսզի վերացվեն տերիտորիալ վեճերն իբրև պատերազմի ծագման պատճառ, երաշխիք կհանդիսանա արևմտա-գերմանական պետության հարևանների անվտանգության համար, պետություն, որի վրա չափազանց ուժեղ է միլիտարիզմի ու նացիզմի կնիքը»:

«Մոսկվայի պայմանագրի կնքումից հետո պարոն Խրուշչովի ուղերձը լավ առաջարկ է»— հայտարարեց մամուլի ներկայացուցիչներին Բելգիայի նախկին մինիստր, սոցիալ-քրիստոնեական պարտիայի պառլամենտի դեպուտատ Ռայմոն Շեյվենը: Նա այն միտքը հայտնեց, որ ներկայումս միանգամայն տրամաբանական է անցնել ավելի գործնական քայլերի այդ ուղղությամբ: Համանման կարծիք հայտնեց նաև իտալական սոցիալիստական պարտիայի օրգան, «Ավանտի» թերթը, որն իր մեկնաբանի բերանով հայտարարեց, թե «Խրուշչովի առաջարկները կնպաստեն միջազգային լարվածության թուլացման պրոցեսի վերաբերյալ ավելի կոնկրետ բովանդակությամբ դիսկուսիայի ընդլայնմանը»:

Սովետական կառավարության ղեկավարի ուղերձը չափազանց ուժեղ արձագանք գտավ տնտեսապես թույլ զարգացած և գաղութային լծից նոր ազատագրված երկրների քաղաքական և հասարակական ամենալայն շրջաններում:

Գաղտնիք չէ, որ դարեր շարունակ ղեկավարվելով «բաժանիր, որ տիրես» գիշատչական սկզբունքով իմպերիալիստները սահմանային լաբիրինթոս են ստեղծել կախյալ և գաղութային երկրներում: Եվ այսօր էլ նրանց սահմանային վեճերն օգտագործում են, որպեսզի թշնամանք սերմանեն նոր ստեղծված անկախ պետությունների միջև և անցնելով մեկի կամ մյուսի կողմը, նրանց նորից գցեն գաղութատիրական ցանցի մեջ: Հասկանալի է, որ իմպերիալիզմի ճիրաններից ազատագրված երկրների ժողովուրդները լավ գիտակցում են իրենց նախկին տերերի քաղաքականության էությունը և չեն կարող անտարբերությամբ անցնել դրա կողքով:

Ահա թե ինչպես է Ուրուգվայի «Պոպուլար» թերթը մեկնաբանում այդ ուղերձը. «Սովետական Միությունը 1964 թ. սկսեց ամբողջ մարդկությանն ուղղված նոր խաղաղասիրական առաջարկությամբ: Սովետական առաջարկների ընդունումը, որոնք ուղղված են պետությունների միջև բախումների և լարվածության ամենատարածված պատճառի վերացմանը, կծառայի իբրև խաղաղության երաշխիք»: Իր ժողովրդի ամենակենսական շահերի ոտնահարման դեմ վեր խոյացող ուժն է տեսնում այդ առաջարկներում Կիպրոսի «Խաբավգի» թերթը, երբ նշում է, որ «Սովետական Միությունը դնում է ոչ միայն տերիտորիալ վեճերի խաղաղ լուծման հարցը, այլև առաջարկում է ուրիշ միջոցառումներ, որոնց իրականացումը հնարավորություն կտար վերացնելու նոր պատերազմների վտանգը՝ օտարերկրյա բազաների լիկվիդացման շնորհիվ»:

Նույն կարծիքն ու ցանկությունն են արտահայտում նաև Հնդկաստանի քաղաքական-հասարակական գործիչները: «Ազգային կոնգրես» պարտիայի պառլամենտի դեպուտատներ Անսուրու Խարվանին և Բենարսիդան Չատուրվանդին գրում են. «Մենք ունենք մեր սահմանային պրոբլեմները, որոնք կցանկանայինք լուծել բանակցությունների միջոցով: Խրուշչովի ուղերձը հնդիկ ժողովրդի միահամուռ հավանությանը կարժանանա»: Քենիայի պառլամենտի ներկայացուցչական պալատի նախագահի տեղակալ



Ֆ. Դէ. Սուկուն, լիովին մերկացնելով իմպերիալիզմի էությունը, ասել է՝ «Մենք հասկանում ենք, որ Աֆրիկայի և Ասիայի երկրների շատ սահմաններ որոշվել են իմպերիալիստների քմահաճույքով: Ուժի դիմելու ձգտումը սահմանային հարցերի լուծման ժամանակ ուղղակի նպատակահարմար է իմպերիալիստներին, իսկ թշնամության բորբոքումը մահացու վտանգ է աֆրիկյան միասնության համար: Խաղաղ բանակցությունները և, եթե անհրաժեշտ է, միջազգային արբիտրաժը հանդիսանում են այդ պրոբլեմի լուծման միակ եղանակը»:

Կան նաև սովետական առաջարկները մերժելու, դրանցից հեռու մնալու մասին հայտարարություններ, որոնք հատկապես սուր բնույթ ունեն Բոննի ռևանշիստների շուրթերում և էլի նեոֆաշիստական ինչ-ինչ խմբերի պարագլուխների մոտ՝ իմպերիալիստական տարբեր երկրներում, սակայն դրանք փոքր տեղ են գրավում ու եղանակ որոշողը չեն: Հիմնականում, ամենուրեք մարդիկ մեծ հույսեր են կապում տերիտորիալ վեճերի և սահմանային հարցերի լուծման ժամանակ ուժի քաղաքականությունից հրաժարվելու մասին համաձայնության հեռանկարների հետ: Ոմանք նույնիսկ սեփական փորձն են հիշում, մարդկությանը մեկ անգամ ևս ցույց տալու համար սովետական առաջարկների հզոր ուժը, վեհությունը:

Ահա թե ինչ է գրում իր պատասխանում Ն. Ս. Խրուշչովին Ֆինլանդիայի պրեզիդենտ Ուրխո Կեկկոնենը. «Տերիտորիալ և սահմանային վեճերն անկասկած դասվում են միջազգային կյանքի այրող հարցերի կարգը և, իմ կարծիքով, Ձեր ուղերձի մեջ առաջ քաշված հարցերն արժանի են լուրջ ուշադրության... Ֆինլանդիայի և Սովետական Միության սահմանները դարձան խաղաղության սահմաններ: Երկու կողմերի նպատակասլաց ձգտումների շնորհիվ, չնայած հասարակական կարգերի տարբերությանը, ստեղծվեցին բարի դրացիական հարաբերություններ, որոնք հիմնված են փոխադարձ վստահության և հարգանքի վրա: Մեր ընդհանուր փորձը ցույց է տալիս, որ փոխադարձ վստահության առկայության դեպքում նույնիսկ դժվար հարցերը կարող են լուծվել խորհրդակցությունների միջոցով՝ երկու կողմերի երկրների շահերը հարգելով»:

Անսահման է մարդկանց ձգտումը դեպի խաղաղ ստեղծագործական աշխատանքը, խոր նրանց ատելությունը դեպի պատերազմն ու նրա բերած արհավիրքները: *Աշխարհն առանց վեճերի, առանց պատերազմների*, ահա թե ինչ են նրանք տեսնում սովետական նոր առաջարկներում: Ամենից շատ դրան են ձգտում սոցիալիստական լագերի երկրների աշխատավորները, նրանց պետական ու քաղաքական գործիչները, որովհետև միայն նման քաղաքականությունը կարող է մարդկությանը հասցնել այն երջանիկ ապագային, հանուն որի իրենց ժողովուրդների մեծ երթն են գլխավորում կոմունիստները:

Այդ է պատճառը, որ Ն. Ս. Խրուշչովի ուղերձն առանձնապես ջերմ արձագանք գտավ սոցիալիստական երկրների մամուլում:

Սոցիալիստական լագերի երկրների նման վերաբերմունքը հասկանալի է: Նրանք իրենց փորձով համոզվել են, որ միայն խաղաղությունը և բարի դրացիական հարաբերությունները հարևան երկրների միջև կարող են հնարավորություն ընձեռել այն մեծ վերափոխումների համար, որ կատարվել, կատարվում և կատարվելու է իրենց երկրներում:



Մարդկությունն այսօր կանգնած է մեծ վերափոխումների նախադռանը: Սովետական կառավարության ղեկավարի առաջարկների իրականացման հետ են կապում խաղաղասիրական իրենց ամենաջերմ ցանկություններն՝ աշխարհի բոլոր ժողովուրդները երկրագնդի ամենատարբեր անկյուններում: Եվ իրոք, որքան կնվազի նոր պատերազմի բորբոքման վտանգը, եթե բացավի տերիտորիալ վեճերը ուժի միջոցով լուծելու հնարավորությունը:

Չէ՞ որ երբ անդորր տիրի բոլոր սահմանների վրա — հարևան երկրների սահմանները կհատեն բազում նավթամուղներն ու գազամուղները, որպիսիք արդեն ստեղծված են սոցիալիստական երկրների միացյալ ջանքերով, գետերի ջրերը զուր տեղը չեն հոսի ծովերն ու օվկիանոսները՝ պապակ թողնելով դաշտերը: Կնախագծվեն նոր հիդրոկայաններ, ինչպես այսօր նախագծվում է Կոմարնոյի կամուրջի երկու կողմերում՝ Դանուբի վրա, Չեխոսլովակիայի և Հունգարիայի սահմանագլխին, երկու երկրների մասնագետների համատեղ ջանքերով: *Թե սահմանների վրա անդորր լինի, ժողովուրդները կապրեն հանգիստ և վստահ իրենց վաղվա օրվա նկատմամբ, կաշխատեն, կստեղծագործեն էլ ավելի մեծ եռանդով:*

Ա. ԼՅՈՒԼԻԿՅԱՆ



# Աթեիստի ԱՄԲԻՈՆ

## ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱԳՆՈՍՏԻՑԻԶՄԸ ԵՎ ՖԻԴԵԻԶՄԸ

Բուրժուազիայի դասակարգային շահերը խորապես հակասական են, որի ամենից ավելի ցայտուն դրսևորումներից մեկը նրա վերաբերմունքն է գիտության և կրոնի նկատմամբ։

Ինչպես և ամեն մի շահագործող դասակարգ, բուրժուազիան կենսականորեն շահագրգռված է կրոնով։ Միևնույն ժամանակ, առաջանալով որպես արդյունաբերության, առևտրի և ծովագնացության հետ անմիջականորեն կապված դասակարգ, բուրժուազիան անհամեմատ ավելի մեծ չափով էր շահագրգռված գիտությամբ, քան նրան նախորդած դասակարգերից որևէ մեկը։ Այնինչ գիտությունն ու կրոնը ուղղակի հակադրություններ են։

Բուրժուական դասակարգի շահագրգռությունների հակասական բնույթը առանձին ուժով դրսևորվում է այժմ, երբ երկու սիստեմների պայքարի պայմաններում, նրանց գոյակցության անհրաժեշտության պայմաններում տեխնիկական առաջադիմության պահանջը մեծացել է՝ դառնալով բացարձակ անհրաժեշտություն։ Իմպերիալիստական շրջաններն այժմ մեծ հույսեր են կապում, հատկապես, տեխնիկական բուռն առաջադիմության հետ, այն համարելով հաղթանակի հասնելու կարևորագույն միջոցներից մեկը ինչպես տնտեսական մրցության մեջ, որը պայմանավորված է գոյակցության բուն փաստով, այնպես էլ ռազմական մրցակցության մեջ, որն այդ շրջանների ագրեսիվ արտաքին քաղաքականության հետևանքն է։

Այս տեսակետից շատ բնորոշ է Արևմուտքի ազդեցիկ թերթերից մեկի՝ «Նյու-Յորք հերալդ տրիբյուն»-ի հայտարարությունը, որը, գանգատվելով Սովետական Միության տեխնիկական նվաճումների կապակցությամբ, գրել է. «Մեր երկիրը պարտություն կրեց XX դարի էպոխիալ մրցության մեջ», և այստեղից հետևություն է արել, որ անհրաժեշտ է «մոբիլիզացնել ԱՄՆ-ի բոլոր ռեսուրսները՝ ՍՍՌՄ-ին հասնելու համար»։

Երկու լագերների վերջին տարիների տնտեսական ու ռազմական զարգացման ամբողջ ընթացքը համոզիչ կերպով ցույց է տալիս, որ իմպերիալիստական շրջանների այդ հույսերը չեն իրականանա։ Իմպերիալիզմն արդեն կորցրել է իր ռազմական գերակշռությունը, մեր աչքի առջև տեղի է ունենում անկասելի մի պրոցես, որը պատմական շատ կարճ ժամանակամիջոցում սոցիալիստական լագերին լիակատար հաղթանակ կբերի նաև տնտեսական մրցության ասպարեզում։

Հենց այդ բացառիկ դերն էլ, որ տեխնիկան և նրա հիմքում ընկած բնական գիտությունները խաղում են բուրժուազիայի ճակատագրի մեջ, բացատրում է այն փաստը, որ բուրժուազիայի գաղափարախոսները չեն համար-



ձակվում բնագիտությունը կեղծել այն աստիճան, ինչ չափով նրանք կեղծում են հումանիտար գիտությունները։

Սակայն բնագիտության զարգացումը, միաժամանակ, հանդիսանում է իդեալիզմի և կրոնական աշխարհայեցողության քայքայման պրոցես, և այդ միանգամայն օրինաչափ է, որովհետև բնագիտության առանձնահատկություններից մեկն այն է, որ նա, իր էությամբ, խարսխված է մատերիալիստական աշխարհըմբռնման վրա և նրա զարգացումը, եթե մի պահ վերանալու լինենք սոցիալական մոտիվներից, վերջին հաշվով, պայմանավորում է այդ մատերիալիստական աշխարհըմբռնողության զարգացումը։

Բնագիտության զարգացումը շարունակվում է մեր դարաշրջանում, երբ շահագործող դասակարգը ավելի, քան երբևէ, կրոնի կարիք ունի. կրոնը շահագործման՝ հազարամյակներով ստուգված հենարանն է և պատահական չէ, որ ժամանակակից իմպերիալիզմի քաղաքական և գաղափարական զինանոցում անշեղորեն մեծանում է դրա նշանակությունը։ Արդի կապիտալիզմը մահացու կերպով հիվանդ է. նա արդեն ապրում է իր հոգևոր կործանումը, որը յուրատեսակ արտացոլումն է իմպերիալիզմի տնտեսական ու ու քաղաքական անկման։ Այս պայմաններում իր դարն ապրած աշխարհի ջատագովներն ավելի ու ավելի մեծ չափով են հակվում դեպի կրոնը՝ հուսալով նրա օգնությամբ հոգևոր վերածնունդ տալ կործանվող բուրժուական քաղաքակրթությանը։

Այս հանգամանքներով միայն կարելի է բացատրել այն պարադոքսային փաստը, որ վերջին տասնամյակները հանդիսացան ոչ միայն բնագիտական դարակազմիկ հայտնագործությունների տարիներ՝ մեծապես ուժեղացնելով մարդու տիրապետությունը բնության նկատմամբ, այլև կապիտալիստական երկրներում կրոնական պրոպագանդայի ուժեղացման, հատկապես ֆիդեիստական գաղափարների աշխուժացման տարիներ։ Ինչպես հայտնի է, ֆիդեիզմը մի ուսմունք է, որը գիտելիքը փոխարինում է հավատով կամ առհասարակ որոշակի նշանակություն է տալիս հավատին։

Այսպիսով, բուրժուազիան չի կարող հրաժարվել բնագիտությունից, բայց, մյուս կողմից, նա խիստ ցանկանում է պահպանել կրոնը։ Ահա այն պրոբլեմը, որի լուծման համար դարեր շարունակ զուր ճիգեր է թափում բուրժուական գաղափարախոսությունը։ Եվ, ինչպես վկայում է փիլիսոփայության պատմությունը, այս խրթին խնդիրը լուծելու փորձերի մեջ մեծ դեր է հատկացվում ագնոստիցիզմին՝ ռեակցիոն մի ուսմունքի, որն ազդարարում է մարդկային իմացության հնարավորությունների սկզբունքային սահմանափակվածությունը։

Ագնոստիկական ամեն մի կոնցեպցիա ելնում է այն բանից, որ մարդկային միտքը գործ ունի միայն իրերի կերպարների հետ, որ այս վերջինները մարդու մտքին ներկայանում են միմիայն զգայությունների միջոցով, որ մարդկային միտքը ոչ մի կերպ չի կարող շրջանցել զգայությունները և անմիջական կապ հաստատել օբյեկտների հետ։ Այստեղից ագնոստիկը եզրակացնում է, որ միակ օբյեկտը, որի մասին մարդը կարող է հավաստի գիտելիք ունենալ, իր իսկ սեփական ընկալումներն են։ Ըստ ագնոստիկի, հենց այդ պատճառով էլ մարդն սկզբունքորեն չի կարող հավաստի գիտելիքներ ունենալ իրերի մասին, որոնք ընկած են զգայությունների սահմաններից դուրս, նա նույնիսկ չի կարող հավաստի իմանալ, թե արդյոք այդ իրերը գոյություն

ունե՞ն, թե ոչ։ Մարդը կարող է միայն հավատալ, որ դրանք օբյեկտիվորեն գոյություն ունեն, բայց հավաստի կերպով իմանալ՝ նա սկզբունքորեն չի կարող։

Թեև ագնոստիցիզմի տեսական հիմնական դրույթները ձևակերպվել են դեռևս 18-րդ դարում, իսկ առաջադեմ փիլիսոփայական միտքը միշտ պայքարել է նրա դեմ, բայց ագնոստիցիզմը հաղթահարել կարողացավ միայն դիալեկտիկական մատերիալիզմը։ Բանն այն է, որ ագնոստիցիզմի դեմ վճռական փաստարկը պրակտիկան է։ Միայն այն ուսմունքն էր ի վիճակի պարտության մատնելու ագնոստիցիզմին, որն ըմբռնել էր, թե որն է պրակտիկայի էությունը և մարդկային իմացության մեջ ինչ տեղ է գրավում և ինչ դեր է խաղում պրակտիկան։ Փիլիսոփայության մեջ մարքսիզմի կատարած հեղաշրջումը մասնավորապես այն է, որ պատմության մեջ առաջին անգամ պրակտիկան հռչակվեց իմացության հիմք և ճշմարտության չափանիշ, մեկնաբանվեց որպես մարդկանց առարկայական գործունեություն (և, առաջին հերթին, որպես նյութական բարիքների արտադրություն և դասակարգերի հեղափոխական պայքար), որի միջոցով վերափոխվում են բնությունն ու հասարակությունը։ Այս բանի շնորհիվ առաջին անգամ ստեղծվեց իսկապես գիտական իմացության տեսություն և հաղթահարվեց ագնոստիցիզմը։

Եվ, եթե ագնոստիցիզմն այսօր էլ շարունակում է իր գոյությունը, ապա այդ բացատրվում է, առաջին հերթին, բուրժուական մտածողների սոցիալ-դասակարգային սահմանափակվածությամբ, այն պաշտպանությամբ, որ ագնոստիցիզմը գտնում է իմպերիալիստական բուրժուազիայի կողմից, որը լայնորեն օգտագործում է այդ ուսմունքն իր գաղափարական նպատակներով, այդ թվում՝ գիտելիքի և հավատի, գիտության ու կրոնի համատեղելիությունն ապացուցելու նպատակով։

Պետք է նշել, որ ժամանակակից ագնոստիկական կոնցեպցիաների հեղինակները միատեսակ չեն վերաբերվում կրոնին։ Նրանց մի մասը, օրինակ, Յան Լուկասևիչը և Հիլբերտ Ռայլը, հենվելով ագնոստիցիզմի վրա, գիտակցաբար և բացահայտորեն հռչակում են գիտության ու կրոնի համատեղելիության հնարավորությունն ու անհրաժեշտությունը, բացահայտ եզրակացություններ են անում հօգուտ աստվածային նախախնամության։

Ուրիշները, իսկ դրանք նեոպոզիտիվիստների գերակշռող մասն են, չեզոք, անտարբեր դիրք գրավելով կրոնի նկատմամբ, զարգացնում են ագնոստիկական ուսմունքը, որը ժամանակակից պայմաններում օբյեկտիվորեն մեծ ծառայություն է մատուցում կրոնին։ Այդպիսի նեոպոզիտիվիստների տիպիկ ներկայացուցիչներից է Ռուդոլֆ Կառնապը՝ մեծ տրամաբան, բայց մոլորված մի փիլիսոփա։

Վերջապես, կան ագնոստիկական կոնցեպցիաների նաև այնպիսի հեղինակներ, որոնք Բերտրան Ռասելի նման, սուբյեկտիվորեն դեմ են կրոնին, անձամբ նույնիսկ մարտնչող աթեիստներ են, բայց որոնց ուսմունքների ագնոստիցիզմը օբյեկտիվորեն չեզոքացնում է նրանց փաստարկները կրոնի դեմ և, հակառակ նրանց ցանկության, կրոնի բացահայտ պաշտպաններին օբյեկտիվորեն մատակարարում է տրամաբանական և իմացաբանական փաստարկներ հօգուտ այն բանի, որ գիտությունն սկզբունքորեն չի կարող հերքել կրոնը, որ գիտությունը և կրոնը կարող են և պետք է համատեղվեն։

Քննության առնենք գիտության և կրոնի հաշտեցման՝ մեր օրերում տա-



րածված եղանակներից մեկը, որ հիմնվում է ժամանակակից ագնոստիցիզմի տեսական դրույթների վրա։ Խոսքը գիտության և կրոնի համատեղելիությունն ապացուցելու այն փորձերի մասին է, որոնց ելակետն այն դրույթն է, որ նրանց միջև ոչ մի սկզբունքային տարբերություն չկա։

Ինչպես արդեն ասվեց, ագնոստիկի կարծիքով հավաստի գիտելիքի միակ օբյեկտը ճանաչող սուբյեկտի ընկալումներն են։ Ագնոստիկի պնդմամբ, միայն դրանք են անմիջականորեն տրված մարդուն, միայն դրանց ռեալությունն է հավաստի կերպով հայտնի մեզ։ Հենց այս պատճառով էլ անմիջական փորձի տվյալները, ագնոստիկի հայտարարությամբ, գիտության միակ հաստատուն հիմքն են։

Իսկ եթե այդ այդպես է, ապա հարց է ծագում. ինչո՞ւ հալյուցինացիաները, միստիկան, գուշակությունները չպետք է դիտել որպես անմիջական փորձի տվյալներ, որպես գիտելիքի հիմք։ Ճիշտ է, վերջիններս հանրանշանակ չեն, բայց դա խոչընդոտ չի համարվում, որովհետև անմիջական փորձի ամեն մի տվյալ միշտ անհատական բնույթ ունի. չէ՞ որ անմիջական դիտումը, զգայումը անհատական ապրումներ են։ Եթե իմացության մեջ միակ հաստատուն հիմքը համարվում են փորձի անմիջականորեն դիտվող տվյալները, ապա ագնոստիկը բոլորովին հնարավորություն չունի իրարից զանազանելու հանրանշանակ բնույթ ունեցող փորձի տվյալները և զուտ անհատական փորձի տվյալները։ Հենց այս պատճառով էլ միստիկը իրավունք ունի բոլորովին հաշվի չառնելու հանրանշանակության չափանիշը։ Ագնոստիցիզմի սկզբունքի համաձայն, որպես անմիջական դիտում որակվող պատրանքի բուն փաստը բավական է, որպեսզի միստիկի հալյուցինացիաները ճշմարտություն համարվեն։ Հենց այս էլ նկատի ուներ Ռասելը, երբ հայտարարում էր, որ «միստիկը, որքանով որ նա պարզապես հաղորդում է իր դրական հայտնության մասին, չի կարող հերքվել» [1]։

Ժամանակակից ագնոստիցիզմի այդպիսի դիրքավորումը լայնորեն օգտագործվում է՝ ապացուցելու համար, այսպես կոչված՝ կրոնական փորձի գոյությունը և նրա հսկայական իմացական նշանակությունը։

Ի՞նչ են հասկանում «կրոնական փորձ» ասելով։ Նախ և առաջ, «կրոնական փորձի» տակ հասկանում են «կրոնի հրաշքները», այսինքն՝ բնական պրոցեսների ընթացքի խախտումը, բնության օրենքների խախտումը։ Պատճառականության և անհրաժեշտության նկատմամբ ագնոստիկական հայացքը, ըստ որի այդ հասկացությունների միակ ռեալ բովանդակությունը մեր տպավորությունների հոսքի սոսկ մշտական, ուստի և սովորական դարձած հաջորդափոխությունն է, ոչ միայն հնարավորություն չի տալիս որևէ կերպ հանդես գալու կրոնական հրաշքների դեմ, այլև նպաստում է դրանց ընդունմանը։

«Կրոնական փորձի» մյուս բաղկացուցիչ մասը «միստիկական փորձն» է, այսինքն՝ այն պահը, երբ մարդը իբր համակվում է աստվածային հայտնությամբ, անմիջականորեն հաղորդակցվելով աստվածայինի հետ։ Կրոնական փիլիսոփաները ուժեր չեն խնայում «միստիկական փորձը» արդարացնելու և հիմնավորելու համար, այն համարելով կրոնի օգտին վկայող կարևորագույն փաստարկ։

Ժամանակակից ագնոստիցիզմը ոչ միայն ճանապարհ է հարթում միստի-

[1] B. Rassell, Our Knowledge of the External World, L., 1926, էջ 70.

ցիզմի համար, այլև ինքն է հասնում նրա բացահայտ հռչակման, դրանով իսկ ցուցադրելով իր սկզբունքների տրամաբանական վախճանը։ Ագնոստիցիզմի և միստիկայի լիակատար համընկնման փայլուն օրինակ է Լ. Վիտգենշտայնի փիլիսոփայությունը։ Աշխարհայացքային կարևորագույն հետևությունը, որին Վիտգենշտայնը հանգել է իր «Տրամաբանա-փիլիսոփայական տրակտատում», անտարակույս, այն պնդումն է, որ միստիկական զգայումը ոչ միայն հնարավոր, այլև անհրաժեշտ է, քանի որ հանդիսանում է իրերի էության և ամբողջությամբ վերցրած աշխարհի իմացության՝ մարդուն միակ մատչելի միջոցը[1]։ Հիրավի, բոլոր այն դեպքերում, երբ ժամանակակից ագնոստիկներն ընդունում են, որ իմացության մեջ կան իռացիոնալ բաղադրիչ մասեր, նրանք արդեն սկզբունքորեն չեն կարող չընդունել «միստիկական փորձը»։

Կրոնին փորձնական հիմնավորում տալու հարցում առանձնապես աչքի է ընկնում ագնոստիցիզմի պրագմատիստական տարատեսակությունը։ Պրագմատիզմը, ինչպես իրավացիորեն նշվում է գրականության մեջ, այսպես կոչված կրոնի փիլիսոփայության սկզբնական երևույթներից մեկն է, այն փիլիսոփայության, որը կրոնը համարում է մարդկային փորձի յուրօրինակ մի ձև։ Դա հատկապես ակնառու կերպով երևում է պրագմատիզմի հիմնադիրներից մեկի՝ ամերիկացի փիլիսոփա և հոգեբան Ուիլյամ Ջեմսի (1842—1910) օրինակով։ Ջեմսը միանգամայն անկեղծորեն հայտարարել է, որ գիտության ու կրոնի հաշտեցումը իր կյանքի ու գործունեության խնդիրն է։ Ջեմսը փորձում էր այդ խնդիրը լուծել՝ մշակելով կրոնական փորձի տեսություն։ Իր մի ամբողջ շարք աշխատություններում, մասնավորապես «Կրոնական փորձի բազմազանությունը» գրքում, Ջեմսը հաստատակամորեն այն միտքն է անցկացնում, թե մարդը ընդունակ է իռացիոնալ ճանաչման, միստիկական զգայության, մի խոսքով, Ջեմսը վերացնում է աստվածային հայտնությունն ընդունելու ճանապարհին բոլոր խոչընդոտները։ Ավելին, հենվելով ճշմարտության պրագմատիստական չափանիշի վրա, օգտագործելով այդ չափանիշի ագնոստիկական ոգին, Ջեմսը ճգնում է ցույց տալ կրոնական փորձի ոչ միայն օրինաչափությունը, այլև բացարձակ անհրաժեշտությունը։ Օբյեկտիվ իրականությունն ու նրա օրինաչափությունները ճանաչելու հնարավորության ագնոստիկական բացասումը, դրանց բուն օբյեկտիվ գոյության նկատմամբ ագնոստիկական կասկածը, գիտական տեսությունները սոսկ աշխատանքային հիպոթեզներ հռչակելը՝ այս ամենը ծառայում են այն բանին, որ կրոնական փորձը ճշմարիտ հայտարարվի։ Այն թեզից, թե «...որևէ միտք «ճշմարիտ» է այնքանով, որքանով, նրա նկատմամբ եղած հավատը ձեռնտու է մեր կյանքում»[2], Ջեմսը ուղղակիորեն եզրակացնում է աստծո վերաբերյալ հիպոթեզի ճշմարտությունը։

Եթե, ինչպես պնդում է Ջեմսը, «փաստի նկատմամբ եղած հավատը կարող է նպաստել այն բանին, որ այդ փաստը առաջանա»[3], որի հետևանքով վերանում է իրականի և անիրականի ամեն մի տարբերություն, ապա հարց է ծագում, թե մենք ինչ հիմունքով պետք է հաշվի չառնենք միստիկի փորձը, որը հավատում է աստվածայինին, հավատում է այն բանին, որ իր պատրանքները

[1] См. Л. Витгенштейн, Лошко-философский трактат, ИЛ, М., 1958, 6.44, 6.45, 6.522

[2] *В. Джемс*, Прагматизм, СПБ, 1910, стр. 52.

[3] Նույն տեղը, էջ 182—183։



գերբնականի անմիջական հայեցողության փաստեր են։ Ջեմսը ուղղակիորեն կոչ է անում հաշվի առնել կրոնական փորձը, քանի որ «...ամեն ոք, ով ուշադրություն դարձնի միստիկի համար արժեքավոր փաստերի վրա, իսկ այնուհետև դրանք քննության առնի ակադեմիական-գիտական տեսակետից, անտարակույս, օգուտ կբերի փիլիսոփայությանը»[1]։

Ինչպես ցույց է տալիս պրագմատիզմի հետագա էվոլյուցիան, գիտության ու կրոնի, գիտելիքի և հավատի փոխհարաբերության նկատմամբ նրա վերաբերմունքը չի փոխվել սկզբունքորեն, իսկ եթե փոխվել է, ապա միայն գիտության ու կրոնի հաշտեցման համար ավելի նուրբ փաստարկներ որոնելու առումով։ Հիրավի, ինչպես վկայում են փաստերը, այդ պրոբլեմը գտնվում է նաև Ջոն Դյուիի՝ XX դարի կեսերի պրոպագանդիստական մտքի այդ խոշորագույն ներկայացուցչի ուշադրության կենտրոնում, որն այն լուծում է Ջեմսի նման՝ կրոնը գիտության հետ հաշտեցնելու ուղղությամբ։ Բայց Ջեմսը բացեիբաց էր պաշտպանում հավատը գերբնական իմացության նկատմամբ, և այս կապակցությամբ իր խնդիրը տեսնում էր գիտելիքի և հավատի հաշտեցման ուղիներ որոնելու մեջ։ Այդպիսի ուղի Ջեմսը համարում էր կրոնի էմպիրիկ հիմնավորումը՝ պնդելով, որ ոչ միայն գիտությունն է հիմնվում փորձի վրա, այլև կրոնը, միայն թե վերջինս հիմնվում է հատուկ տեսակի փորձի՝ գերբնական, այն է՝ կրոնական փորձի վրա։ Ի տարբերություն Ջեմսի, Դյուին իրեն բացեիբաց չի հռչակում գերբնականի նկատմամբ հավատ ընծայող փիլիսոփա։ Բնականաբար, դրա հետ միասին նա մերժում է նաև Ջեմսի փորձերը՝ գիտությունն ու կրոնը հաշտեցնելու այն հիմունքով, թե կրոնը ևս ունի իր յուրահատուկ փորձնական հիմքը։ Ուրեմն նա մերժում է նաև գիտության ու կրոնի հաշտեցման այն եղանակը, որ առաջադրել էր Ջեմսը։

Դյուին պնդում է, թե գիտության և կրոնի էության իսկական ըմբռնումից բխում է նրանց հաշտեցման բուն պրոբլեմի անիրական լինելը։ «Վստահության որոնումներ» աշխատության մեջ նա ուղղակի հայտարարում է. «Հաշտեցման պրոբլեմը ծագել և շարունակում է գոյություն ունենալ միայն այն պատճառով, որ կարծում են, թե իմացությունն իրենից առաջ և անկախ գոյություն ունեցող իրականության բացահայտումն է...»[2]։

Այսպիսով, Դյուին պնդում է, որ բավական է հրաժարվել իմացության այն ըմբռնումից, ըստ որի իմացությունը օբյեկտիվ ռեալության արտացոլումն է, և իսկույն ևեթ գիտության ու կրոնի հաշտեցման պրոբլեմը կվերանա։ Նկատենք, որ Դյուիի այս խոստովանությունը շատ արժեքավոր է։ Այն ուղղակիորեն խոսում է հօգուտ մարքսիզմի այն թեզի, որի համաձայն ագնոստիկորեն մեկնաբանված գիտությունը դադարում է կրոնին հակասելուց և կարող է խաղաղ գոյակցել նրա հետ։ Հետևաբար մարքսիզմն իրավացի է՝ ագնոստիցիզմը որակելով որպես գիտության և կրոնի հաշտեցման իմացաբանական միջոց։

Ինչպես տեսանք, Ջեմսը գտնում էր, որ գիտության ու կրոնի միջև գոյություն ունի կոնֆլիկտ, որը հարկավոր է ամեն գնով վերացնել։ Այս նպատակով նա բացահայտորեն կոչ էր անում այնպես վերակառուցել գիտությունը, որպեսզի այն իր մեջ ընդգրկի նաև միստիկան։ Այդպիսի վերակառուցման հնարավորությունը, այսինքն՝ կրոնագիտության հետ հաշտեցնելու հնարավորությունը, Ջեմսը տեսնում էր այն բանում, որ դրանք երկուսն էլ, իբր, ընդհանուր

[1] *В. Джемс*, Зависимость веры от воли СПБ, 1904, стр. 347.

[2] F. Dewey, Quest for Certainity, New York, *1929, էջ 43*.

հիմք ունեն՝ փորձը, ճիշտ է, տարբեր բնույթի փորձը՝ գիտական և կրոնական։

Դյուին, ըստ երևույթին, իր նպատակների համար շահավետ չի համարում բացահայտորեն հանդես գալու միստիկայի ջատագովի դերում։ Ճիշտ նույնպես նա գործնականորեն ձեռնտու չի համարում ուշադրություն հրավիրել գիտության և կրոնի միջև հակասությունների առկայության վրա։ Նա նախընտրում է նույն խնդիրների լուծման մեկ ուրիշ, քողարկված եղանակ։ Դյուին հայտարարում է, որ գիտության և կրոնի հակասությունը, որի մասին այնքան շատ են խոսում, իբր մտացածին է. այն, իբր, բխում է գիտության սխալ ըմբռնումից, ուստի և այդ հակասության վերացման, այսինքն՝ գիտության ու կրոնի հաշտեցման բուն պրոբլեմը ըստ էության կարծեցյալ է։ Եվ Դյուին երկար ու համառորեն աշխատում է հիմնավորել այս թեզը։

Բայց իրականում պարզվում է, որ կարծեցյալ ու մտացածին է Դյուիի դիրքավորման տարբերությունը Ջեմսի դիրքավորումից։ Հիրավի, Ջեմսը նույնպես խոսում է կրոնի և վերակառուցված գիտության միջև հակասությունների բացակայության մասին։ Այն, ինչ Ջեմսն անվանում է գիտության վերակառուցում, Դյուիի մոտ հանդես է գալիս որպես հրաժարում գիտության նկատմամբ տիրապետող, բայց, նրա կարծիքով, սխալ հայացքից։ Ջեմսը ասում էր. վերակառուցեք գիտությունը, և կրոնի հետ նրա ունեցած հակասությունը կչքանա։ Դյուին ասում է. հրաժարվեցեք գիտության սխալ ըմբռնումից, և դուք կհամոզվեք, որ գիտության ու կրոնի միջև հակասություն չկա։

Ջեմսը և Դյուին հետապնդում են միևնույն նպատակը՝ հիմնավորել գիտության ու կրոնի հաշտեցումը և համատեղելիությունը, բայց նրանցից մեկը այդ մասին խոսում է բացահայտորեն, իսկ մյուսը գերադասում է խնամքով քողարկվել։

Դյուին չի սահմանափակվում գիտության և կրոնի միջև կոնֆլիկտի բացակայությունը ապացուցելով։ Նա ջանում է ապացուցել ավելին՝ կրոնի և գիտության միասնությունը։ Ինչպես և Ջեմսը, նա այդ միասնությունը տեսնում է այն բանում, որ կրոնը, գիտության նման, խարսխված է փորձնական հիմքի վրա։ Սակայն, ի տարբերություն Ջեմսի, որը կրոնի հիմքում դրվող փորձը համարում էր հատուկ փորձ, կրոնական փորձ, Դյուին հայտարարում է, որ գոյություն չունի մի առանձնահատուկ «կրոնական փորձ», բայց, ինչպես պարզվում է, գոյություն չունի միայն այն պատճառով, որ ամեն մի փորձ որոշակի իմաստով կրոնական է։ Դա պայմանավորված է, ըստ Դյուիի, այն հանգամանքով, որ մարդկությունն ապրում է մի աշխարհում, որն ինքն ի վիճակի չէ ճանաչելու, ուստի և ի վիճակի չէ կանխատեսելու իր գործողությունների իսկական հետևանքները, որոնք հաճախ սոսկալի են լինում, որի հետևանքով մարդը ենթարկվում է պատահականությունների քմահաճույքին։ Այս հանգամանքը, պնդում է Դյուին, մարդու մեջ առաջ է բերում վախի և կախման խոր զգացում։ Հենց այդ պատճառով էլ, ասում է Դյուին, մեր ամեն մի փորձ արտահայտում է մեր կախումը «մեր վերահսկողությունից դուրս ընկած ուժերից»։ Ամեն մի փորձի մեջ եղած կրոնական տարրն էլ հենց այն է, որ փորձը մեր մեջ առաջ է բերում «կախման այդ զգացմունքը», ընդգծում է Դյուին։

Կրոնականությունը հռչակելով մարդկային փորձի անբաժանելի հատկություն, Դյուին ավարտում է կրոնի և գիտության իր ձեռնարկած հաշտեցումը։ Գիտության և կրոնի միջև չկա և չի կարող որևէ կոնֆլիկտ լինել, որովհետև թե մեկը, թե մյուսը օբյեկտիվ ճշմարտություն չեն պարունակում։ Գի-



տությունը և կրոնը միասնական են, քանի որ ունեն միասնական հիմք՝ իր էությամբ կրոնական մարդկային փորձը։

Իսկ ի՞նչ է շահում կրոնը այն բանի ապացուցումից, թե ինքը խարսխված է փորձի վրա։ Այդ ապացույցը կրոնական պնդումներին փաստի նշանակություն է ընձեռում, մի հանգամանք, որը, նրա շատ ջատագովների կարծիքով, պարզապես անհրաժեշտ է կրոնի խարխլված հեղինակությունը բարձրացնելու համար։ Շնորհիվ այն բանի, որ ապացուցվում է, թե կրոնը փորձնական հիմք ունի, կրոնի պնդումները ձեռք են բերում ոչ միայն փաստի նշանակություն, այլև, ինչպես ասում է անգլիացի աստվածաբան Սատոնը, «ձեռք են բերում նույնպիսի հավաստիություն, ինչպես և բնագիտության դրույթները»[1]։

Ավելին, եթե աշխարհի էությունը համարվի միստիկական, ինչպես այդ անում են Վիտգենշտայնը և Ռիդը, ապա, բնականաբար, այդ միստիկականի մասին առավել արժեքավոր տեղեկություններ մեզ կարող է տալ հենց կրոնը։ Համեմատելով էսթետիկական, էթիկական և, այսպես կոչված՝ կրոնական փորձը դրանց իմացական արժեքի տեսակետից, նեոպոզիտիվիստ Ռիդը գրել է. էսթետիկական և էթիկական փորձը «իմացության սահմանափակ, մասնակի միջոց է, որը վերաբերում է միստիկական աշխարհի միայն մի քանի կողմերին»[2], այնինչ «կրոնը սպեցիֆիկ գործունեություն չէ՝ արվեստի կամ փիլիսոփայության նման։ Կրոնը բազմակողմանի ու ամբողջական մի կյանք է»[3]։

Ժամանակակից ագնոստիցիզմը, ինչպես տեսնում ենք, ոչ միայն չի կարող առարկել այդպիսի պնդումների դեմ, այլև նպաստում է դրանց, իսկ հաճախ էլ ինքն է քարոզում։ Վերիֆիկացիայի ագնոստիկական սկզբունքը, ըստ էության, տեսական մի հիմք է, որը տեղ է թողնում նման պնդումների համար։ Հիրավի, ըստ ժամանակակից ագնոստիցիզմի, որևէ դրույթ իմաստ ունի, եթե ենթարկվում է վերիֆիկացիայի, այսինքն՝ կարող է հանգեցվել, գոնե տեսականորեն, անմիջական փորձի տվյալներին։ Այս տեսակետից կրոնը, որքանով որ նրան վերագրվում է փորձնական հիմք, պետք է, ըստ վերիֆիկացիայի սկզբունքի, համարվի իմաստով օժտված դրույթների մի սիստեմ։

Վերիֆիկացիայի սկզբունքը նրա հիմնադիրների կողմից հռչակվել էր որպես գիտությունը փորձի տվյալների վրա հիմնելու, առարկայազուրկ, մտացածին դատողությունների, «մետաֆիզիկայի» դեմ պայքարելու, գիտությունը հակագիտական տեսակետներից մաքրելու միջոց։ Բայց փորձը հակառակն ապացուցեց։ Չնայած իր արտաքին գիտականությանը, վերիֆիկացիայի սկզբունքը, որը պահանջում է, որ ամեն մի դրույթ հանգեցվի անմիջականորեն զգայելի փորձնական հիմքի, իր էությամբ ուղղված է հենց գիտության սկզբունքների դեմ։ Գիտության սկզբունքները, լինելով իրականության խոր ընդհանրացման և տեսական ըմբռնման արգասիք, բնականաբար, չեն հանգում անմիջականորեն դիտվող առանձին փաստերին, ուստի և, վերիֆիկացիայի սկզբունքի համաձայն, կարող են անիմաստ հայտարարվել։

Իհարկե, վերիֆիկացիայի սկզբունքը հարված է հասցնում իդեալիզմի և թեոլոգիայի մի քանի կոպիտ ձևերին, բայց բուն ֆիդեիզմի, միստիկայի հետ այն միանգամայն համատեղելի է։ Ավելին, կրոնական փորձի ուսմունքի հետ զուգորդվելով, վերիֆիկացիան դառնում է տեսական մի հիմք, որի միջոցով

1 Տե՛ս, «Mind», 1950, № 234, էջ 247.

2 L. Reid, Ways of Knowledge and Experience, L., 1962, էջ 240.

3 Ibid, էջ 104.

փորձ է արվում կրոնը ներկայացնել որպես գիտությանը համարժեք գիտելիքների մի սիստեմ, որն ունի իր իմաստը, իր յուրահատուկ փաստական նշանակությունը։

Ագնոստիցիզմը փիլիսոփայական պայքարի ասպարեզ իջավ որպես իմացաբանական մի կոնցեպցիա, որը պնդում էր մարդու իմացական հնարավորությունների սկզբունքային սահմանափակվածությունը, դրանից անելով այն հետևությունը, որ կրոնը սկզբունքորեն չի կարող գիտելիք լինել, որ գիտելիքը ոչ մի առնչություն չունի այն բանի հետ, ինչ հավատն է պնդում, ուստի և չի կարող փաստարկ լինել հավատի դեմ։

Այսպիսին էր գիտության և կրոնի հաշտեցման սկզբնական այն տարբերակը, որ առաջ էր քաշել և պաշտպանում էր ագնոստիցիզմը։

Ագնոստիցիզմի էվոլյուցիան, սակայն, ցույց տվեց, որ այն հետևությունը, թե կրոնը սկզբունքորեն չի կարող գիտելիք լինել, նրա համար տրամաբանորեն անհրաժեշտ չէ։ Իմացության հիմքում դնելով սուբյեկտիվ փորձը և վերացնելով փորձի տվյալների ու տեսական ընդհանրացումների գնահատման ամեն մի օբյեկտիվ չափանիշ, ագնոստիցիզմը տեղ էր թողնում այն բանի համար, որ գիտության հիմքը կազմող փորձին համարժեք հայտարարվի մարդկային ամեն մի ապրում, ընդհուպ մինչև պատրանքն ու միստիկական տեսիլքը։ Ինչպես տեսանք, այդ հետևությունն արել են ժամանակակից ագնոստիցիզմի որոշ տեսաբաններ և այդ ուսմունքն օգտագործող աստվածաբանները։

Ժամանակին մահացու հարված հասցնելով ռևիզիոնիստներին, իդեալիստական փիլիսոփայության ամեն կարգի ներկայացուցիչներին՝ իմպերիալիստական բուրժուազիայի այդ ծախու գրչակներին, Վ. Ի. Լենինը նկատում էր, որ նրանք բոլորն էլ, վերջին հաշվով, ուղղակի հասնում են ֆիդեիզմին, «...որը կանգնած է սպառազեն, ունի իր տրամադրության տակ ահագին կազմակերպություններ և շարունակում է անշեղորեն ներգործել մասսաների վրա, իր օգտին ծառայեցնելով փիլիսոփայական մտքի ամենափոքր տատանումը» (Երկեր, հ. 14, էջ 480)։

Ահա թե ինչու, այսօր էլ ծավալուն պայքարը ագնոստիցիզմի և իդեալիստական փիլիսոփայության տարատեսակությունների դեմ, մեզ համար առաջնային խնդիր է։ Պայքարն արդի ագնոստիցիզմի դեմ, պայքար է տերտերականության և ռեակցիոն կրոնի դեմ։

Ժամանակակից ագնոստիցիզմը, ջնջելով գիտության և կրոնի տարբերությունները, ձգնում է հաշտեցնել դրանք։

Իր ծագման պահից առ այսօր ագնոստիցիզմը, չնայած իր ապրած էվոլյուցիային, հավատարմորեն ծառայել և ծառայում է բացահայտ ֆիդեիզմին ու իդեալիզմին։ Տարբերությունը միայն այն է, որ ներկայումս՝ գիտատեխնիկական մեծ նվաճումների և հասարակական առաջադիմության պայմաններում, ագնոստիցիզմը, որը, մասնավորապես, տեսական փաստարկներ է մատակարարում գիտության ու կրոնի հաշտեցման կամ համատեղման օգտին, օբյեկտիվորեն շատ ավելի թշնամի է գիտությանն ու բանականությանը, սոցիալական տեսակետից անհամեմատ ավելի ռեակցիոն է, քան Հյումի և Կանտի ժամանակներում։

Ա. ԷԿՄԱԼՅԱՆ

---



# ՀԻՄՆՈՎԻՆ ԱՌԱՐԿՈՒՄ ԵՆՔ

Հ. ԱՂԱՋԱՆՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների դոկտոր

«Լենինյան ուղիով» ամսագրի սեպտեմբեր ամսվա № 9-ում զետեղված էր ընկ. Ա. Եղիազարյանի «Սոցիալիստական ազգերի հատկանիշների հարցի շուրջը» խորագիրը կրող հոդվածը։ Այն ուղղված է ակադեմիկոս Ժուկովի որոշ դրույթների դեմ, սոցիալիստական ազգերի հատկանիշների վերաբերյալ (տե՛ս «Вопросы истории» № 12, դեկտ., 1961 թ.)։ Ընկեր Ժուկովն իր հոդվածում գրում է. «Սովետական Միության ժողովուրդների՝ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի ծաղկումը բնավ չի նշանակում ազգային ձևերի ստաբիլիզացիա։ ՍՍՌՄ ժողովուրդների կուլտուրական ընդհանրության աճը, նրանց տնտեսական ընդհանրությունը փոխում են սոցիալիստական ազգերի դեմքը։ Հայտնի է, որ ազգը պատմական կատեգորիա է։ Իր ժամանակին Ստալինի կողմից տրված ազգերի չորս հատկանիշները, մեր կարծիքով, առանց էական վերապահումների կիրառելի չեն Սովետական Միության այսօրվա սոցիալիստական ազգերի նկատմամբ։ Ազգերի այնպիսի հատկանիշներ, ինչպիսիք են՝ տերիտորիայի ընդհանրությունը, տնտեսական կյանքի ընդհանրությունը, տվյալ դեպքում համարյա կորցրել են իրենց վաղեմի նշանակությունը։ Հոգեկան կերտվածքի ընդհանրությունը՝ արտահայտված կուլտուրայի ընդհանրության մեջ նույնպես ենթարկվել է լուրջ մոդիֆիկացիայի։ Սովետական սոցիալիստական պետության այժմյան ազգերի մոտ ամբողջապես պահպանվել է միայն ազգային լեզվի ընդհանրությունը, որն անկասկած, գոյություն կունենա դեռ շատ երկար ժամանակ։ Ուրեմն, չորս հատկանիշներից, որոնք ըստ Ստալինի պարտադիր են ազգի համար, միայն մեկն ունի մշտական նշանակություն, իսկ մյուս երեքը աստիճանաբար մարում են։ Բայց ազգերը շարունակում են գոյություն ունենալ. այդ նշանակում է, որ հասել է այն ժամանակը, երբ պետք է վերանայել այն ֆորմուլան, ըստ որի եթե չկան ազգի հիշյալ չորս հատկանիշները, ապա չկան և ազգեր։ Պատմական նոր պայմաններում այդ ֆորմուլան անընդունելի է»։

Մենք բերեցինք ընկ. Ժուկովի հոդվածի այդ հատվածը պարզելու համար, թե ինչ դրույթների դեմ է առարկում ընկ. Եղիազարյանը։ Մենք գտնում ենք, որ ընկ. Ժուկովի հիշյալ դրույթները հիմնականում ճիշտ են. Նրանք հիմնված են մարքսիստական սկզբունքների և սովետական սոցիալիստական շինարարության փորձի ամփոփման վրա։ Սակայն պետք է նկատել, որ ընկ. Ժուկովը սահմանափակվել է սոսկ ընդհանուր հարցադրումով. նա չի փորձել մանրամասն հիմնավորել իր կողմից առաջադրված դրույթները։ Ընկ. Եղիազարյանի առարկությունները ճիշտ չեն և ոչ էլ հիմնավորված։ Նրա դատողությունների արատավոր կողմը կայանում է նրանում, որ նա հարցերի լուսաբանմանը մոտենում է ոչ դիալեկտիկորեն. դիալեկտիկորեն մոտենալ հարցին, նշանակում է, նախ՝ դիտել այն զարգացման մեջ, հայտաբերել ուսումնասիրվող երևույթի այն արմատական, որակական փոփոխությունները, որոնք դրսևորվում են զարգացման պրոցեսում, և ըստ այնմ որոշել ամեն մի որակական փոփոխման առանձնահատկությունները։

Անցնենք բուն հարցին։

Ընկ. Եղիազարյանը ձգնում է ապացուցել, որ բուրժուական ազգի հիշյալ երեք հատկանիշները (տերիտորիայի ընդհանրություն, տնտեսական կյանքի ընդհանրություն, հոգեկան կերտվածքի ընդհանրություն), պահպանում են իրենց նշանակությունը նաև սոցիալիստական ազգերի համար։ Դեռ ավելին. այդ հատկանիշները առավել գործոն նշանակություն են ստանում սոցիալիստական ազգերի մոտ։ Սրանից նա հետևեցնում է, որ այդ հատկանիշները չեն կարող մարել սոցիալիզմից կոմունիզմին անցնելու շրջանում.

Որ ազգի 4 հատկանիշների գաղափարը դեռևս մինչև Ստալինը պաշտպանել են Լենինը և նրա համախոհները՝ կասկածից դուրս է։ Լենինը իր ժամանակին, այս կամ այն առիթով, խոսել է ազգի տարբեր հատկանիշների նշանակության մասին։ Նա առանձին նշանակություն է տվել լեզվի հատկանիշին։ Դա բնավ չի ասում, թե Լենինը թերագնահատել է մյուս հատկանիշների նշանակությունը բուրժուական ազգի էության բնորոշման հարցում։ Սակայն բուրժուական ազգի հատկանիշների ֆորմուլան պատկանում է Ստալինին. պաշտպանել այդ հատկանիշներն իրենց ամբողջության մեջ, պարզապես նշանակում է պաշտպանել ստալինյան ֆորմուլան։ Բուրժուական ազգերի հատկանիշներն արմատապես տարբերվում են սոցիալիստական ազգերի հատկանիշներից։ Սոցիալիստական ազգերի մոտ ձևականորեն մնում են նույն հատկանիշները, բայց իրենց բովանդակությամբ նրանք բոլորովին այլ են։ Բուրժուական և սոցիալիստական ազգերը տարբեր դարաշրջանների ծնունդ են։ Այդ պատճառով նրանք արմատապես տարբեր պատմական մարդկային ընդհանրության ձևեր են։

Բուրժուական և սոցիալիստական ազգերն ունեն իրենց զարգացման օրինաչափությունները։ Կապիտալիզմի զարգացումը, առանձնապես նրա իմպերիալիստական շրջանում, բնական անհրաժեշտությամբ հանգեցնում է այն բանին, որ խոշոր բուրժուական ազգերը և իմպերիալիստական պետությունները իրենց գաղութային նվաճողական քաղաքականությամբ, բռնի ուժով ստրկացնում և ասիմիլյացիայի են ենթարկում փոքր ազգերին և գաղութային ժողովուրդներին։ Սոցիալիստական ազգերի զարգացումը, առանձնապես կոմունիզմին անցնելու շրջանում, բերում է այլ հետևանքների ազգային հարաբերությունների բնագավառում։ Նրանք ծաղկում և զարգանում են իրավահավասարության և քաղաքական ազատության պայմաններում, նրանց զարգացումը կատարվում է բարեկամության և փոխօգնության ամրացման և զարգացման պայմաններում։

Խոսենք առանձին հատկանիշների մասին այն հաջորդականությամբ, ինչ հաջորդականությամբ նրանք քննարկվում են ընկ. Եղիազարյանի հոդվածում։

Նախ՝ բուրժուական ազգերի տնտեսական կյանքի ընդհանրության մասին։ Պարզ է, որ մարդկանց ոչ մի պատմական ընդհանրություն գոյություն չի ունեցել առանց տնտեսական կյանքի ընդհանրության։ Բուրժուական ազգերը ևս, որպես մարդկանց պատմական ընդհանրության մի ձև, չէին կարող չառաջանալ որոշ տնտեսական կյանքի ընդհանրության պայմաններում։ Բուրժուական ազգերը առաջացել են կապիտալիստական արտադրական հարաբերությունների հիման վրա, այլ տնտեսական կյանքի ընդհանրություն բուրժուական ազգերն ունենալ չէին կարող։ Առաջանալով կապիտալիստական արտադրահարաբերությունների զարգացման հիմքերի վրա, բուրժուական ազգերն, իրենց հերթին, նպաստել են նրանց հետագա ամրացմանը և զարգացմանը։ Ընկ. Եղիազարյանը այդպես չի մոտենում այդ հատկանիշի բնորոշմանը. նա բնորոշում է այն հետևյալ կերպ. «Ըստ Լենինի և նրան հետևող տեսաբանների՝ տնտեսական կյանքի ընդհանրության հատկանիշը բովանդակում է իր մեջ ոչ թե տիրապետող արտադրական հարաբերությունները (բուրժուական թե սոցիալիստական դա միևնույն է), այլ այդ արտադրական հարաբերությունների հիման վրա, նրանց առկայության պայմաններում որոշ տերիտորիայի վրա ապրող ազգի տարբեր հատվածների ներգրավումը տնտեսական կյանքի մեջ» (էջ 79)։ Այնուհետև ընկ. Եղիազարյանը, որպես պատմական փաստ, նշում է, որ XVII դարից Ռուսաստանում տեղի է ունենում մասնատված շրջանների, երկրամասերի և իշխանությունների փաստական միաձուլումը մի ամբողջության մեջ, որը տեղի է ունենում զարգացող դրամական տնտեսության և ապրանքափոխանակության հիման վրա։ Այստեղից նա անում է հետևյալ եզրակացությունը։ Ուրեմն ո՞րն է ազգի կազմավորման էական և անհրաժեշտ կողմերից մեկը (այստեղ արդեն «կողմերից մեկը»)— «շրջանների, ժողովրդի առանձին հատվածների մասնատվածության վերացումը և նրանց ներգրավումը ընդհանուր տնտեսական կյանքի մեջ» (էջ 79)։ Այսպիսով, դուրս է գալիս, որ բուրժուական ազգերի տնտեսական կյանքի ընդհանրություն առանց տնտեսության։ Հապա ինչպե՞ս հասկանալ այն դրույթը, ըստ որի տնտեսական կյանքի ընդհանրությունը չի բովանդակում իր մեջ տիրապետող արտադրական (կամ տնտեսական) հարաբերությունները։ Հետաքրքիրն այն է, որ չնայած այն բանին, որ ըստ Եղիազարյանի տնտեսական կյանքի ընդհանրության հատկանիշը չի բովանդակում իր մեջ տիրապետող արտադրական հարաբերությունները, բայց այն արտահայտում է այդ հարաբերությունների հիման վրա «ազգի տարբեր հատվածների ներգրավումը տնտեսական կյանքի մեջ»։ Մեր կարծիքով, ընկ. Եղիազարյանը շփոթում է տարբեր բաներ. նախ՝ բուրժուական ազգերի տնտեսական կյանքի ընդհանրության հատկանիշը չի կարող լինել առանց կապիտալիստական արտադրահարաբերությունների որոշ ամբողջության, որպես ազգի տնտեսական հիմք։ Երկրորդ՝ չի կարելի բուրժուական ազգերի ձևա-



վավորման և առաջացման պրոցեսը նույնացնել բուրժուական ազգերի հատկանիշի հետ։ «Հատվածների ներգրավումը» դա բնորոշ է բուրժուական ազգերի սկզբնական շրջանի համար, այն ոչ թե տնտեսական կյանքի ընդհանրության հատկանիշ է, այլ բուրժուական արտադրահարաբերությունների պահանջը, նրանց ֆունկցիաներից մեկը։ Լենինը, խոսելով XVII դարի Ռուսաստանի երկրամասերի և շրջանների միավորման մասին՝ նկատի ուներ ռուսական ազգի ձևավորման սկիզբը, նա առարկում էր լիբերալ նարոդնիկության պարագլուխ Միխայլովսկուն, ըստ որի, 17-րդ դարում Ռուսաստանի երկրամասերի միացումը կատարվում էր ազգակցական կապերի հիման վրա։ Լենինն ապացուցում էր, որ այդ միացումը կատարվում է բուրժուական տնտեսական հարաբերությունների զարգացման հողի վրա։ Բանը նրանումն է, որ ընկ. Եղիազարյանը տնտեսական ընդհանրության իր բնորոշումը մեխանիկորեն տարածում է նաև սոցիալիստական ազգերի վրա։ Սոցիալիստական ազգերը ևս իշխող սոցիալիստական արտադրահարաբերությունների հիման վրա ձգտում են ազգի ցրված հատվածները համախմբել ազգային տերիտորիայի վրա։ Մոտենանք հարցին կոնկրետ։ Օրինակ, ի՞նչ հատվածներ են ձգտում համախմբել իրենց ազգային տերիտորիայի վրա Ուկրաինայի, Բելոռուսիայի սոցիալիստական ազգերը։ Մի՞թե Սովետական Միության սոցիալիստական տնտեսությունը, որը հանդիսանում է բոլոր սոցիալիստական ազգերի հիմնական պատվանդանը և միացնում է նրանց մի ընդհանուր սոցիալիստական ընտանիքի մեջ, ձգտում է «ազգային» տերիտորիայի վրա համախմբել այս կամ այն ազգի ցրված հատվածները։ Ստացվում է, որ սոցիալիստական միասնական տնտեսությունը մեր երկրում ոչ թե միացնում և օրգանապես շաղկապում է ազգերին, այլ այն սոսկ մի հենարան է՝ համախմբելու այս կամ այն ազգի հատվածները ազգային տերիտորիայում։ Եթե այդպես մոտենալու լինենք հարցին, ապա կգանք այն եզրակացության, որ միութենական տնտեսական ընդհանրության հիմնական էությունը ոչ թե ազգերի տնտեսական կապերի ամրացման և զարգացման մեջ է, այլ, ընդհակառակը, նրանց անջատման, ըստ ազգային տերիտորիաների, ազգի բաժան-բաժան հատվածները համախմբելու համար։ Դա տրամաբանորեն բերում է մի ինչ-որ ազգային սոցիալիստական տնտեսության, մի բան, որ միանգամայն անհեթեթ է և ոչ մի առնչություն չունի մարքսիստական թեորիայի հետ։ Այդ է մասամբ պատճառը, որ ընկ. Եղիազարյանը վճռականորեն դեմ է տնտեսական ընդհանրության հատկանիշի մարման անհրաժեշտության տեսակետին։

Ընկ. Եղիազարյանը այս հատկանիշի բնորոշման հարցում սխալ է պատկերում ձևի և բովանդակության դիալեկտիկան։ Նա գտնում է, որ այդ հատկանիշի բովանդակությունը «մի կերպարանք» է ընդունում բուրժուական ազգերի մոտ, և մի այլ կերպարանք՝ սոցիալիստական ազգերի մոտ։ Այսպես, ուրեմն, բովանդակությունը նույնն է, իսկ նրա արտահայտման ձևերը՝ տարբեր։ Հեղինակը, ըստ երևույթին, ընդունում է, որ գոյություն ունի մի աբստրակտ տնտեսական կյանքի ընդհանրություն, որը տարբեր կերպարանք է ընդունում բուրժուական և սոցիալիստական ազգերի մոտ։ Տնտեսական ընդհանրության ձևը նա անջատում է նրա պատմական որոշ բովանդակությունից, դուրս է գալիս, որ օրինակ, բուրժուական ազգի տնտեսական կյանքի ընդհանրությունը՝ կապիտալիստական արտադրահարաբերությունների ամբողջությունը, անջատ է կապիտալիստական արտադրաուժերից, որպես նրանց բովանդակությունից։ Սա միանգամայն սխալ է։ Կամ թե չէ՞ սոցիալիստական արտադրահարաբերությունները, նրանց ամբողջությունը, որպես սոցիալիստական ազգի տնտեսական կյանքի ընդհանրության հիմք՝ կտրված են սոցիալիստական արտադրաուժերից, որպես նրանց բովանդակությունից։ Խնդիրը ձևի մեջ չէ, այլ ձևի և բովանդակության միասնության, որը ներկայացնում է ամեն մի ազգի տնտեսական կյանքի ընդհանրություն։ Սրանից հետևում է, որ սոցիալիստական ազգերի տնտեսական կյանքի ընդհանրությունը, իր ձևի և բովանդակության միասնությամբ, արմատապես տարբերվում է բուրժուական ազգերի տնտեսական կյանքի ընդհանրությունից. նրանք ունեն իրենց զարգացման յուրահատուկ դիալեկտիկան։ Երկու տարբեր ազգերի տնտեսական կյանքի ընդհանրության հատկանիշները չպետք է միմյանց հետ շփոթել։ Ազգի տնտեսական կյանքի ընդհանրության տակ պետք է հասկանալ նրա սոցիալ-տնտեսական կառուցվածքը՝ իր առանձնահատկություններով։ Բուրժուական ազգերի տնտեսական կյանքի ընդհանրություն ասելով՝ պետք է հասկանալ կապիտալիստական արտադրահարաբերությունների ամբողջությունը, պայմանավորված հասարակական արտադրաուժերի զարգացման որոշ աստիճանով— հիմնված արտադրամիջոցների մասնավոր կապիտալիստական սեփականության և բանվոր դասակարգի շահագործման վրա։ Բուրժուական ազգերի տնտեսական կյանքի ընդհանրությունը անտագոնիստական բնույթ ունի և իր այդ բնույթով նա հակադրվում է մի այլ բուրժուական ազգի տնտեսական կյանքին։

Բուրժուական ազգերի ողջ հասարակական կյանքը իր բոլոր բնագավառներում անտագոնիստական է. նրանց տնտեսական կյանքի դիալեկտիկան անխուսափելիորեն բերում է ազգամիջյան պատերազմների, որի ընթացքում խոշոր բուրժուական ազգերը ստրկացնում են փոքր ազգերին ու ժողովուրդներին և ասիմիլյացիայի ենթարկում նրանց: Այդ երևույթը առանձնապես բնորոշ է կապիտալիզմի իմպերիալիստական շրջանի համար:

Այլ է սոցիալիստական ազգերի տնտեսական կյանքի ընդհանրության դիալեկտիկան: Այստեղ Սովետական Միության տնտեսական կյանքի ընդհանրությունը գերակշռում է առանձին ազգերի տնտեսական կյանքի ընդհանրությանը: Սոցիալիստական ազգերը միմյանց հետ կապված են ընդհանուր տնտեսական կապերով և մի ազգի տնտեսական կյանքի զարգացումը պայմանավորված է մյուս ազգերի տնտեսական կյանքի զարգացմամբ ու բարգավաճմամբ:

Սոցիալիստական ազգերի տնտեսական կյանքը հիմնված է հանրային արտադրամիջոցների և նրանց վրա աշխատող արտադրողների փոխադարձ օգնության և աշխատակցության վրա: Համաժողովրդական տնտեսությունը, իր զարգացման ընթացքում, աստիճանաբար ազատվում է ազգային տնտեսական առանձնահատկություններից, սոցիալիստական ազգերի տնտեսական կյանքի ընդհանրության զարգացումը բերում է նրանց բարեկամության ամրացման՝ հետզհետե ծավալվող սոցիալիստական դեմոկրատիայի պայմաններում:

Սոցիալիստական ազգերի տնտեսական կապերն այնքան են զարգանում, որ այժմ ծավալուն կոմունիստական շինարարության հսկայական խնդիրները լուծվում են նրանց համատեղ ուժերով: Սոցիալիստական ազգերից ո՞ր մեկը կարող է միայն իր ուժերով և միջոցներով ապահովել, օրինակ, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը: Կոմունիզմին անցնելու շրջանում երկրի արտադրողական ուժերի զարգացումը դուրս է գալիս առանձին ազգերի սահմաններից և հետզհետե ընդունում է միջազգային բնույթ: Այսպես, օրինակ, Տաջիկստանի Նուրեկի-գէսի կառուցումը, կամ Կիրգիզիայի տոկտոկուլյան էներգետիկական և հիդրոտեխնիկական հանգույցի ստեղծումը և այլն, առաջ են եկել ամբողջ Միջին Ասիայի պահանջներից: Այդ կարգի շինարարության թվին է պատկանում Անդրկովկասի, Մերձբալթյան, Միջին Ասիայի և այլ շրջանների էներգետիկ սիստեմների ստեղծումը: Այդ վիթխարի շինարարությունները ներգրավում են իրենց մեջ տարբեր սոցիալիստական ազգերի աշխատավորներին: Այսպես, օրինակ, Կարագանդայի մետալուրգիական գործարանի կառուցմանը մասնակցել են երեսուն ազգերի ներկայացուցիչներ, Կրեմենչուգի գէսի՝ 41 ազգությունների, Բրատսկի գէսի՝ 50 ազգությունների ներկայացուցիչներ: Այս տվյալները ցույց են տալիս, որ մեր ժողովրդական տնտեսության առաջ ծառացած խոշորագույն խնդիրները կարող են լուծվել և լուծվում են սոցիալիստական ազգերի համատեղ ուժերով: Այդ չի նշանակում, որ առանձին սոցիալիստական ազգեր չունեն իրենց տնտեսական կյանքը: Բնորոշը նրանց համար այն է, որ նրանք տնտեսապես կապված են միմյանց հետ և որ նրանց տնտեսական միասնության մեջ է ամենից առաջ նրանց տնտեսական կյանքի ընդհանրությունը: Այդ ընդհանրությունն անտագոնիստական բնույթ չունի և իր ազգային հատվածներով ենթակա է ընդհանուր, պլանաչափ զարգացման: Ամեն ազգի տնտեսական կյանքն ունի ազգային սպեցիֆիկ առանձնահատկություններ, որոնք պայմանավորված են երկրի աշխարհագրական, կլիմայական և այլ պայմաններով: Սակայն այդ առանձնահատկությունները բնավ չեն փոխում սոցիալիստական ազգերի միասնական տնտեսական կյանքի ընդհանրության հիմնական բնույթը, և այդ պատճառով չեն կարող վերջինիս բնորոշ հատկանիշը համարվել:

Սխալվում է ընկ. Եղիազարյանը ազգի տերիտորիայի ընդհանրության հարցում: Նա գտնում է, որ տերիտորիայի ընդհանրությունը սոցիալիստական ազգերի համար նույն նշանակությունն ունի, ինչ որ բուրժուական: «Մարքսիստ-լենինյանների համար,— գրում է նա,— տերիտորիալ ընդհանրության հատկանիշը բովանդակում է իր մեջ ազգի կոմպակտ բնակությունը սերնդից-սերունդ որոշ տերիտորիայի վրա, ըստ որում անհրաժեշտ չէ, որ այդ տերիտորիան ներկայացնի իրենից պետական տերիտորիա, այսինքն անհրաժեշտ չէ, որպեսզի տվյալ տերիտորիայում ապրող ազգն ունենա իր պետականությունը» (էջ 81): Այնուհետև նա ընդգծում է. «Մենք պնդում ենք, որ սահմանների մեջ պարփակված սոցիալիստական ազգի տերիտորիալ ընդհանրությունը չի դադարում ազգը բնորոշող հատկանիշ լինելուց»: Նման դատողությունները ազգի տերիտորիայի ընդհանրության հատկանիշի մասին, մեր կարծիքով, ոչ մի ընդհանուր բան չունեն նրա մարքս-լենինյան ըմբռնման հետ: Ազգի տերիտորիան պետք է դիտել ոչ թե մի ինչ-որ վերացական երկրամաս կամ աշխարհամաս, այլ որպես պատմական, սոցիալ-տնտեսական կատեգորիա: Բուրժուական ազգերի պայմաններում հողը (տերիտորիան) հանդիսանում է կապիտալիստների և կալվածատերերի մասնավոր սեփականությունը,



և որպես այդպիսին մտնում է ազգային արտադրության միջոցների մեջ, կազմում նրանց բաղկացուցիչ մասը, այն չի կարելի դիտել կտրված բուրժուական հասարակության սոցիալ-տնտեսական կառուցվածքից: Հայտնի է, օրինակ, որ տերիտորիան ֆեոդալիզմի շրջանում այլ սոցիալ-տնտեսական իմաստ ուներ. նա այլ իմաստ է պարփակում բուրժուական հասարակության պայմաններում: Բուրժուական հասարակության մեջ, որպես սեփականության մի ձև, նա հանդիսանում է ազգերի անտագոնիստական հարաբերությունների և կոնֆլիկտների առարկա: Բուրժուական ազգերը ձգտում են լայնացնել իրենց տերիտորիայի սահմանները՝ այլ ազգերի տերիտորիայի հաշվին: Այստեղից էլ ազգամիջյան պատերազմները, որոնք անխուսափելի են դառնում տերիտորիաների բաժանման և վերաբաժանման համար:

Բոլորովին այլ սոցիալ-տնտեսական իմաստ ունի տերիտորիայի ընդհանրությունը սոցիալիստական ազգերի մոտ: Այստեղ տերիտորիան Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության սեփականությունն է և իր արտաքին ու ներքին հարստություններով մտնում է Միության սոցիալիստական տնտեսության մեջ. նա չի բաժանվում ըստ ազգությունների, այլ կազմում է նրանց անբաժանելի սեփականությունը: Տերիտորիայի ընդհանրության հատկանիշի այն ըմբռնումը, որ տալիս է ընկ. Եղիազարյանը, ընդունելի լինել չի կարող ոչ բուրժուական և ոչ էլ սոցիալիստական ազգերի համար: Ժողովուրդները «կոմպակտ» և «սերնդից-սերունդ» բնակություն են հաստատել որոշ տերիտորիաներում և կապիտալիզմից առաջ, բայց նրանք ազգություններ չեն եղել:

Ընկ. Եղիազարյանը, ի ապացույց այն բանի, որ տերիտորիայի ընդհանրության հատկանիշը գործոն նշանակություն ունի սոցիալիստական ազգերի համար, նշում է, որ այդ ազգերը տերիտորիալ տեղաշարժերի են ենթարկվել, որ նրանք ապրում են «կոմպակտ որոշ տերիտորիայում, ամուր կպած են իրենց հողին»: Բացի դրանից, նա նշում է, որ պարտիան և կառավարությունը մի շարք միջոցառումներով հնարավորություն են ընձեռում ազգի տարբեր տերիտորիաներում ցրված հատվածների վերամիավորման մեկ տերիտորիայում, իր ազգային պետական տերիտորիայում և այլն: Այդ միջոցների թվին են պատկանում Արևելյան և Արևմտյան Բելոռուսիայի վերամիավորումը միասնական բելոռուսական սոցիալիստական պետության մեջ, Կլայպեդայի մարզի հանձնումը Լիտվային, Ղրիմի միացումը Ուկրաինային և այլն: Այնուհետև նա ընդգծում է. «Այս բոլոր ակտերը, որոնց նպատակը Սովետական Միության սոցիալիստական ազգերի տերիտորիալ ընդհանրությունների ամրապնդումն էր...»: Բայց ինչո՞ւ է ընկ. Եղիազարյանը կարծում, որ այդ վերամիավորումները կատարվել են սոսկ ազգերի տերիտորիալ ընդհանրությունը պահպանելու և ընդհանրացնելու տեսակետից: Ինչու չպետք է ենթադրել, որ նրանք իրագործվել են ամենից առաջ սովետական սոցիալիստական ժողովրդական տնտեսության շահերից, հաշվի առնելով տնտեսական ընդհանրության, այլև ազգային այլ առանձնահատկություններ: Սխալ է այդ միջոցառումները հանգեցնել սոցիալիստական ազգերի տերիտորիալ ընդհանրության պաշտպանության սկզբունքին:

Վերոհիշյալով մենք չենք ուզում ասել, որ «ազգերի կոմպակտ բնակությունը» նշանակություն չունի տերիտորիայի հատկանիշը բնորոշելիս: Մենք ուզում ենք նշել միայն այն, որ մարքսիստը բուրժուական ազգի գլխավոր հատկանիշներից մեկը բնորոշելիս չպետք է սահմանափակվի նման ընդհանուր դատողություններով, այլ պետք է դրսևորի տերիտորիայի սոցիալական բովանդակությունը, մի բովանդակություն, որը պայմանավորված է տվյալ հասարակական ֆորմացիայի բնույթով:

Սովետական ազգերն ունեն իրենց տերիտորիան և տնտեսական կյանքը: Սրանք կազմում են Սովետական Միության տերիտորիայի և տնտեսական կյանքի ընդհանրության անբաժանելի մասերը, որոնք ունեն իրենց ազգային առանձնահատկությունները: Այս առանձնահատկություններն արդյունք են ազգերի աշխարհագրական, կլիմայական, լեզվական և այլ պայմանների:

Սոցիալիստական ազգերն ունեն նաև իրենց սահմանները, որոնք իրենց սոցիալական բնույթով արմատապես տարբերվում են բուրժուական ազգերի սահմաններից: Բուրժուական ազգերի սահմանների հարցը մի ազգի հակադրության հարցն է մի այլ բուրժուական ազգին: Սահմանների հարցը բխում է բուրժուական ազգերի անտագոնիստական բնույթից: Այլ իմաստ ունի սահմանների հարցը սոցիալիստական ազգերի մոտ: Սահմանները պայմանական են և իրենց սոցիալական էությամբ ոչ թե հակադրում են մի ազգը մյուսին, այլ, ընդհակառակը, նպաստում նրանց համերաշխության և բարեկամության ամրացմանը: Միանգամայն հասկանալի է, որ սոցիալիստական ազգերի տերիտորիան, լինելով միութենական տերիտորիայի ընդհանրության անբաժան մասը, նրանց ազգային սահմանների հարցը երկրորդական նշանակություն է ստանում: Դեռևս 1919 թվականին Լենինը, բնորոշելով սոցիալիստական պետության սահմանների հարցը, գրում էր. «Այն հարցը, թե ինչպես

որոշել պետության սահմանները, քանի որ մենք ձգտում ենք սահմանների լիակատար ոչնչացման, հիմնական, կարևոր հարց չէ, այլ երկրորդական» (հ. 30, էջ 269)։ Ըստ ընկ. Եղիազարյանի՝ ստացվում է, որ այժմ սոցիալիստական ազգերի համար տերիտորիայի ընդհանրության և նրանց սահմանների հարցը ավելի գործոն նշանակություն է ստանում։ Եվ ինչո՞ւմն է կայանում նրանց գործոն նշանակությունը։ Նրանց գործոն նշանակությունը, ամենից առաջ, կայանում է նրանում, որ նրանք ապահովում են ազգի ցրված հատվածների վերամիավորումը ազգային տերիտորիայի վրա։ Այս տեսակետը սխալ է և արդյունք հարցի միակողմանի վերլուծման։ Այն կարող է լուրջ մոլորության աղբյուր դառնալ, մանավանդ, որ ընկ. Եղիազարյանը ազդարարում է, որ ազգերի վերամիավորման ակտերը կարող են և կիրառվեն նաև ապագայում, մինչդեռ, ինչպես նշեցինք վերը, սոցիալիստական ազգերի վերամիավորումները կատարվել են ոչ թե նրանց տերիտորիալ ամբողջությունը պահպանելու, այլ, ամենից առաջ, նրանց հոգեկան և նյութական կուլտուրայի զարգացման համար բարենպաստ պայմաններ ստեղծելու նպատակով։

Այժմ ազգի բնորոշման երրորդ հատկանիշի մասին։

Բուրժուական ազգի բնորոշման երրորդ հատկանիշը հոգեկան կերտվածքի ընդհանրությունն է։ Այս հարցում ևս չենք կարող համաձայնել ընկ. Եղիազարյանի հետ։ Բնորոշելով այդ հատկանիշը, նա գրում է. «Ազգերի հոգեկան կերտվածքը (որ ազգերի՝ միևնույն է— Հ. Ա.) կազմում է ազգային տարբերությունների, ազգային առանձնահատկությունների որոշակի կողմը, տարբերություններ, որոնք պայմանավորված են յուրաքանչյուր ժողովրդի պատմական զարգացման առանձնահատկություններով և, անշուշտ, ժամանակի ընթացքում ենթարկվում են փոփոխության, կերպարանափոխվում են, առաջանում են նորերը և այլն»։ Այս բնորոշումը չափազանց վերացական է և չի կարող տարածվել սոցիալիստական ազգերի հոգեկան կերտվածքի վրա։ Հեղինակը, ըստ երևույթին, մոռանում է, որ ի դեմս սոցիալիստական ազգերի, նա գործ ունի մարդկային նոր տիպի ընդհանրության հետ, մի ընդհանրություն, որ իր հոգեկան կառուցվածքի առանձնահատկություններով ամբողջապես տարբերվում է բուրժուական ազգերի հոգեկան կառուցվածքից։ Սոցիալիստական ազգերի հոգեկան կառուցվածքը իր էությամբ միևնույն է, նրա մեջ կան ոչ էական տարբերություններ, որոնք կապված են անցյալի տրադիցիաների, սովորությունների, կենցաղային առանձնահատկությունների հետ և այլն։ Իսկ ինչ վերաբերում է կենցաղաձևին, զգացմունքներին, հայացքներին և այլն, ապա այդ տեսակետից ոչ մի տարբերություն չկա սոցիալիստական տարբեր ազգերի ներկայացուցիչների միջև։ Նրանց հոգեկան աշխարհը միասնական է և ընդհանուր։ Մինչդեռ ընկ. Եղիազարյանը շեշտը դնում է տարբերությունների վրա և իր աբստրակտ բնորոշումով նույնացնում սոցիալիստական և բուրժուական ազգերի հոգեկան կերտվածքը։ Սոցիալիստական ազգերի հոգեկան կերտվածքի համար բնորոշ են ոչ թե տարբերությունները, այլ այն, ինչ որ ընդհանուր է նրանց համար։

Ի՞նչ է նշանակում ձևով ազգային և բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրա։ Սոցիալիստական ազգերն ունեն միասնական հոգեկան կուլտուրա (կա և նյութական կուլտուրա)։ Բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրա ասելով պետք է հասկանալ հենց այդ ընդհանուր կողմը, որը նրանց շաղկապում է մի ամբողջության մեջ։ Սակայն այդ ընդհանուրի մեջ կան և տարբերություններ, ինչպես, օրինակ՝ լեզուն, տրադիցիաները, սովորությունները և այլն, որոնք և իրենց ամբողջությամբ կազմում են հոգեկան կառուցվածքի ազգային ձևը։ Մենք բնավ չենք հերքում և չենք կարող հերքել այն, որ այդ տարբերությունները կարևոր դեր են կատարում սոցիալիստական բովանդակության զարգացման գործում։ Մենք հերքում ենք միայն այն, որ այդ տարբերությունները ներկայացվում են իբրև ազգի հոգեկան կերտվածքի գլխավոր և որոշիչ կողմը։ Կարող է հարց ծագել. չէ՞ որ երբեմն ձևը ակտիվ դեր է կատարում բովանդակության զարգացման գործում, հապա ինչո՞ւ սոցիալիստական ազգերի կուլտուրայի ազգային ձևը չի կարող ներկա պայմաններում գլխավորը հանդիսանալ։ Պատասխանում ենք. ինչ խոսք, որ ազգային ձևը կարևոր դեր է կատարում սոցիալիստական ազգերի կուլտուրայի զարգացման գործում, ինչպես, օրինակ, լեզուն, որը խոշորագույն մի զենք է, որով մեր պարտիան մտցնում է մասսաների գիտակցությունը մարքս-լենինյան թեորիան, պարտիայի կարևորագույն սկզբունքներն ու որոշումները, դարձնում դրանք մասսաների սեփականություն և այլն։ Այնուհետև. ազգի անցյալի դեմոկրատական կուլտուրայի ժառանգությունը, նրա վերամշակված օգտագործումը և այլն, իրենց զգալի դերն են կատարում ազգային կուլտուրայի ստեղծման և զարգացման գործում։ Բայց ազգային ձևը, ամեն դեպքում, հրապարակ է գալիս որպես մի միջոց՝ սոցիալիստական բովանդակության զարգացման համար։ Նա ինքնապատակ չէ, նա ոչ թե նպաստում է ազգային տարբերությունների խորացմանը, այլ, ընդհակառակը, այդ տարբերությունների վերաց-



ման՝ սոցիալիստական բովանդակությունը զարգացնելու ուղին է հարթում։ Ազգային կուլտուրայի սոցիալիստական բովանդակության զարգացումը միաժամանակ ազգային տարբերությունների հաղթահարման պրոցեսն է։ Մի բան է ազգային ձևը դիտել որպես մի միջոց բովանդակության զարգացման համար, և մի ուրիշ բան՝ այդ տարբերությունների ամբողջությունը դիտել որպես ազգային կուլտուրայի բովանդակություն։ Ըստ ընկ. Եղիազարյանի ստացվում է, որ սոցիալիստական ազգի հոգեկան կերտվածքը արդյունք է ոչ թե սոցիալիստական ազգերի հոգեկան աշխարհի միասնության, այլ ազգային տարբերությունների, որ հիմնովին սխալ է։ Նման մոտեցումը հարցին մեզ կբերի այն հետևության, որ ազգային կուլտուրան ոչ թե միայն ձևով է ազգային, այլև իր բովանդակությամբ։

Մոտենանք հարցին այլ տեսակետից։ Եթե մենք ընդունում ենք, որ սոցիալիստական ազգերի հիմնական պատվանդանը, դա սոցիալիստական միասնական տնտեսությունն է իր բնորոշ կողմերով, ապա սրանից, ինքնըստինքյան հետևում է, որ այդ տնտեսական հիմքի վրա պետք է ստեղծվի և ձևավորվի ազգերի մի ընդհանուր հոգեկան կերտվածք։ Չէ՞ որ տնտեսության առանձնահատկություններով է, վերջին հաշվով, պայմանավորվում ամեն մի հասարակության հոգեկան կերտվածքի էությունը՝ իր առանձնահատկություններով։ Բացի այդ, մեր սովետական հասարակությունն իր սոցիալական կառուցվածքով միատարր է, նա միատարր է այն իմաստով, որ հասարակության մեջ գոյություն չունեն անտագոնիստական դասակարգեր, հակադիր հոգեկան կառուցվածքներով։ Բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և ինտելիգենցիան գտնվում են միմյանց հետ բարոյա-քաղաքական և իդեական միասնության մեջ։ Այդ հանգամանքը ևս խոսում է այն մասին, որ սոցիալիստական ազգերի հոգեկան կերտվածքը անտագոնիստական բնույթ ունենալ չի կարող։ Նա իր էությամբ միասնական է և ընդհանուր։ Սովետական ազգերի հոգեկան կերտվածքը մի նոր և բարձր որակական կրություն է ներկայացնում, որը ստեղծվում է սոցիալիստական ազգերի կազմավորման ու զարգացման պրոցեսում, մի պրոցես, որը բերում է նոր, միասնական կուլտուրայի ստեղծման։ Այդ տեսակետից բնորոշ են ՍՄԿՊ Ծրագրի հետևյալ տողերը՝ «... քանի որ բոլոր ազգերը իրավահավասար են, նրանց կյանքը կառուցվում է միասնական սոցիալիստական հիմքի վրա, և հավասար չափով բավարարվում են յուրաքանչյուր ժողովրդի նյութական ու հոգևոր պահանջմունքները, նրանք բոլորը ընդհանուր կենսական շահերով միավորված են մեկ ընտանիքում և համատեղ ընթանում են դեպի միասնական նպատակ՝ կոմունիզմ» (էջ 135)։ Տարբեր ազգությունների պատկանող սովետական մարդկանց մեջ ստեղծվել են հոգևոր կերպարի ընդհանուր գծեր, որոնք հասարակական նոր տիպի հարաբերությունների ծնունդ են և որոնք մարմնավորում են ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների լավագույն տրադիցիաները։

Այժմ մի քանի խոսք սոցիալիստական ազգերի հատկանիշների մարման մասին։

Ընկ. Եղիազարյանը այն կարծիքին է, որ այդ հատկանիշները ոչ թե մարում, այլ ավելի գործոն նշանակություն են ստանում սոցիալիզմից կոմունիզմին անցնելու շրջանում։ Ի՞նչ պետք է հասկանալ ազգի հատկանիշների մարման հասկացության տակ։ «Մարումը» մի ակնթարթի և հանկարծակի ակտ չէ, այլ երկարատև պրոցես, որի ընթացքում հատկանիշները, կատարելով իրենց դերը, միաժամանակ և մարում են։ Սա մի հակասական դիալեկտիկական պրոցես է. բայց ոչ ոք այժմ խնդիր չի դնում և դնել չի կարող նրանց մարման մասին, քանի որ մարման պրոցեսը օրգանապես բխում է ծավալուն կոմունիստական շինարարության բնույթից։ Նա տեղի է ունենում աստիճանաբար և երբեմն աննկատելի կերպով։ Էլ ե՞րբ կարող է տեղի ունենալ այդ հատկանիշների մարման պրոցեսը, եթե ոչ այսօր, կոմունիզմին անցնելու շրջանում։ Դեռևս 1913 թվականին Լենինը, նշելով պրոլետարիատի դերը ազգերի մերձեցման գործում, գրում էր. «Պրոլետարիատը ոչ միայն հանձն չի առնում պաշտպանել յուրաքանչյուր ազգի ազգային զարգացումը, այլ, ընդհակառակը, մասսաներին զգուշացնում է նման պատրանքներից, պաշտպանում է կապիտալիստական շրջանառության լիակատար ազատությունը, ողջունում է ազգերի ամեն մի ասիմիլյացիա, բացառությամբ բռնի կամ արտոնությունների վրա հիմնված ասիմիլյացիայից» (հ. 20, էջ 24—25)։

Այս տողերը ցույց են տալիս, որ Լենինը դեռևս կապիտալիզմի զարգացման պայմաններում նշում էր պրոլետարիատի պատմական դերը ազգերի մերձեցման և ձուլման գործում։ Էլ ի՞նչ խոսք կարող է լինել սոցիալիզմի մասին, երբ նման պրոցեսի համար ստեղծված են բոլոր քաղաքական, սոցիալական և տնտեսական նախադրյալները։ Բայց ընկ. Եղիազարյանը կարող է առարկել, որ կոմունիզմի ծավալուն շինարարության ընթացքում սոցիալիստական ազգերը պետք է ավելի ծաղկեն, և ուրեմն, նրանց հատկանիշներն ավելի գործոն նշանակություն պետք է ստանան։ Հենց խնդիրը նրանումն է, որ սոցիալիստական ազգերի ծաղ-

ԳԻՆԸ 25 Կ. ИНДЕКС 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԿԱՆԱՑԻ ԿՈՇԻԿՆԵՐ ՊՈԼԻՄԵՐՆԵՐԻՑ

Փրփրեցված պոլիմերների հիման վրա ստացվել է նոր կաշեփոխարինիչ, որից կարելի է պատրաստել կանացի կոշիկներ։ Նոր նյութը փափուկ է, էլաստիկ, թեթև։ Ի տարբերություն այլ կաշեփոխարինիչների, վերջինս ծակոտկեն է, օդաթափանց։ Ուստի այն կարելի է օգտագործել ամառային կոշիկներ պատրաստելու համար։

Քիմիկոսները նոր արհեստական կաշվին կարող են տալ տարբեր գույներ, արտաքնապես նմանեցնել բնական կաշվին։ Փրփրեցված պոլիմերներից ստացված արհեստական կաշվի արտադրությունն այժմ յուրացվում է երկրի մի քանի գործարաններում։ Այդ կաշվից պատրաստված կոշիկներն, ամենայն հավանականությամբ, դուր կգան կանանց։

## ՍՈՍԻՆՁ ԲԵՏՈՆԻ ՀԱՄԱՐ

Այս սոսինձը արտաքնապես ոչնչով չի տարբերվում սովորականից, սակայն նրանով սոսնձվում են զանգվածային երկաթբետոնային սալերը։ Սոսինձը բաղկացած է սովորական գետնավազից՝ ավելի քան 60%։ Մնացած բաղադրիչներն են էժան ձյութերը և ոչ մեծ տոկոսով էպոկսիդի ձյութը։ Սոսնձաբետոնը չի վախենում ջերմաստիճանի փոփոխություններից, չի ենթարկվում կոռոզիայի և միանգամայն անտարբեր է ամենաագրեսիվ միջավայրերի նկատմամբ։ Սոսնձաբետոնը շինարարություն են տանում սալերի ձևով՝ երկաթալարի ոչ մեծ բեխիկներով։ Այդ բեխիկները սոսնձի մեջ դրված լարերի ծայրերն են։ Դրանց հետ պետք է աշխատել այսպես. երկու կոնստրուկցիաների միջև դրվում է սալը և լարիկները միացվում են էլեկտրական էլեմենտին։ 100—150°-ի դեպքում այն հալվում է և ստացվում է ամուր միացություն։ Շատ ժամանակ չի անցնի, որ կսոսնձվեն երկաթբետոնե տներ, գործարաններ և նույնիսկ հիդրոկայանների ջրապատնեշներ։

## ՄԱՔՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ «ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒ ԵՆ» ԲԱԿՏԵՐԻԱՆԵՐԸ

Արհեստական մանրաթելի համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտի Լենինգրադի ֆիլիալի մասնագետները գտել են արդյունաբերական հոսքաջրերը մաքրելու նոր եղանակ։ Դա կատարում են այրոբային բակտերիաները։ Հատուկ ջրավազանները լցվում են հոսքաջրերով, այնուհետև այնտեղ բաց են թողնվում բակտերիաներ։ Ջուրը կարծես եռում է, երբ այնտեղ է մղվում խտացված օդը, որն անհրաժեշտ է լուծույթի մեջ ժամանակավորապես բնակվող բնակիչներին։ Բակտերիաները սկսում են արագ թափով բազմանալ և ունեն չըտեսնված «ախորժակ»։ 5—6 ժամվա ընթացքում այդ «մաքրամոլները» լուծույթի մեջ լրիվ ոչնչացնում են օրգանական նյութերը, դրանք վերածելով ջրի և ածխաթթու գազի։

## ԳԼՅՈՒԿՈԶԱ ԲԱՄԲԱԿԻՑ

Մինչև այսօր փայտանյութը գլյուկոզա ստանալու համար ամենաէժան հումքն էր համարվում։ Այժմ հայտնվել է փայտանյութի մրցակից բամբակե աղվամազ (լինտ)։

Ուզբեկստանի քիմիկոսները մշակել են մի տեխնոլոգիա, որը հնարավորություն է տալիս բամբակե աղվամազից կորզելու զգալիորեն ավելի շատ բյուրեղյա գլյուկոզա, քան փայտանյութից։ Ըստ որում դա էապես կրճատում է արտադրական ծախսերը, լիովին բացառում սննդանյութերի օգտագործումը։